Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6 ՀՈՒՆԻՍ . 1965

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении



# Բովանդակություն

# Содержание



# ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԵՎ ԱՆՀԱՏԻ ՆԵՐԴԱՇՆԱԿ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Մարդու անհատականության զարգացումը ոչ միայն հասարակական պրոգրեսի արգասիքն է, այլև նրա չափանիշներից մեկը: Ուստի, օրինաչափ է, որ պատմական յուրաքանչյուր դարաշրջան ունեցել է մարդու իր իդեալը, սոցիալ-տնտեսական, բարոյական ու էսթետիկական սկզբունքների՝ իր անհատականացված կրողը: Սոցիալական օրգանիզմի բարդ կառուցվածքը յուրահատուկ արտացոլում է գտնում անհատի մեջ, հասարակական երևույթների հետ ունեցած նրա հարաբերություններում, նրա ըմբռնումներում ու պատկերացումներում, հուզաշխարհում և նույնիսկ ֆիզիկական որակներում: Ներդաշնակ անհատականությունը ներկայանում է իբրև նույնքան ներդաշնակ հարաբերությունների արգասիք, աղճատված անհատականությունը՝ համապատասխան աղավաղված հարաբերությունների արդյունք: Եվ որքան բարձր է հասարակարգը, այնքան բարձր է նաև նրա անհատականացված կրողի նկատմամբ ներկայացվող պահանջը: Ինչպես սոցիալական հարաբերություններն իրենց վերջնականորեն մարդկայնացված կեցությանն են հասնում մարդկային պատմության կոմունիստական էտապում, այնպես էլ անհատականության էվոլյուցիան իր բարձրագույն ոլորտն է թևակոխում հասարակության կոմունիստական վերակառուցումով:

Մարդկանց անհատականության կատարելագործման հարցը հասարակական յուրաքանչյուր սիստեմի, առավել ևս կոմունիստականի համար երկրորդական պրոբլեմ չէ: Ընդհակառակը, կոմունիզմն իր բոլոր հնարավորությունները, ողջ պոտենցիալ հարստությունը կարող է դրսևորել միայն այն ժամանակ, երբ մասսան, ժողովուրդը, հասարակության յուրաքանչյուր անդամ գտնվի նրա պահանջների բարձրության մակարդակին:

Կոմունիզմն ամենից առաջ փոխում է ինչպես անհատականության վերաբերյալ մեր նախկին պատկերացումը, այնպես էլ նրա կայմավորման անցյալի ճանաչված եղանակները: Մեր դարաշրջանում ներդաշնակ անհատականության հետ կապված են ոչ միայն ինտելեկտուալ ու էսթետիկական հետաքրքրությունների բազմերանգությունը, ինչպես նաև ֆիզիկական կատարելությունը, այլև սոցիալ-քաղաքական ու բարոյական համապատասխան որակները, անհատականության քաղաքացիական հասունացումն ու ամբողջականությունը: Հասկանալի է, որ նման անհատականության ձևավորումը չի կարող կատարվել տարերայնորեն. կոմունիզմը իր քաղաքացիների զարգացման ու ձևավորման բնագավա-

ռում բացառում է տարերայնությունը: Գիտական, սիստեմավորված վարում է
պահանջում ոչ միայն նրա նյութական հարաբերությունների կարգացումը, այլև
նոր մարդու, նոր անհատականության կազմավորումը: Վերջինս, նույնիսկ, առա-
վել դժվար ու առավել պատասխանատու գործ է. սոցիալական համապատասխան
պայմանների հետ միասին՝ այն ենթադրում է մաքսիմալ սուբյեկտիվ ակտիվու-
թյուն, դաստիարակություն՝ այս հասկացության ամենալայն իմաստով:

Դաստիարակությունն ընդհանրապես ամենանուրբ ու ամենաբարդ ար-
վեստն է՝ պայմանավորված նրա օբյեկտի՝ մարդու բնության և հասարակական
կյանքի այդ ամենակատարյալ ստեղծագործության բարդությամբ: Այն պահան-
ջում է նուրբ դիտողականություն, հոգեբանական բազմակողմանի մոտեցում,
հնարամտություն, ճկունություն ու ստեղծագործական տևական ջանքեր: Որքան
մարդ՝ այնքան բնավորություն, հետևաբար նաև նույնքան կոնկրետ մոտեցման
պահանջ: Այստեղ պատրաստի, շաբլոն դեղատոմսերը կարող են գործին վնասել:
Կոնկրետության հետ մեկտեղ, դաստիարակությունն ինքը պետք է ունենա մի
ամբողջական ու ներդաշնակ սիստեմ, որտեղ նրա բոլոր հնարավոր օղակները
լրացնեն իրար, շարունակեն մեկը մյուսին:

Պայքարը նոր անհատականության կազմավորման, կատարյալ մարդու հաղ-
թանակի համար, ամենից առաջ պայքար է հանուն նոր աշխարհայացքի, իրա-
կանության իրոք նոր, գիտականորեն իմաստավորված ըմբռնման: Այս՝ անհատի
կողմից գիտակցված թե չգիտակցված աշխարհըմբռնումն է, որ բովանդակու-
թյուն է տալիս նրա հուզաշխարհին ու շրջապատի նկատմամբ ունեցած վերա-
բերմունքին, ճշգրտում նրա տեղն ու դերը հասարակական կյանքի բարդ հա-
րաբերություններում: Գիտական աշխարհայացքի անհրաժեշտությունը առավել
մեծ չափով ընդգծվում է հատկապես մեր օրերում՝ հին ու նոր հարաբերություն-
ների վերջին ու վճռական գոտեմարտերի և գիտությունների մեծ հաղթարշավի
դարաշրջանում:

Ճանաչողության ու հասարակական պրոգրեսի առաջատար ճակատներից
հեռու գտնվող մարդու ինտելիգենտիկական սնամեջ պնդում է այն, թե իբր հնա-
րավոր է առանց գիտական աշխարհայացքի էլ նպաստել սոցիալական կյանքի
ու իմացության պրոգրեսին: Կյանքն, իրոք, այդպես էր ընթանում նախասոցիա-
լիստական ֆորմացիաներում, երբ ողջ հասարակությունն էր գտնվում տարե-
րայնության ճնշման ներքո, երբ մարդկանց պրակտիկ ու տեսական պահանջ-
ները մի կերպ կարող էին բավարարվել նրանց առօրյա կենսափորձի հիման վրա
տարերայնորեն մշակված աղքատիկ պատկերացումներով: Մինչդեռ մեր ապրած
դարաշրջանը, որն իրավամբ գիտության հրաշալիքների մի հոյակապ էպոխա է
հռչակվել, չի կարող ծաղկել ու բարգավաճել, առանց մարդկային կանգվածների
գիտական աշխարհայացքի անվերջ կատարելագործման: Գիտության դարում
անհատը պետք է փայլի իր ճշմարիտ գիտական աշխարհայացքով, իր հարուստ
գիտելիքներով, առանց որի չկա կոմունիստական շինարարություն:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը հրամայական պա-
հանջ է դարձնում մասսաներին առաջավոր գիտությամբ պինելը, գիտությունը
սովետական յուրաքանչյուր քաղաքացու սեփականությունը դարձնելը: Բուրժու-
ական հասարակարգի համար քաղաքացու ամենաընդունելի տիպն է համար-
վում հեղհեղուկ մտածելակերպի տեր, սոցիալական պրոբլեմների նկատմամբ
անտարբեր անհատը, և նույնիսկ մտածողությունը՝ հիվանդություն, բանակա-
նությունը՝ չարիք է դիտվում մարդու համար: Սոցիալիզմը, ընդհակառակը, ապա-



վինում է մարդու բանականության առաջընթացին, անհատի ակտիվությանն ու
խոր գիտակցված գործունեությանը:

Այժմ, երբ մարքսիստական տեսությունը երկրագնդի վրա ծավալվում է ո՛չ
միայն որպես ամենազոր և անպարտելի գաղափարախոսություն, այլև իբրև կեն-
դանի, ռևոլյուցիոն իրականություն, հակակոմունիզմի ջատագովները ջանք չեն
խնայում կասեցնելու լենինյան աշխարհաշեն գաղափարների ստեղծագործ եր-
թը: Ապարդյո՜ւն ջանքեր: Աշխարհի բոլոր ծագերում ծլարձակում են գիտական
կոմունիզմի կենսաշող գաղափարները՝ սնվելով ռևոլյուցիոն շարժման հորդ ա-
կունքներից: Սոցիալիստական հասարակարգի կարգացմամբ գիտական տեսու-
թյունը վաղուց դուրս է եկել երբեմնի պրոֆեսիոնալ նեղ շրջանակներից և դար-
ձել լայն մասսաների մտածելակերպ՝ հարուստ և նոր բովանդակությամբ:

Բայց ինչպես գիտական-փիլիսոփայական աշխարհայացքի պատվաստումը
անհամեմատ հեշտանում է, երբ կյանքն իր բազմազանությամբ հագեցած է
նույն փիլիսոփայությամբ, այնպես էլ այդ պրոցեսը զգալիորեն բարդանում է, երբ
առօրյա կյանքում դեռևս մնում են մարքսիստական ուսմունքի ոգուն ու մեր
իրականությանը խորթ հայացքներ և տրադիցիաներ: Նեղ էգոիստական շահա-
խնդրությունը, ուռճացումը պետության ու ժողովրդի հաշվին, բյուրոկրատական
քաշքշուկն ու անօրինականության դեպքերը կամ առևտրի ցանցում իրենց տա-
քուկ անկյունը գտած ժողովրդի կոպեկները շորթողները, սպեկուլյատիվ գոր-
ծարքների «մասնագետները» և նման այլ, դեռևս կենսունակ հնոտիներ ոչ միայն
զգալի նյութական վնասներ են պատճառում մեր երկրին ու ժողովրդին, այլև
գուցե ավելի մեծ չափով գաղափարական-բարոյական բնույթի վնասների աղ-
բյուր են ծառայում մեր առաջընթացի ճանապարհին: Այս կարգի արարքները,
ինչպես բազմիցս նշվել է մեր պարտիայի կողմից, ուղղակի կերպով ծառայում
են հակակոմունիստական, բուրժուական գաղափարախոսությանը:

Նոր մարդու նորմալ կարգացմանը և նրա գիտական աշխարհայացքի մշակ-
մանը, անշուշտ, խանգարում է մեր կյանքի ստվերոտ կողմերի քողարկման
միտումը: Կենդանի կյանքի կարգացման հակասականությունն ու բազմաբարդու-
թյունը շրջանցող տեսական պարադյունությունը ոչինչ ընդհանուր չունի մարք-
սիզմ-լենինիզմի էության հետ: Սա է ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որո-
շումներից բխող հետևություններից մեկը:

Բոլոր դեպքերում նոր անհատականության գիտական աշխարհըմբռնման
մշակման հիմքը սոցիալիստական իրականությունն է, կոմունիստական հասա-
րակարգի կառուցման կենդանի պրոցեսը. սա է ամենից առաջ օբյեկտիվ հնա-
րավորություն բովանդակում մարքսիստական աշխարհայեցողության՝ հասարա-
կության լայն շրջանների կողմից յուրացման համար:

Սակայն, ինչպես նկատվեց, գիտական աշխարհայացքի մշակումը, հատկա-
պես մեր պայմաններում, սոսկ օբյեկտիվ գործոններով չի սպառվում. պրոցեսին
նպատակասլացություն տալու համար այդ առարկայական իրականություն դար-
ձած գիտությանը պետք է զուգակցել գիտություն դարձած իրականությունը:
Այլ կերպ ասած, նոր աշխարհըմբռնման մշակումը տեղի է ունենում ոչ միայն
(թեկուզ և գիտական հիմունքներով վերակառուցված) իրականության անմիջա-
կան ազդեցությամբ, այլև գիտական սկզբունքների ու նորույթների սիստեմա-
տիկ ու նպատակասլաց մատուցմամբ: Հին մտքերը նորով փոխարինելու համար
պետք է դրանց հետ խոսել և՛ մտքերի, և՛ առարկաների լեզվով, ազդել և՛ մեկով,
և՛ մյուսով: Կենդանի կյանքը, որպես կանոն, տարերայնորեն է ազդում մարդ-

կանց հոգևոր որակների վրա, չնայած նրա հետքերը ավելի խոր են ու ավելի մնայուն: Բայց ձեռք բերված հայացքների սիստեմավորումն ու իմաստավորումը վերջ ի վերջո իրականանում են գիտության անմիջական ազդեցության ներքո:

Այս նպատակի համար, անշուշտ, նշանակություն են ձեռք բերում ոչ միայն, այսպես կոչված, աշխարհայացքային կոչվող գիտությունները և նույնիսկ ոչ միայն հասարակական գիտությունները, այլև մեծ չափով նաև բնական գիտությունները: Գիտական աշխարհայացքը հեռու է միայն քաղաքական-սոցիալական բովանդակություն ունենալուց, և խորապես սխալ է այն կարծիքը, թե գիտական աշխարհայացքի մշակումը միայն հասարակագետների գործն է: Իրականում յուրաքանչյուր կոնկրետ գիտություն աշխարհայացքային նշանակություն ունի, և վերջինս ընդգծվում է համապատասխան այն բանի, թե տվյալ բնագավառը որքանով գործ ունի իրականության առավել ֆունդամենտալ օրինաչափություննեի ու մարդկանց հայացքներում հեղաշրջում ենթադրող հայտնագործությունների հետ: Այդ նշանակում է, որ գիտելիքների սիստեմների յուրաքանչյուր մատուցում միաժամանակ պետք է ծառայի նաև նոր մարդու անհատականության կատարմանը:

Անհատականության կազմավորման պրոցեսում իդեաներով իդեաների վրա ազդելու կարևորությունն ընդգծվում է հատկապես այն ժամանակ, երբ մենք գործ ենք ունենում տրադիցիայի ուժով իրենց գոյությունը քարշ տվող այնպիսի երևույթների հետ, որոնց ծնող սոցիալական հողը մեր երկրում վաղուց վերացվել է: Հին իդեաները չեն մեռնում հին կարգերի հետ միասին: Նրանք ունակ են ոչ միայն մի սերնդից անմիջապես մյուսին փոխանցվելու, այլև գաղափարական սնունդ ծառայելու տարբեր դարաշրջանների ու տարբեր սերունդների համար: Հայտնի է, օրինակ, որ դարեր շարունակ մասնավոր սեփականատիրությունը տնտեսական հող է ծառայել անհատապաշտության ու եսասիրության համար. մասնավոր սեփականությունն է, որ մարդկանց բաժանել է միմյանցից և յուրաքանչյուրի համար ստեղծել միայն իրեն պատկանող ու մյուսներին հակադրվող վիճակ. այստեղ է, որ տիրելու կգացմունքին գերի դարձած մարդը բոլոր արժեքների վրա նայում է իր շահախնդիր ես-ի նեղ պատուհանիկից: Հանրային սեփականությունը, ընդհակառակը, տնտեսական հիմք է ծառայում հասարակական հարաբերություններում թագավորող սոցիալական թշնամանքը վերացնելու և հասարակության անդամներին համերաշխ կոլեկտիվի մեջ միավորելու, նրանց հասարակական էությունը արմատապես հեղաշրջելու համար:

Պատահական չէ, որ ցարական Ռուսաստանի խավարի ու աղքատության մեջ մոլորված երբեմնի ցնցոտիավոր «մուժիկը» այժմ քաղաքակիրթ աշխարհին լուրջ կարմանք է պատճառում իր ամենահասարակական էությամբ, հարուստ ներքնաշխարհով ու կոլեկտիվիզմի մեծ կգացումով: Նման անհատականությունն է մեր իրականության իսկական բովանդակության արտահայտիչը և ոչ թե եսասերի՝ հանրությունից պատվարված տխուր, քաղքենիական, հասարակության մեջ ապրող, բայց մենության մեջ տառապող էությունը: Սոցիալիզմը ոչ թե «բունտ» է մեծ անհատականությունների դեմ, այն ոչ թե միջակության ու գորշության թագավորություն է, ինչպես մոգոնում են կապիտալի «դիպլոմավոր լակեյները»՝ բուրժուական հասարակարգը «բնական» ու «բանական» ներկայացնելու իրենց գաղափարական պնդումներում, այլ իսկական, ընդգծված անհատականությունների թագավորություն: «Հոտային» վիճակը օտար է կոմունիզմի սկզբունքներին ու իդեալներին: Սոցիալիզմը ոչնչացնում է ոչ թե անհա-



տականությունը, այլ անհատապաշտությունն ու եսասիրությունը: Եվ վերջինների դեմ մեր պայմաններում մղվող պայքարը ոչ այնքան առարկայական, նյութական հարաբերությունների լեզվով պետք է արտահայտվի, որքան գաղափարական դաստիարակչական լեզվով, իդեաները իդեաների վրա, համոզմունքները համոզմունքների վրա ազդելու ձևով:

Նույնպիսի մեռած դարաշրջանների ծնունդը համարվող, բայց իր գոյությունը դեռևս զգացնել տվող, անհատի ըմբռնումներում անններդաշնակություն մտցնող վերապրուկներից կարող են համարվել նաև նացիոնալիստական կամ շովինիստական տրամադրությունները:

Ազգային դարավոր հալածանքների դառնությունը ճաշակած մեր ժողովուրդը, իբրև իր հոգևոր հարստության անկապտելի մաս, սերնդե-սերունդ փայփայել ու կորացրել է հումանիզմի խոր կգացմունքը, բարեկամները չարակամներից, աշխատավոր, նույնքան տառապյալ ժողովուրդը արյունարբու տիրակալներից զատելու կարողությունը: Ազգերի բարեկամության սովետական մեծ ու համերաշխ ընտանիքում, հայ ժողովուրդն իր ինտերնացիոնալ տրադիցիաներով իրավամբ վայելում է ՍՍՌՄ ժողովուրդների սերն ու հարգանքը: Պատմությունը, այդ թվում նաև հայ ժողովրդի անցյալի ողբերգական էջերը վկայում են, թե ինչպես նացիոնալիզմի, շովինիզմի ու ռասիզմի խորապես հակամարդկային մտայնությանը կարող են վոհ գնալ մարդկության անմեղ ու ստեղծարար միլիոնավոր զավակները: Ինչպես սերը ժողովուրդների բարեկամության նկատմամբ, այնպես էլ ատելությունը ազգայնականության ամեն մի դրսևորման հանդեպ դարձել են սոցիալիստական հայ ազգի հոգևոր կերտվածքի անհրաժեշտ տարրերը, որոնց կատարելագործումն ու պրոպագանդումը մեր սրբազան պարտքն է: Միաժամանակ սովետական քաղաքացու անհատականության ներդաշնակության ամբողջականացումն անհրաժեշտաբար ենթադրում է ազգային լավագույն տրադիցիաների հաշվառումը, անցյալի արժեքների ճիշտ գնահատումը:

Մատաղ սերնդի դաստիարակները չպետք է մոռանան, որ այսօր սոցիալիստական ազգերի կարգացման լուսավոր կողմերից մեկն էլ այն է, որ նրանք հաջողությամբ յուրացնելով միմյանց գիտական, կուլտուրական և հասարակական նվաճումները, իրենց բոլոր ունակություններով մասնակցում են արդի սոցիալական պրոգրեսին: Այստեղից հետևում է, որ անհատի բազմակողմանի ու ներդաշնակ կարգացումը բացառում է ազգային սահմանափակությունը: Կյանքն ապացուցել է, որ ժողովուրդների բարգավաճման ուղին՝ դա նրանց ինտերնացիոնալիստական կապերի ու եղբայրական փոխադարձ օգնության կարգացումն է, նրանց սերտ մերձեցումը: Միայն սոցիալիզմը լայն հնարավորություններ ընձեռեց ժողովուրդներին վերածնելու ու կատարելագործելու իրենց բոլոր ներքին այն կարողությունները, որոնք ամրապնդում են հանրության երջանիկ կյանքի հիմքերը: Ահա թե ինչու նոր մարդուն ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելը մեր սրբազան պարտքն է:

Կոմունիզմը մարդկանց հարաբերություններից դուրս է մղում ո՛չ միայն դասակարգային, կազմակերպված սոցիալ-քաղաքական պայքարը, ազգային հնամաշ երկպառակություններն ու ռասայական խժդժությունները, այլև անհատների միջև գոյություն ունեցող ոչ սկզբունքային սոցիալական հողի վրա բարձրացող պայքարը՝ անցյալից եկող կամ տնտեսական վատթար պայմանների ու ցածր կուլտուրայի արդյունք հանդիսացող, մարդկային մեծության անարժան

այն քաղքենիական հոգեմաշ մանրուքներն ու խծբծանքները, որոնք տաղտկալի ու երբեմն են դարձնում անհատների առօրեական հարաբերությունները:

Պրոբլեմի այս ասպեկտը վերաբերում է անհատականության անմիջական էմոցիոնալ աշխարհի ու հոգեբանական, ինչպես նաև բարոյական այլ որակների կազմավորմանը, որտեղ վճռական նշանակություն է ձեռք բերում ինչպես ընտանիքը, այնպես էլ դպրոցը:

Զարգացման տվյալ շրջանում մեր ուշադրության կենտրոնում պետք է մընան դպրոցն ու ընտանիքը, երկու ոլորտներ, ուր սկսվում է ապագա քաղաքացիների հոգևոր աշխարհի ձևավորումը, մի գործ, որն ավելի բարդ է, քան ամենաբարդ գործարանի նախագծումը: Երեխա ունենալը դեռ բոլորը չէ, նույնիսկ՝ ոչ գլխավորը: Գլխավորը նրա արդարացումն է՝ տվյալ դարաշրջանի պահանջներին համապատասխան անհատականություն ստեղծելը: Մինչդեռ պրակտիկայում քիչ չեն պատահում, երբ ծնողները երեխաների քաղաքացիական կազմավորման գործը թողնում են ինքնահոսի, բարի հավատի հույսին՝ «կմեծանա ամեն ինչ կհասկանա», կամ, իբրև ծնողական փափկասրտության դրսևորում, ձգտում են հեռու պահել իրենց «բալիկներին» օգտակար աշխատանքից. պատրաստ են նույնիսկ երեխաների փոխարեն կատարել նրանց «տնային աշխատանքները» կամ քննություն հանձնել բուհերում ընդունվելու համար: «Ես վատ եմ ապրել, գոնե իմ երեխան թող լավ ապրի»,— ահա այդ արատավոր միտումի «արդարացումը»: Եվ միայն վերջում է պարզվում, որ նման վերաբերմունքը ոչ թե բարիք, այլ չարիք է հանդիսացել ինչպես զավակների, այնպես էլ հասարակության համար, որ այդ «սերը» սնուցել է ոչ թե առողջ անհատականությանը, այլ հոգեպես ու ֆիզիկապես հիվանդոտ, մարդկային երջանկությանն անհաղորդակից էգոիստին, հասարակության ու հենց իր ծնողների վզին նստած պորտաբույծին:

Նոր մարդու կազմավորման բոլոր օղակներում պետք է ղեկավարվել այն սկզբունքով, որ աշխատանքն է ստեղծել մարդուն: Այն ոչ միայն կազմավորել է մարդկային սեռն ու ընկած է վերջինիս հետագա էվոլյուցիայի հիմքում, այլև պայմանավորել է յուրաքանչյուր անհատականության կազմավորումը, ինչպես ֆիզիկական, այնպես էլ սոցիալ-բարոյական ու ճանաչողական իմաստով: Հանրօգուտ աշխատանքի պրոցեսում է մարդն ազատվում անհատապաշտական, հակահասարակական հակումներից ու հայացքներից, մարդկային էությունը նույն մարդկային էության դեմ ծառայեցնելու անմարդկային տենդենցներից: Հատկանշական է, որ խուլիգանական ու հակահասարակական արարքների հեղինակները սովորաբար որոշակի զբաղմունք չունեցող, հանրօգուտ աշխատանքից խուսափող պորտաբույծները, կամ «սիրառատ» մայրերի «փափկասուն» զավակներն են լինում, զավակներ, որոնք կյանքի նկատմամբ ունեն միայն անհագ սպառողական պահանջ: Մինչդեռ առողջ անհատականության կազմավորման համար նախ՝ պետք է սովորեցնել նյութական բարիքներ արտադրել և ապա՝ այդ բարիքներից օրինական և խելացի օգտվել: Կյանքը սոսկ հաճույք և բավականություն չէ, այլև՝ պարտք ու պարտավորություն, սխրանք և տքնաջան ստեղծագործություն:

Աշխատանքային դժվարություններն ու հաճույքները չճաշակած անհատը անկարող է գնահատել աշխատանքի արժեքը, այդ թվում նաև հենց իր վրա ծախսված աշխատանքի արժեքը: Նրան ամեն ինչ «հասկանալի» է առաջին հայացքից և ամեն ինչ արժանի է միայն վատաբանման ու ժխտման: Նրա աշխարհը երևույթների բնագավառն է, մակերեսային աղքատ կյանքը՝ նույնքան



աղքատիկ զգացմունքներով ու սկեպտիկ բովանդակությամբ: Այստեղ են կազմավորվում քաղքենիները, մոդայամոլներն ու «ստիլյագները»: Մինչդեռ աշխատող, իր գործով ապրող, հուզվող ու ստեղծագործող անհատը, որպես կանոն, կենսուրախ է, առույգ, բարձր կանգնած քաղքենիական, կենցաղային մանրուքներից:

Ինքնուրույն, ակնիվ ու հանրօգուտ աշխատանքը ոչ միայն իմացական ու բարոյական կենարար աղբյուր է ծառայում անհատի համար, այլև մեծապես հեշտացնում է մարդկության ձեռք բերած գիտելիքները յուրացնելու, այն ներքին համոզմունք դարձնելու գործը: Միայն այս պայմաններում է գիտելիք հաղորդելը դառնում նաև դաստիարակություն, այս դեպքում է հնարավոր ոչ միայն սոսկ սովորեցնել, այլև դաստիարակել, գիտելիքը համոզմունք դարձնել: Եվ միայն այս պայմաններում մատուցվող նյութի յուրացման չափանիշը ոչ այնքան փաստական գիտելիքների սերտման մակարդակն է ներկայացնում, որքան նրա սկզբունքների մեջ համոզվածության աստիճանը: Քիչ չկան մարքսիզմի սկըզբունքների «գիտակներ», որոնք գործնականում իրենց դրսևորում են բոլորովին հակառակ ուղղությամբ՝ իրոք մարքսիստական ոգով դաստիարակված չլինելու պատճառով: Հենց աշխատանքային գործունեության հետ չկապակցված գիտելիքների մատուցումն է, որ կարող է վերածվել սոսկ սերտման պրոցեսի: Իսկ այդպիսի դաստիարակության արդյունքը սովորաբար շաբլոնն է, գորշ անհատականությունը, անհատ, որ չունի իր ուրույն դեմքը, իր անհատական մոտեցումն ու մտածելակերպը: Այսպիսի՝ միայն գոյություն ունեցող ճշմարտությունները սերտելու կամ միայն տրորված ճանապարհներով քայլելու ընդունակ, մտածողության սեփական ընթացքից զուրկ մարդիկ, մարդիկ, որ անկարող են որոնել, ստեղծագործել, սխալվել՝ օտար են կոմունիզմի ոգուն ու իդեալներին: Մարդկային կարողությունների նկատմամբ վնասակար պետք է դիտվի մեր սիստեմի էությանը խորթ այն դաստիարակությունը, որի արդյունքը մեռած անհատականությունն է, միակերպ ու միօրինակ մտածելակերպը, անսխալ շաբլոնը: Այսպիսի դաստիարակության դեպքում անհատի նկատմամբ կոնկրետ և նուրբ մոտեցումը փոխարինվում է ֆորմալիզմով: Իսկ ֆորմալիզմի պայմաններում դաստիարակողները ձանձրանալու չափ «առատ» են թվում: Նման երևութականությունը հենց դաստիարակության ոչ հաջող կազմակերպման պերճախոս վկայությունն է: Դաստիարակության հաջողությունը մեծ չափով պայմանավորված է նրանով, որ դաստիարակողը չի երևում, իսկ դաստիարակվողը չի զգում, որ ինքը դաստիարակվում է: Այս տեսակետից առավել մեծ չափով է ընդգծվում կոլեկտիվի դաստիարակչական նշանակությունը: Եվ ընդհանրապես միակողմանի է այն պատկերացումը, ըստ որի անհատականության կազմավորման օղակները սահմանափակվում են ընտանեկան պայմաններով և ուսումնական հիմնարկներով: Իրականում անհատականության կազմավորման ոչ պակաս հզոր դարբնոցներ են արտադրական ամեն մի կոլեկտիվ, հասարակական յուրաքանչյուր կազմակերպություն: Հանրային տնտեսության հիմքերի վրա բարձրացող հատկապես այս օղակներում պետք է իր մեծագույն արդարացումը գտնի Մարքսի այն միտքը, որ միայն կոլեկտիվն է ստեղծում այն բոլոր պայմանները, որոնք անհրաժեշտ են անհատի ներդաշնակ ու բազմակողմանի զարգացման համար:

Եվ, վերջապես, սոցիալիստական հասարակարգը անհատականության ներդաշնակ դաստիարակության իր առավել կարողությունը բացահայտում է նաև մեկ ընդհանուր նպատակի, մեկ ընդհանուր իդեալի ծառայեցնելով ժամանակա-

կից կյանքում մարդու հոգևոր աշխարհի կազմավորման վրա վճռական ազդեցություն ունեցող այնպիսի միջոցներ, ինչպիսիք են՝ մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, արվեստը, գրականությունը և այլն:

Առողջ անհատականությունը ենթադրում է նաև բնությունից մարդուն տըրված աշխատանք կատարելու ընդունակ երկու օրգանների՝ ուղեղի ու մկանների ֆունկցիաների ներդաշնակ միավորումը մեկ միասնական պրոցեսի մեջ, իսկ դրա տեխնիկական հիմքը ժամանակակից կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումն է՝ արտադրության միջոցների հանրային սեփականության պայմաններում: Ավելին, ներդաշնակությունը ամբողջական է դառնում, երբ բազմակողմանիություն է մտցվում նաև մտավորի ու ֆիզիկականի միևնույն շրջանակներում: Արդեն մեր պայմաններում նեղ մասնագիտությունները փոխարինվում են առավել ընդհանուր, լայն պրոֆիլ ու հետաքրքրություններ պահանջող մասնագիտություններով:

Արդի գիտության ու տեխնիկայի հսկայական առաջընթացը հրամայաբար արմատական փոփոխություններ է հարուցում դաստիարակության բոլոր ճյուղերում: Սովետական կրթության հզոր սիստեմը, ժողովրդական համալսարանները և գիտության մասսայական պրոպագանդումը գալիս են հարստացնելու նոր մարդու մտաշխարհը, ընդլայնելու նրա մտահորիզոնը: Այդ հողի վրա փարթամ շիվեր են արձակում սովետական հումանիզմն ու հայրենասիրությունը, որոնք կուռգործվում են ժողովուրդների ամենօրյա փոխադարձ օգնությամբ ու եղբայրական համագործակցությամբ:

Կռել ու կոփել նոր սերնդի ներքնաշխարհը, կենսունակ մեթոդներով ներարկել նրան միակ ճշմարիտ գիտական աշխարհայացքի՝ մարքսիզմ-լենինիզմի անհողթ գաղափարները: Ահա թե ինչի վրա պետք է ցեմենտվի մեր քաղաքացու անհատականության բազմակողմանի կարգացումը:

Նոր մարդու կարգացումը ներդաշնակ չէ, եթե նրան պակասում է գեղեցկի առողջ ընկալումը, էսթետիկական ակտիվ վերաբերմունքն իրականության նկատմամբ: Մարդկային այս բարձրակարգ կգացումը հասարակական կյանքի ու անհատականության պրոգրեսի ցուցանիշներից մեկն է և վաղուց ժամանակն է, որ մեր դաստիարակության մեջ պատշաճ տեղ հատկացվի էսթետիկային:

Ժամանակակից պայմաններում հասարակական կյանքի բոլոր օղակների կարգացման առաջավոր տենդենցները՝ լինեն դրանք սոցիալ-տնտեսական հարաբերություններում թե տեխնիկայի բնագավառում, գիտության ասպարեզում թե արվեստի կգացմունքային աշխարհում, բարոյական նորմերով թե մարդկային էվոլյուցիայի շրջանակներում, համընկնում են կոմունիզմի գաղափարների ու իդեալների հետ: Այս պայմաններում առավել ևս միջոցը պետք է համապատասխանի նպատակին. ներդաշնակ անհատականության կազմավորման համար պահանջվում են ո՛չ միայն ներդաշնակ սոցիալական հարաբերություններ, այլև դաստիարակության նույնքան ներդաշնակ սիստեմ:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՄԱՐՔՍԻԶՄԻ ՀԱՆՃԱՐԵՂ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

(Կարլ Մարքսի «Կապիտալ»-ի II հատորի լույսընծայման 80-ամյակի առթիվ)

Զ. ԲԱՇԻՆՋԱՂՅԱՆ

*1885 թվականին լույս տեսավ Կարլ Մարքսի «Կապիտալ»-ի II հատորը: Ութսուն տարիներ են բաժանում մեզ այդ նշանակալից տարեթվից, բայց «Կապիտալ»-ը պատկանում է մարդկային հանճարի այն սակավաթիվ ստեղծագործությունների թվին, որոնք ապրում են դարեր, չհնանալով և իրենց նշանակությունը չկորցնելով միմյանց հաջորդող բոլոր սերունդների համար: Ժամանակը, կարծես, նրանց չի շոշափում, անզոր է նրանց վրա տարածելու իր իշխանությունը: Անողոքաբար անէության գիրկը նետելով առօրյա և անցողիկ թեմաներով երկրորդական հեղինակների գրած պատահական ու կարճակյաց գրքերը, ժամանակը շփոթված ընկրկում է մարդկային մտքի այնպիսի արգասիքների առաջ, ինչպիսին «Կապիտալ»-ն է: Այդ մեծ աշխատությունը ժամանակի ավերիչ ներգործությանը չի ենթարկվում այն պատճառով, որ այնտեղ լուծված են ոչ-անցողիկ նշանակություն ունեցող հարցեր, որ այն պարունակում է ուղենիշ դրույթներ հասարակության զարգացման օրենքներն ուսումնասիրող բոլոր գիտությունների համար և որ այն ստեղծել է մեծ մտքի ու մեծ սրտի տեր մի մարդ՝ հանճարեղ գիտնականը և միջազգային պրոլետարիատի առաջնորդը:*

*Հայտնի է, որ «Կապիտալ»-ը բաղկացած է 4 հատորից և դրանցից միայն I հատորն է լույս տեսել Մարքսի կենդանության օրոք՝ 1867 թվականին: II և III հատորները լույս են տեսել նրա մահից հետո, Ֆ. Էնգելսի խմբագրությամբ: IV հատորը («Հավելյալ արժեքի թեորիաները») հրատարակվել է ավելի ուշ, արդեն Էնգելսի մահից հետո:*

*Ռևոլյուցիոն մարքսիզմի թշնամիները, բուրժուական անբարեխիղճ քննադատները փորձեցին իրենց նպատակների համար օգտագործել այն հանգամանքը, որ «Կապիտալ»-ի II և III հատորները հրատարակվել են Մարքսի մահից հետո. նրանք հանդես եկան այն կեղծ հայտարարությամբ, թե I հատորում Մարքսի առաջ քաշած դրույթները իբր չեն հաստատվում հաջորդ հատորներում շարադրված հետևություններով (մասնավորապես, III հատորում շա-*

բադրված՝ արտադրության գնի ուսմունքը իբր թե հակասում է I հատորում հետազոտված արժեքի օրենքին)։

Էնգելսը արժանի հակահարված տվեց զրպարտիչների հերյուրանքներին։ Նա ցույց տվեց, որ «Կապիտալ»-ի երեք հատորների ձեռագրերի վրա Մարքսը աշխատել է միաժամանակ, մասնավորապես, 1864—1865 թվականներին նա երեք հատորների վրա արդեն կատարել էր հսկայական աշխատանք, նախքան I հատորի ձեռագիրը տպագրության համար սրբագրելը։ Եթե Մարքսը չկարողացավ ավարտել «Կապիտալ»-ի II և III հատորները տպագրության համար պատրաստելը, ապա դրա պատճառն այն է, որ մահն ընդհատեց նրա աշխատանքը և, բացի դրանից, Մարքսը չափազանց պահանջկոտ և բծախնդիր էր իր նկատմամբ՝ որպես հեղինակի։ Հիշատակելով իր բարեկամի այդ գծի մասին, Էնգելսը «Կապիտալ»-ի II հատորի առաջաբանում գրում է, որ «Ինքնաքննադատությունը հազվադեպ անգամ էր նրան հնարավորություն տալիս շարադրանքն ըստ բովանդակության ու ձևի համարժեքեցնելու նոր ուսումնասիրության հետևանքով միշտ ընդլայնվող տեսաշրջանին» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. II, 1936, էջ X)։

Հենց այն պատճառով, որ II հատորի ձեռագիրը պատրաստել էր արդեն Մարքսը, Էնգելսը հնարավորություն ունեցավ այն հանձնել տպագրության, ըստ էության սահմանափակվելով խմբագրական աշխատանքով։ Այդ հանգամանքն ընդգծում է և ինքը՝ Էնգելսը «Կապիտալ»-ի II հատորի հիշատակված առաջաբանում։

Տակավին «Կապիտալի» առաջին հատորում Մարքսը գրել է, որ իր հետազոտության առարկան կապիտալիստական արտադրաեղանակն է և դրան համապատասխան արտադրության և փոխանակության հարաբերությունը։ Այս խնդրով էլ որոշվում է «Կապիտալի» կառուցվածքը։ Առաջին հատորում հետազոտվում է կապիտալի արտադրության պրոցեսը։ Երկրորդ հատորում՝ կապիտալի շրջանառության պրոցեսը։ Իսկ երրորդ հատորում նա հետազոտում է կապիտալիստական արտադրության պրոցեսը՝ վերցրած ամբողջովին։ Հետազոտման նման մեթոդը բացահայտում է երեք հատորների միջև եղած ներքին օրգանական կապը, ապահովելով դրանց անքակտելի միասնությունը։

Էնգելսին գրած իր նամակում Մարքսը նշել է. ինչպիսի թերություններ ունենան դրանք, համենայն դեպս, իմ երկերը գեղարվեստական մի ամբողջություն են ներկայացնում։

«Կապիտալի» կառուցվածքը ռեալ իրականությունն է արտացոլում, որի ուսումնասիրությանն ընձեռելիս, Մարքսը ելնում է պատմական մատերիալիզմի այն հիմնական դրույթից, ըստ որի ոչ թե մարդկանց գիտակցությունն է որոշում նրանց կեցությունը, այլ, ընդհակառակը, հասարակական կեցությունն է որոշում նրանց գիտակցությունը։ Այս հռչակավոր մարքսիստական թեզիսն իր կոնկրետ մարմնացումն է գտնում «Կապիտալի» բոլոր հատորներում։

Հետազոտելով կապիտալիստական արտադրաեղանակը, Մարքսը ամենից առաջ քննարկում է բուրժուական հասարակության արտադրական հարաբերությունները, վերլուծում կապիտալիստական հասարակության հիմնական արտադրահարաբերությունը՝ վարձու բանվորների դասակարգի և արտադրության հիմնական միջոցների տեր դասակարգի՝ կապիտալիստների միջև եղած հարաբերությունը։

Հասարակության զարգացման հիմքը նյութական բարիքների արտադրու-



թյունն է։ Կապիտալիզմի օրոք արտադրությունն ապրանքային է, որտեղ աշխատանքի արդյունքները ապրանքի ձև են ընդունում։ Ինչպես արտադրամիջոցները, նույնպես և գոյամիջոցները, արտադրվում են վաճառքի համար։ Արտադրված արդյունքները սպառողին են հասնում միայն շուկայի միջոցով։ Սա ապրանքային արտադրության նախապայմանն է։ Կապիտալիստական ապրանքային արտադրությունը, դրանից բացի, պետք է շահույթ բերի ապրանքատիրոջը։ Շահույթը, որը ծագում է արտադրության պրոցեսում, դրսևորվում է շուկայում, անցնելով շրջանառության պրոցեսը։ Այսպես են առաջանում արտադրության և շրջանառության պրոցեսների փոխադարձ կապը և փոխներգործությունը։

Արտադրության և շրջանառության ոլորտների դիալեկտիկական կապն ու փոխներգործությունը պահանջում են երկուսն էլ նույն խորությամբ ուսումնասիրել։ Արտադրապրոցեսի առաջատար դերը բնավ չի նսեմացնում շրջանառության ոլորտի նշանակությունը, չի բացառում նրա հակադարձ ներգործությունն արտադրաոլորտի վրա։ Առանց շրջանառության ոլորտի նորմալ պայմանների (կապիտալիստի տեսակետից), անհնարին է արտադրաոլորտի նորմալ ընթացքը (դարձյալ կապիտալիստի տեսակետից)։

Միաժամանակ, եթե նշանակալի չափով նորմալ չի ընթանում ապրանքների արտադրության ընթացքը (թեկուզև արտադրամիջոցների և սպառման միջոցների հարաբերակցության իմաստով), էական խախտում է առաջանում շրջանառության ոլորտում։

Կապիտալիստական արտադրության հակասություններն իրենց արտահայտությունն են գտնում նաև շրջանառության ոլորտում, որի «երկրորդային ներգործությունը» խորացնում է արտադրության պրոցեսի հակասությունները։ Արտադրության առաջնության ընդունումը շրջանառության համեմատ պատասխանում է միայն այն հարցին, թե ինչի՞ց պետք է սկսվի գիտական հետազոտությունը՝ արտադրությունի՞ց, թե՞ շրջանառությունից։ Արտադրության առաջնայնությունը կանխորոշում է, որ հետազոտությունը պետք է սկսվի արտադրապրոցեսից։

Այդպես էլ վարվեց Մարքսը, կապիտալիզմի զարգացման տնտեսական օրենքների հետազոտությունը սկսելով արտադրապրոցեսից «Կապիտալի» առաջին հատորում, որտեղ այդ պրոցեսի ուսումնասիրությունը զետեղեց «Կապիտալի արտադրապրոցեսը» ենթավերնագրի տակ։

Ավարտելով կապիտալի արտադրության պրոցեսի ուսումնասիրությունը, Մարքսն անցնում է շրջանառության պրոցեսի վերլուծմանը, դրան հատկացնելով «Կապիտալ»-ի II հատորը, ընդհանուր վերնագրին ավելացնելով «Կապիտալի շրջանառության պրոցեսը» ենթավերնագիրը։

Կապիտալիստական էկոնոմիկայի երկու ոլորտների նկատմամբ Մարքսի ցուցաբերած ուշադիր վերաբերմունքն անհրաժեշտ պայմաններ նախապատրաստեց կապիտալիստական ամբողջ արտադրության պրոցեսի վերլուծմանն անցնելու համար («Կապիտալ»-ի III հատորում), որով և ավարտվում է արտադրության կապիտալիստական եղանակի հետազոտությունը։

«Կապիտալ»-ի II հատորում Մարքսի հետազոտած տնտեսագիտական կատեգորիաների հիմքում ընկած են կապիտալիստական հասարակարգի արտադրական հարաբերությունները, որոնք բացահայտված են «Կապիտալ»-ի I հատորում։ Այդ կատեգորիաներն արտահայտում են վարձու աշխատանքի և

կապիտալի նույն հարաբերությունները: Հավելյալ արժեքի արտադրությունը առաջվա նման մնում է այն անկյունաքարը, որի վրա խարսխվում են II հատորում հետազոտված տնտեսագիտական կատեգորիաները:

Անցնելով արտադրության ստադիան, կապիտալը մտնում է շրջանառության ստադիան,— ահա ինչ է ցույց տվել Մարքսը «Կապիտալ»-ի II հատորում: Ուսումնասիրության առարկա են կազմում նոր երևույթներ, որոնք ծագել են կապիտալիստական տնտեսության մեջ շրջանառության ոլորտում կապիտալի շարժման ժամանակ:

Սահմանելով (I հատորում), որ կապիտալը ոչ թե իր է, այլ վարձու աշխատանքի վրա հիմնված հասարակական հարաբերություն, Մարքսը այժմ (II հատորում) այն քննության է առնում իր շարժման մեջ: Կապիտալը բնորոշվում է որպես ինքնին աճող արժեք, երբ այն քննության է առնվում արտադրության պրոցեսում: Կապիտալը բնորոշվում է որպես շարժում, երբ այն քննության է առնվում շրջանառության պրոցեսում: Մեկ բնորոշումը լրացնում է մյուսը:

Կապիտալի՝ որպես ինքնին աճող արժեքի բնորոշումն ընդգրկում է ոչ միայն դասակարգային հարաբերությունների պատկերացումը: Կապիտալը, բացի դրանից, շարժում է, շրջապտույտային պրոցես, որն անցնում է տարբեր ստադիաներ: «Ուստի Կապիտալը կարող է ըմբռնվել լոկ իբրև շարժում ու ոչ թե դադար առած իր» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. II, էջ 76):

Մարքսը քննության է առնում արդյունաբերական կապիտալի շարժումը, որով և պայմանավորված է արտադրության կապիտալիստական բնույթը և որը պարունակում է կապիտալիստների ու բանվորների միջև եղած հակասությունները, որոնք հետազոտված են I հատորում: Արդյունաբերական կապիտալն իր շարժման մեջ քննության առնելը բացահայտում է նրա կրած կերպափոխությունները:

Արդյունաբերական կապիտալը շրջապտույտ կատարելով հետևողականորեն երեք փուլեր է անցնում. փողային կապիտալի վերածումն արտադրողականի, արտադրողական կապիտալի վերածումը ապրանքայինի և ապրանքային կապիտալի վերածումը՝ փողայինի: Այս երեք փուլերին համապատասխանում են երեք ձևեր, որոնք հերթով ընդունում և մի կողմ է նետում արդյունաբերական կապիտալը. կապիտալի փողային ձև, արտադրողական կապիտալի ձև և ապրանքային կապիտալի ձև:

Կապիտալի շրջապտույտի մանրակրկիտ հետազոտությունը, որը Մարքսը կատարել է II հատորում, բացահայտում է արդյունաբերական կապիտալի երեք ձևերի միասնությունը և դրա հետ միասին նրանցից յուրաքանչյուրի առանձնահատկություններն ու հակասությունները:

Կապիտալի կերպափոխությունները, նրա մեկ ձևի փոխարինումը մյուսով բնավ չեն նշանակում, որ ամբողջ կապիտալը իր բոլոր մասերով այսօր գտնըվում է մի ձևում, իսկ վաղը փոխարկվում է մի այլ ձևի: Մարքսը ցույց է տվել, որ յուրաքանչյուր անհատական արդյունաբերական կապիտալ ամեն պահ միաժամանակ գտնվում է բոլոր երեք շրջապտույտներում, որոնք շարունակ ընթանում են իրար զուգահեռ: «Կապիտալը որպես ամբողջություն,— պարզաբանում է Մարքսը,— տարածականորեն կողք-կողքի գտնվում է յուր տարբեր փուլերում միաժամանակ: Բայց յուրաքանչյուր մաս հերթով մի փուլից, մի ֆունկցիոնալ ձևից միշտ անցնում է մեկ ուրիշը» (Նույն տեղը, էջ 75):



Այսպիսով, կապիտալի առանձին մասերը, լինելով միասնական ամբողջի բաղկացուցիչ տարրերը և միևնույն ժամանակ գտնվելով տարբեր ստադիաներում, սերտորեն կապված են և կախված միմյանցից:

Կապիտալի մի մասի անարգել փոխարկումը մյուսի (օրինակ, արտադրողական ձևինը առևտրականի), լինելով կապիտալի շրջապտույտի պարտադիր պայմանը, կախված է այն բանից, թե արդյոք անարգել է կատարվում կապիտալի մյուս մասերի շրջապտույտը (օրինակ, ապրանքային ձևի փոխարկումը դրամականի): Ամբողջ պրոցեսի անընդհատությունն իրագործվում է կապիտալի երեք կերպափոխությունների միասնությամբ, երեք շրջապտույտների միասնությամբ: Մարքսը կապիտալի շրջապտույտի պրոցեսը պատկերացնում է որպես արտադրության պրոցեսի և շրջանառության պրոցեսի միասնություն. «Արտադրության պրոցեսը դառնում է շրջանառության պրոցեսի միջնորդագործող և ընդհակառակը» (Նույն տեղը, էջ 71):

Ավարտելով կապիտալի շրջապտույտի՝ որպես արտադրությունն ու շրջանառությունն ընդգրկող առանձին գործողության վերլուծությունը, Մարքսն անցնում է կապիտալի շրջապտույտի՝ որպես անընդհատ կրկնվող պրոցեսի քննությանը:

Կապիտալի շրջապտույտի քննությունը նրա մշտական նորոգման տեսանկյունով պատկերացում է տալիս կապիտալի պտույտի մասին, պտույտի ժամանակի և տարվա ընթացքում պտույտների թվի մասին: Կապիտալի պտույտի վերլուծությունը հանգեցնում է կապիտալի նոր բաժանմանը՝ հիմնական և շրջանառու կապիտալների:

Բուրժուական քաղաքատնտեսությունը ժխտում է կապիտալի բաժանումը հաստատուն և փոփոխուն մասերի, այսինքն՝ այնպիսի մասերի, որոնցից մեկը ծախսվում է արտադրության միջոցների, իսկ մյուսը՝ աշխատուժի վրա, բայց ընդունում է կապիտալի բաժանումը հիմնական և շրջանառու մասերի: Պատճառն այն է, որ ավանդավորված կապիտալը հաստատունի և փոփոխականի բաժանելը, ցույց տալով հավելյալ արժեքի աղբյուրը, բացահայտում է կապիտալիստական հասարակարգի շահագործողական բնույթը, իսկ հիմնականի և փոփոխականի բաժանելը քողարկում է այն:

Հիմնական և շրջանառու կապիտալի տարբերությունը բխում է արտադրողական կապիտալի տարբեր բաղկացուցիչ մասերի շրջանառության տարբեր եղանակից: Այդ տարբերությունը պայմանավորված է աշխատանքի պրոցեսում, ապրանքների արտադրության պրոցեսում հիմնական և շրջանառու կապիտալի տարրերի գործողության առանձնահատկություններով: Հիմնական կապիտալին են պատկանում արտադրողական կապիտալի այն տարրերը, որոնք ամբողջովին մասնակցում են արտադրապրոցեսին, բայց որոնց արժեքը մաս առ մաս անցնում է արդյունքին և լիովին հատուցվում է միայն մի շարք արտադրական ցիկլերի ավարտից հետո: Շրջանառու կապիտալը կազմում է արտադրողական կապիտալի մնացած բոլոր տարրերը, որոնց արժեքը փոխանցվում է արդյունքին լիովին, և հատուցվում է լիովին արտադրական յուրաքանչյուր ցիկլից հետո:

Շրջանառության իր եղանակով աշխատուժի արժեքը ոչնչով չի տարբերվում շրջանառու կապիտալի մյուս, իրային տարրերից, ուստի մտնում է վերջինիս կազմի մեջ, որով և սքողվում է կապիտալիստական շահագործումը: Լինելով ապրանքային, կապիտալիստական արտադրությունը իրենից ներկայաց-

նում է աշխատանքի պրոցեսի և արժեքի գոյացման պրոցեսի միասնությունն:
Ուստի, չնայած այն տարբերությանը, որ կա կապիտալը հաստատունի և փո-
փոխունի և հիմնականի ու շրջանառուի բաժանելու միջև, թե մեկի և թե մյուսի
հիմքում ընկած է կապիտալիստական արտադրության միևնույն պրոցեսը:
Քննության առնելով հիմնական ու շրջանառու կապիտալը, որպես շրջան-
առության պրոցեսի հետ անմիջականորեն կապված և նրա շրջապտույտի մեջ
հանդես եկող կապիտալի նոր ձևեր, Մարքսը ցույց է տալիս, որ դրանց շար-
ժումը ուժեղացնում է արտադրության կապիտալիստական եղանակի հակասու-
թյունները:
Կապիտալի շրջապտույտի ու շրջանառության հետազոտությունը, որ կազ-
մում է «Կապիտալ»-ի II հատորի ավելի քան կեսը, ընդհուպ մոտեցնում է ամ-
բողջ հասարակական կապիտալի վերարտադրության ու շրջանառության պրոբ-
լեմին, որը քննության է առնվում II հատորի երրորդ և վերջին բաժնում:
Այդ պրոբլեմն առաջին անգամ առաջ է քաշվել XVIII դարի տնտեսագետ,
ֆիզիոկրատների դպրոցին պատկանող Ֆրանսուա Քենեի «Տնտեսական աղյու-
սակում», սակայն նախամարքսյան քաղաքատնտեսությունը իր բուրժուական
սահմանափակության հետևանքով չկարողացավ տալ դրա գիտականորեն հիմ-
նավորված լուծումը: Նույնը կարելի է ասել նաև մանրբուրժուական քաղա-
քատնտեսության մասին: Դրա ամենալուրջ պատճառներից մեկն այն էր, որ
բուրժուական ու մանրբուրժուական տնտեսագետները չհասկացան հաստա-
տուն կապիտալի խոշոր դերը հասարակական արտադրության մեջ, ամբողջ
հասարակական կապիտալի վերարտադրության ու շրջանառության մեջ, մաս-
նավորապես հասարակական ամբողջական արդյունքի արժեքի փոխհատուց-
ման գործում:
Ադամ Սմիթի՝ քաղաքատնտեսության պատմության մեջ հայտնի այն
սխալը, որը կոչվել է «Սմիթի դոգմա», անտեսում էր հաստատուն կապիտալի
արժեքը կապիտալիստորեն արտադրված ապրանքի արժեքը վերլուծելիս: Մի
կողմ թողնելով կապիտալի հաստատուն մասը, դուրս նետելով այն ապրանքի
արժեքից, որն ստեղծված է վարձու բանվորների աշխատանքով, Սմիթն ու նրա
հետևորդները արգելակեցին վերարտադրության պրոցեսի ըմբռնումը, ամբող-
ջական արդյունքի իրացման ըմբռնումը: Բնորոշ է, որ բուրժուական քաղաքա-
տնտեսությունը մոլեգնորեն հարձակվելով Մարքսի վրա կապիտալի հաստա-
տուն և փոփոխուն մասերի զանազանության համար, այն բանի համար, որ
Մարքսը հավելյալ արժեքի միակ աղբյուրը փոփոխուն կապիտալն էր համա-
րում, և ատամներով «պաշտպանելով» հաստատուն կապիտալը, որպես, իբր
թե հասարակական արտադրության հավասարազոր մասնակից,— այժմ, երբ
իրոք, անհրաժեշտ էր հաշվի առնել հաստատուն կապիտալի արժեքը և մտցնել
այն ամբողջական արդյունքի արժեքի մեջ,— ժխտում էր այն, երես դարձնելով
նրանից: Բուրժուական քաղաքատնտեսությունը պահանջում է հաստատուն
կապիտալը տեսնել այնտեղ, որտեղ նա ամենևին չի խաղում իրեն վերագրված
դերը (հավելյալ արժեքի ստեղծման գործում), և հերքում է նրա առկայությունն
այնտեղ, ուր առանց նրան չի կարող տեղի ունենալ շրջանառության պրոցեսը:
Սրանով էլ ավելի վառ է երևում բուրժուական քաղաքատնտեսության մի-
տումնավորությունը, բացահայտվում է նրա դասակարգային էությունը: Միա-
ժամանակ նոր ուժով հաստատվում է մարքսիստական տնտեսագիտության
անհաղթահարելի ուժը, «Կապիտալի» առաջին և երկրորդ հատորների միաս-



նականությունը. հաստատուն կապիտալի մասին ուսմունքը, որը հիմնավոր-
ված է առաջին հատորում, ծառայում է գիտությանը նաև երկրորդ հատորում,
հանդես գալով իր նոր կողմով և դրսևորելով կապիտալիստական վերարտա-
դրության պրոցեսի բարդ առանձնահատկությունները:
Հասարակական ամբողջական արդյունքի իրացման պայմանների վերա-
բերյալ մարքսյան ուսմունքը հենվում է հասարակական արտադրությունը եր-
կու մեծ ստորաբաժանումների՝ արտադրության միջոցների արտադրության և
սպառման միջոցների արտադրության բաժանելու վրա: Հասարակական ամ-
բողջական արդյունքի արժեքը տրոհվում է՝ 1) հաստատուն կապիտալի ար-
ժեքի, 2) փոփոխուն կապիտալի արժեքի և 3) հավելյալ արժեքի: Վերարտա-
դրության պրոցեսը իրագործվում է շնորհիվ այն բանի, որ յուրաքանչյուր ստո-
րաբաժանման ներսում տեղի ունեցող փոխանակության հետ մեկտեղ ար-
դյունքների փոխանակություն է տեղի ունենում երկու ստորաբաժանումների
միջև: Ինչպես բնական իրեղեն ձև, այնպես էլ արժեքային ձև ունեցող հասա-
րակական ամբողջական արդյունքի իրացումը տեղի է ունենում (մասնավորա-
պես, ընդլայնված կապիտալիստական արտադրության պայմաններում) շնոր-
հիվ այն բանի, որ առաջ է գալիս և աճում թե սպառման առարկաների և թե
արտադրության միջոցների պահանջարկը: Ստեղծվում և զարգանում է ինչպես
սպառման միջոցների շուկան, այնպես էլ արտադրության միջոցների շուկան,
ընդ որում, ներքին շուկան ընդլայնվում է առավելապես արտադրության միջոց-
ների հաշվին: Դա նշանակում է, որ արտադրության միջոցների արտադրու-
թյունը առաջ է անցնում սպառման առարկաների արտադրությունից, և որ,
Լենինի բնութագրմամբ, «ներքին շուկայի աճումը կապիտալիզմի համար մինչև
մի որոշ աստիճան «անկախ է» անձնական սպառման աճումից և կատարվում
է ավելի արտադրողական սպառման հաշվին» (Երկեր, հատ. 3, էջ 46):
Հասարակական ամբողջական արդյունքի իրացման վերաբերյալ Մարքսի
ուսմունքը նոր աստիճանի բարձրացվեց Վ. Ի. Լենինի աշխատություններում,
որոնք նա գրել է XIX դարի 90-ական թվականներին և XX դարի սկզբներին՝
ռուս նարոդնիկների դեմ մեր պարտիայի մղած պայքարի կապակցությամբ:
Հայտնի է, որ նարոդնիկները, սիսմոնդիականների պես յուրացնելով «Սմիթի
դոգման», ներքին շուկայի իբրև թե բացակայության պատճառով ժխտում էին
Ռուսաստանում կապիտալիզմի զարգացման հնարավորությունը:
Նարոդնիկների դեմ ուղղված իր փաստարկներում ելակետ ընդունելով
«Կապիտալ»-ի II հատորում շարադրված վերարտադրության մարքսյան սխե-
մաները, Լենինը քննության առավ իրացման պայմանները կապիտալի օրգա-
նական կազմի աճման ժամանակ (վերլուծությունը պարզեցնելու համար
Մարքսը կապիտալի օրգանական կազմն ընդունում էր անփոփոխ): Կապիտա-
լի օրգանական կազմի աճման պայմաններում վերարտադրության պրոցեսի
հետազոտությունը հանգեցրեց Լենինի ձևակերպած հետևյալ եզրակացությա-
նը. «...ամենից արագ աճում է արտադրության միջոցների համար արտադրու-
թյան միջոցների արտադրությունը, ապա սպառման միջոցների համար ար-
տադրության միջոցների արտադրությունը և ամենից ավելի դանդաղ՝ սպառ-
ման միջոցների արտադրությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 1, էջ 94):
Մի շարք աշխատություններում, հատկապես «Տնտեսական ռոմանտիզմի
բնութագրման շուրջը» հանգամանալի աշխատության մեջ, Լենինը ոչնչացնող
քննադատության ենթարկեց նարոդնիկների ըմբռնումը կապիտալիզմի օրոք

հասարակական ամբողջական արդյունքի իրացման պայմանների վերաբերյալ:

Հայտնի է, որ Մարքսը հետազոտեց կապիտալիզմի առանձնահատկությունները, նկատի առնելով արդեն կազմավորված կապիտալիստական կարգը, արդեն ձևավորված բանվոր դասակարգը: Իսկ նարոդնիկների, ինչպես Սիսմոնդիի մոտ, խոսքը վերաբերում է այն պատմական պրոցեսին, որը հանգեցրեց վարձու բանվորների դասակարգի գոյացմանը, մանր արտադրողի քայքայման պրոցեսին: Այստեղից նրանք եզրակացնում էին, որ կապիտալիզմի զարգացմամբ նեղանում է ներքին շուկան, ուստի ամբողջական արդյունքի իրացման համար անհրաժեշտ է արտաքին շուկա:

Լենինը հանգամանորեն անդրադառնում է այդ հարցին, հերքելով այն միտքը, որ կապիտալիզմի զարգացման (առանձնապես գյուղատնտեսության մեջ կապիտալիզմի զարգացման) հետևանքով մանր արտադրողի քայքայումը որպես թե անխուսափելիորեն հանգեցնում է ներքին շուկայի նեղացմանը: Ինչպես միշտ, այս դեպքում ևս Լենինը այդ հույժ կարևոր հարցը բազմակողմանիորեն և հանգամանորեն է վերլուծում: Նա կոնկրետացնում է «ներքին շուկա» հասկացությունը, բացահայտում է նրա ռեալ բովանդակությունը: Նարոդնիկների մոտ շուկան հանգեցվում է անձնական սպառման ապրանքների շուկային, մինչդեռ իրականում, բացի այդ, գոյություն ունի նաև արտադրական սպառման ապրանքների շուկա: Պետք է նկատի ունենալ ոչ միայն մարդկանց սպառումը, այլև կապիտալի սպառումը: Գոյություն ունի և ընդարձակվում է ինչպես անձնական, նույնպես և արտադրական սպառումը: Մանր արտադրողի քայքայումը կապիտալիզմի հետևանքով ամենևին չի հանգեցնում անձնական սպառման ապրանքների շուկայի նեղացմանը, ընդհակառակը, հանգեցնում է նրա ընդարձակմանը, որովհետև մանր արտադրողի վերածումը վարձու բանվորի նշանակում է, որ նա այժմ հարկադրված է շուկայում իր աշխատավարձով գնել իրեն անհրաժեշտ արդյունքները, որոնք անցյալում ինքն էր արտադրում իր տնտեսության մեջ:

Լենինը համոզիչ կերպով ապացուցեց, որ արտաքին շուկայի հարցը բացարձակորեն ոչինչ ընդհանուր չունի իրացման հարցի հետ: Արտաքին շուկան կապիտալիստական երկրների համար անհրաժեշտ է բոլորովին ոչ այն պատճառով, որ առանց նրա արդյունքը չի կարող իրացվել կապիտալիստական հասարակարգում, այլ այն պատճառով, որ «կապիտալիստական արտադրությանը հատուկ է անսահման ընդարձակվելու ձգտումը...»:

Մարքսը բացահայտում է կապիտալիզմի զարգացման պրոցեսի դիալեկտիկան, մատնանշելով, որ կապիտալիստական պարզ ու ընդլայնված վերարտադրության նորմալ ընթացքի պայմանները «ճգնաժամերի հնարավորությունների նույնքան բազմաթիվ պայմանների են փոխարկվում, որովհետև հենց հավասարակշռությունն ինքը — այս արտադրության բնաճուն կերպարանավորման ժամանակ — մի պատահականություն է» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. II, էջ 414):

«Կապիտալ»-ի II հատորում շարադրված է գերարտադրության պարբերական ճգնաժամերի վերաբերյալ ուսմունքը, ճգնաժամեր, որոնց գլխավոր պատճառը կապիտալիզմի հիմնական հակասությունն է:

Կապիտալիզմի բուրժուական ջատագովների և նրա մանրբուրժուական քննադատների դեմ մղած պայքարում, Մարքսը մշակեց կապիտալիզմի զարգացման օրենքների վերաբերյալ իր ուսմունքը, որի անխորտակ ուժը հաս-



տատված է կապիտալիստական հասարակության պատմական զարգացման պրակտիկայով: Ամբողջ հասարակական կապիտալի վերարտադրության ու շրջանառության վերաբերյալ ուսմունքը հանդիսացավ մարքսիստ-լենինյանների այն պայքարի հիմքը, որ նրանք մղում էին ինչպես կապիտալիզմի հակասությունները ժխտողների և նրա ներդաշնակ, անճգնաժամ զարգացումը հոչակողների (Ռուսաստանում՝ «լեգալ մարքսիստների»), այնպես էլ կապիտալիզմի զարգացման հնարավորությունը ժխտողների (Ռուսաստանում՝ նարոդնիկների) դեմ:

Մարքսը և նրա ուսմունքի մեծ շարունակող Լենինը ապացուցեցին, որ կապիտալիզմի զարգացումը հնարավոր է, բայց այն տեղի է ունենում աճող հակասությունների իրադրության մեջ, որոնք նախապատրաստում են կապիտալիզմի վերացման և այն արտադրության նոր, սոցիալիստական եղանակով փոխարինելու օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմանները:

Այդ բոլոր պայմանները քննության են առնվում «Կապիտալ»-ում, և նրա երեք հատորներից ամեն մեկն ունի իր ուրույն տեղը: Մարքսի առաջ ծառացած տեսական խնդիրը՝ կապիտալիստական հասարակարգի շարժման օրենքի բացահայտումը, կարող էր լուծվել միայն նրա ընտրած ուղիով, այն է՝ կապիտալի արտադրության պրոցեսի վերլուծությունից (I հատոր), կապիտալի շրջանառության պրոցեսի վերլուծության միջոցով (II հատոր) իր ամբողջությամբ կապիտալիստական արտադրության պրոցեսի վերլուծությունը (III հ.): Բոլոր երեք հատորներն էլ միասին վերցրած, հանդիսանում են կոմունիզմի հանճարեղ տեսական հիմնավորումը:

II հատորում առաջ քաշված մեթոդոլոգիական հիմնական դրույթները պետք է կիրառվեն նաև սոցիալիզմի պայմաններում: Իհարկե, նոր արտադրական հարաբերությունները դրանք հանգեցնում են նոր բովանդակության: Ինչպես մատնանշել է Լենինը, հասարակական արտադրության I և II ստորաբաժանումների հարաբերակցության մարքսյան ֆորմուլան $[(v + m) I > c II]$ տարածվում է նաև սոցիալիստական հասարակարգի վրա, արտահայտելով սոցիալիստական ընդլայնված վերարտադրության օբյեկտիվորեն գործող տնտեսական օրենքը, ուստի և պետք է հետևել այդ ֆորմուլային՝ սոցիալիստական էկոնոմիկայի անարգել զարգացումն ապահովելու համար: Դա նշանակում է, որ I ստորաբաժանման մեջ պետք է արտադրվեն արտադրության այնքան միջոցներ, որքան անհրաժեշտ է, որպեսզի բարձր տեխնիկայի բազայի վրա արտադրությունն անընդհատ աճի երկու ստորաբաժանումներում: Դա նշանակում է նախ, որ I ստորաբաժանման առավելագույն զարգացման պայմաններում II ստորաբաժանման մեջ պետք է արտադրվեն սպառման այնքան առարկաներ, որքան անհրաժեշտ է երկու ստորաբաժանումների թվապես աճող աշխատողների, ինչպես նաև ոչ արտադրական ճյուղերի աշխատողների հարաճուն պահանջմունքները բավարարելու համար:

Արտադրության միջոցների արտադրության առավելագույն աճը, լինելով սոցիալիստական ընդլայնված վերարտադրության տնտեսական օրենքը, չի նշանակում, սակայն, որ բոլոր տարիներին, առանց բացառության, I ստորաբաժանման արտադրության աճը պետք է գերազանցի II-ին, չի ժխտում այն հնարավորությունը, որ հարկ եղած դեպքում, առանձին տարիներ, II ստորաբաժանման աճի տեմպերը պետք է մոտեցնել I ստորաբաժանման տեմպերին: Այդպիսի անհրաժեշտություն կարող է առաջանալ, եթե առաջին ստորաբա-

ժանման առավելագույն աճի հետևանքով սպառման առարկաների արտադրության աճը չափից ավելի ետ է մնում արտադրության միջոցների արտադրության աճից:

Կոմունիստական հասարակարգի շինարարության փուլական ղեկավարումն անհամատեղելի է, թե վոլյունտարիստական մեթոդների հետ, թե մեկ անգամ գտնված լուծումը մեխանիկորեն կրկնելու հետ, լուծում, որը ճիշտ լինելով անցած իրադրության համար, պիտանի չէ նոր պայմանների համար:

Սոցիալիստական ձեռնարկությունների աշխատանքի պրակտիկայում իր արտացոլումն է գտնում նաև հիմնական ու շրջանառու կապիտալի վերաբերյալ ուսմունքը: Իհարկե, սոցիալիստական ձեռնարկությունների ֆոնդերն արտահայտում են սոցիալիստական արտադրական հարաբերությունները և դրանով արմատապես տարբերվում են վարձու բանվորների շահագործման հարաբերություններն արտահայտող հիմնական ու շրջանառու կապիտալից: Սակայն պետական ու կոոպերատիվ ձեռնարկությունների ֆոնդերը սոցիալիզմի օրոք նույնպես շրջապտույտ ու պտույտ են կատարում, ուստի այդ ֆոնդերի շարժման օրենքները գիտենալը չափազանց կարևոր է դրանք արդյունավետ կերպով օգտագործելու համար: Սոցիալիստական արդյունաբերության ընդլայնված վերարտադրության մասշտաբներն ու տեմպերը կախված են ոչ միայն հիմնական ֆոնդերի ընդլայնված վերարտադրությունից, այլև դրանց օգտագործման աստիճանից: Ժամանակակից պայմաններում, երբ կապիտալ ներդրումների ծավալը և արտադրական ֆոնդերի աճը հասել են վիթխարի չափերի (միայն 1965 թ. պետական կապիտալ ներդրումների ծավալը կազմելու է 38,4 միլիարդ ռուբլի՝ նախապատերազմյան ամբողջ ժամանակաշրջանի 36,5 միլիարդ ռուբլու դիմաց), ՍՍՌՄ արդյունաբերության հիմնական ֆոնդերի օգտագործումը բարելավելու պրոբլեմները հույժ կարևոր նշանակություն են ստանում:

Սոցիալիստական ձեռնարկությունների ֆոնդերի շրջապտույտի մեջ հատկապես մեծ դեր է խաղում ժամանակի գործոնը՝ արտադրության ժամանակը և շրջանառության ժամանակը: Ժամանակի տնտեսման խնդիրների տեսական մշակման և գործնական իրականացման համար ելակետ է ծառայում աշխատանքային պարբերաշրջանի և աշխատաժամանակի, կապիտալի շրջանառության արագության և կապիտալի շրջանառության ժամանակի բաղկացուցիչ մասերի մարքսյան այն վերլուծությունը, որ պարունակում է «Կապիտալ»-ի II հատորը (II բաժին):

Տնտեսական պրոցեսները և սոցիալիստական տնտեսության կատեգորիաները քննության առնելիս սովետական ոչ մի տնտեսագետ չի կարող անտեսել «Կապիտալ»-ը և, մասնավորապես, նրա II հատորը: Գրեթե հարյուր տարի առաջ, հանճարեղ մտածող, բանվոր դասակարգի առաջնորդ Կարլ Մարքսի մշակած պրոբլեմները, որոնք տնտեսագիտորեն հիմնավորում են կապիտալիզմի փոխարինումը սոցիալիզմով, ստեղծագործաբար օգտագործվում են կոմունիստական հասարակարգի շինարարների կողմից ի փառս գիտության և հանուն կոմունիզմի վերջնական հաղթանակի:

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Ա. ԹԵԼՈՒՆՑ

Հասարակական պրոգրեսի (առաջընթացի) գաղափարը սկիզբ է առել պատմական զարգացման մի աստիճանում, երբ գիտական միտքը որոշակի հնարավորություններ ուներ համեմատության մեջ դնելու ինչպես տարբեր երկրների տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման մակարդակն ու պայմանները, այնպես էլ միևնույն երկրի զարգացման մակարդակը՝ պատմական տարբեր ժամանակաշրջաններում: Այդպիսի կրկնակի համեմատության համար բավականին փաստական նյութ էր հավաքվել արդեն կապիտալիստական հարաբերությունների կազմավորման դարաշրջանում և հենց այդ ժամանակից էլ առանձին մտածողների մոտ հանդիպում են պրոգրեսի առաջին կռահումները:

Հասարակական պրոգրեսի գաղափարը իր ծագման ժամանակից ի վեր առաջադեմ ու հետադեմ ուժերի պայքարի առարկան է, ընդ որում ամեն դասակարգ, առաջնորդվելով իր յուրահատուկ շահերով ու նպատակներով, այդ գաղափարի մեջ դնում է որոշակի բովանդակություն, որոնում դրա համար այս կամ այն չափանիշը և կանխատեսում պրոգրեսի հեռանկարները: Բայց հասարակական պրոգրեսի նկատմամբ տարբեր վերաբերմունք ունեն ո՛չ միայն հակադիր շահեր ունեցող դասակարգերը. անգամ միևնույն դասակարգը պատմական տարբեր ժամանակներում փոխում է իր վերաբերմունքը պրոգրեսի և նրա գաղափարի նկատմամբ: Այսպես, օրինակ, այդ գաղափարը թափանցում էր երիտասարդ և ռևոլյուցիոն բուրժուազիայի հոգևոր գործունեության մեջ և դա բնական էր: Իր հաղթանակի վրա վստահ կամ արդեն իր տիրապետմանը հասած այդ դասակարգը կարող էր նայել աշխարհին որպես «աշխարհներից լավագույնի» և իր ստեղծած, ավելի ճիշտ՝ աշխատավոր ժողովրդի տառապանքների ու զրկանքների գնով հաստատված կարգերի մեջ տեսնել ո՛չ միայն պատմական զարգացման անհամեմատ ավելի բարձր աստիճան, այլև այդ զարգացման նպատակն ու յուրովի ավարտը: Քանի դեռ այդ դասակարգը հանդես էր գալիս որպես ռևոլյուցիոն ուժ և, հետևաբար, քանի դեռ պատմության համար արժեքավոր գործ ուներ կատարելու ու նոր խոսք ուներ ասելու աշխարհին, հասարակական պրոգրեսի մեջ նա տեսնում էր հարազատ գաղափար, նրա համար գտնում բանական չափանիշ և համոզված էր, որ ապագան կբերի նյութական ու հոգևոր ուժերի նոր աճ, մտքի զարգացման առջև կբացի ավելի լայն հորիզոններ: Սակայն դրությունն էապես փոխվում է, երբ այդ դասակարգը, կորցնելով իր պրոգրեսիվ դերը, կորցնում է նաև հավատը պրո-

գրեսի նկատմամբ, և իր գաղափարախոսության մեջ նախ՝ այն հանգեցնում է
տափակ էվոլյուցիոնիզմի և ապա՝ իր զարգացման իմպերիալիստական փուլում
ժխտում և նույնիսկ ծաղրում է պրոգրեսի գաղափարները։ Իհարկե, այդ ժա-
մանակներում էլ նկատվում է ցուցադրական օպտիմիզմ կապիտալիզմի ապա-
գայի, նրա «բարգավաճման» նկատմամբ, բայց նման միջոցներով ոչ ոք
երկար ժամանակ չի կարող խաբել ո՛չ ուրիշներին և ոչ էլ իրեն։ Պրոգրեսի
գաղափարը խորթ է ու թշնամական սոցիալական այն բոլոր ուժերի համար,
որոնց գոյության հիմքերը խարխլվել են և ոչինչ չունեն հուսալու ապագայից։
Մարդկային գործունեության ու մտքի զարգացման համար կարևոր դեր
են խաղացել հասարակական պրոգրեսի ուսմունքները, որոնք ստեղծվել էին
դեռևս մարքսիզմի ծագումից առաջ։ Դրանց դրական բովանդակությունը դար-
ձել է գիտական մտքի սեփականությունը։ Մարդկության պրոգրեսիվ զար-
գացման գաղափարն արդեն գիտության կարևոր նվաճումն էր, իսկ անխախտ
հավատը մարդկության հետագա զարգացման անսահման հնարավորություն-
ների հանդեպ, ինչպես և հավատը մարդկության իմացական կարողություն-
ների անսպառելիության նկատմամբ, որը պրոգրեսի գիտական ուսմունքի
հատկանշական գիծն է կազմում, ամեն մի հասարակական բեղմնավոր գոր-
ծունեության էական պայմանն է։ Պրոգրեսի ուսմունքը ամեն մի ռացիոնալ
հասարակագիտական մտքի առանցքն է կազմում և, միաժամանակ՝ աշխար-
հայացքային լայն ուսմունք է, աշխարհի իմացության փիլիսոփայական ամ-
փոփման արգասիք։ Այդ ուսմունքը հիմնադրել են նախամարքսյան շրջանի
խոշորագույն փիլիսոփաներն ու սոցիոլոգները, որոնք, ճիշտ է, չկարողացան
ու չէին կարող մշակել նրա գիտական-մատերիալիստական հիմունքները,
հայտաբերել պրոգրեսի գիտական չափանիշը և որոշել պրոգրեսի սուբյեկտը,
այսինքն՝ այն ուժը, որը պատմության զարգացման կրողն ու որոշիչն է, բայց
խոր կռահումներով և մի շարք կարևոր հայտնագործություններով անհրաժեշտ
տեսական նախադրյալներ ստեղծեցին պրոգրեսի իսկական գիտական ուս-
մունքի համար։ XVIII դարի վերջին գերմանացի լուսավորիչ Հերդերը ամբողջ
աշխարհը՝ օրգանական և անօրգանական բնությունը, մարդկությունը և նրա
նյութական ու հոգևոր արտադրությունը քննարկում է պրոգրեսի տեսանկյու-
նից, գտնելով, որ հասարակության պատմությունն իրենից ներկայացնում է
«զարգացման շղթա»՝ մարդկային բազմազան գործունեության արդյունքներից
կազմված մի ամբողջականություն, որում մշտապես ապրում և առաջադիմում
է մարդկային ոգին։ Գերմանական փիլիսոփաներից մեծագույնը՝ Հեգելը, հա-
մաշխարհային պատմությունը համարում էր պրոգրես ազատության գի-
տակցման մեջ, պրոգրես, որին մենք պետք է մտահասու լինենք իր անհրա-
ժեշտության մեջ։ Պրոգրեսի ուսմունքի զարգացման մեջ մեծ ավանդ են մուծել
Անգլիայի, Ֆրանսիայի և մյուս երկրների լուսավորիչներն ու ուտոպիստ սո-
ցիալիստները։ Նշանակալից է, հատկապես, ռուս ռևոլյուցիոն դեմոկրատների
ծառայությունը այդ բնագավառում։ Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում ռևո-
լյուցիոն-դեմոկրատների հավատը հասարակության զարգացման նկատմամբ,
լուսավորության ու ազատության պաշտպանությունը, նրանց ձգտումը՝
աջակցելու հասարակական զարգացմանը, արագացնելու և դյուրացնելու այդ
զարգացումը, հեռացնելու խանգարող ու կասեցնող խոչընդոտները։ Ռևոլյու-
ցիոն շարժման այդ ուղղությունը նա բնութագրում էր որպես պատմական լա-
վատեսություն և ռուս մարքսիստների կարևորագույն խնդիրներից մեկն էր



համարում ռևոլյուցիոն-դեմոկրատների լավագույն տրադիցիաների ըստ ամե-
նայնի պահպանումն ու զարգացումը։
Մարքսիզմին նախորդող շրջանում հասարակական պրոգրեսի ուսմունք-
ները մշակվում էին բուրժուական, մանրբուրժուական և գյուղացիական դա-
սակարգերի գաղափարախոսների կողմից և իրենց վրա կրում էին այդ դասա-
կարգերի սահմանափակվածության կնիքը։ Այդ ուսմունքների հիմքում ընկած
էր իդեալիստական աշխարհայացքը և այդ պատճառով թե՛ իրենց դարն ապ-
րած հասարակական կարգերի քննադատության և թե նոր կարգերի անհրա-
ժեշտությունը հիմնավորելու դեպքում դրանք ոչ թե ելնում էին հասարակու-
թյան զարգացման օբյեկտիվ ընթացքից և օրենքների պահանջներից, այլ մեծ
մասամբ դիմում էին բանականության դատին, այս վերջինի մեջ էլ տեսնելով
հասարակական պրոգրեսի չափանիշը։ Իդեալիստական այս մեկնակետը այն
պատճառներից է, որոնք կանխորոշում էին ապագայի վերաբերյալ ուսմունք-
ների ուտոպիական բնույթը։ Մարդկության ապագայի գիտական կանխատե-
սությունը, ինչպես և առհասարակ հասարակական պրոգրեսի գիտական ըմբռ-
նումը կարող էր խարսխվել միայն հետևողական մատերիալիստական աշխար-
հայացքի վրա, աշխարհայացք, որի ծագումը պայմանավորված էր ռևոլյուցիոն
դասակարգի՝ պրոլետարիատի ինքնուրույն քաղաքական գործունեության ծա-
վալմամբ։ Պատմության ասպարեզ իջնելով որպես իր սեփական և ամբողջ
աշխատավոր ժողովրդի կենսական շահերի համար մաքառող դասակարգ,
դրանով իսկ պրոլետարիատը հանդես եկավ որպես հասարակական պրոգրեսի
ժամանակակից իդեալների մարմնացնողն ու իրականացնողը, իդեալներ,
որոնք մի ամբողջական ու կուռ ուսմունք են դարձել գիտական գաղափարախո-
սության՝ մարքսիզմի շնորհիվ։

***

Հասարակական պրոգրեսի մարքսիստական ըմբռնումը բխում է պատմա-
կան մատերիալիզմի հիմնական դրույթներից ու սկզբունքներից։ Մարքսիզմը
հասարակության պատմությունը քննարկում է որպես բնապատմական, ներ-
քուստ հակասական մի պրոցես, որպես կենդանի օրգանիզմի օրինաչափ զար-
գացում՝ ցածր աստիճանից դեպի բարձրը։ Հասարակական պրոգրեսը պատ-
մական օրինաչափություն է, որն արտահայտում է հասարակության վերընթաց
առաջադիմական շարժումը, արտադրողական ուժերի զարգացման, արտադրա-
կան հարաբերությունների կատարելագործման, հոգևոր արտադրության ծա-
վալման ընդհանուր տենդենցը։ Մարքսը հասարակական տնտեսական ֆորմա-
ցիաների հաջորդափոխության մեջ տեսնում էր հասարակության առաջադի-
մական շարժումը և այդ պատճառով այդ ֆորմացիաներն անվանում էր հա-
սարակության զարգացման պրոգրեսիվ աստիճաններ։ Ամեն մի հասարակա-
կան ֆորմացիա, որի դեմքը որոշում է տվյալ ժամանակաշրջանի հասարակու-
թյան արտադրական հարաբերությունների ամբողջությունը, գոյության իր
իրավունքը պահպանում է այնքան ժամանակ, քանի դեռ ընդհանուր առմամբ
ապահովվում է հասարակական պրոգրեսը, հատկապես նյութական արտադրու-
թյան ոլորտում, և սպառում է իր պատմական դերը, երբ խոչընդոտում է պրո-
գրեսի ուղին, հասարակության նյութական և հոգևոր ուժերի զարգացումը։

Մարքսիզմը բացահայտեց, որ հասարակության զարգացման պատճառներն ու խթանները գտնվում են հենց իր մեջ, հետևաբար՝ հասարակությունն իրենից ներկայացնում է մի ինքնազարգացող գոյավիճակ։ Այն ժամանակից ի վեր, երբ գործիքներ ստեղծելու և գործադրելու շնորհիվ մարդն անջատվեց կենդանական աշխարհից և աստիճանաբար կենդանական կենսաձևից անցավ մարդկային կոլեկտիվի, այսինքն՝ ստեղծվեց մարդկային հասարակություն, սկսեցին գործել նոր օրինաչափություններ։ Բնության պատմությանն աստիճանաբար փոխարինեց հասարակության պատմությունը՝ մարդկային նյութական, սոցիալական և հոգևոր գործունեության պատմությունը։ Եվ այն վիթխարի ժամանակը, որ անցել է մարդու ծագումից հետո (իսկ դա ժամանակակից տվյալներով ընդգրկում է շուրջ մեկ միլիոն տարի), իրենից ներկայացնում է ընդհանուր առմամբ վերընթաց շարժում մարդկային գործունեության բոլոր բնագավառներում։ Քարե գործիքներից, նետ ու աղեղից ու էներգիայի միակ աղբյուրի՝ մկանային ուժի գործադրումից մարդկությունը հասել է ավտոմատ գործիքների, հզոր հրթիռների և էլեկտրական ու ատոմային էներգիայի օգտագործման։ Դրան համապատասխան բարձրացել են աշխատանքի արտադրողականությունը, արտադրության կազմակերպման ձևերն ու եղանակները, բարդացել է հասարակության կառուցվածքը և, վերջապես, զարգացել է մարդու հոգևոր աշխարհը՝ աշխարհայացքը, գիտելիքները, արվեստները։ Իսկ այդ ամենը խոսում է հասարակության պրոգրեսի մասին, այն մասին, որ հասարակությունը չի կարող կանգ առնել զարգացման որևէ կետի վրա։

Պրոգրեսը, ինչպես նշվեց, ընդգրկում է մարդկային գործունեության բոլոր բնագավառները։ Իսկ այստեղից հետևում է, որ այս կամ այն բնագավառում տեղի ունեցող պրոգրեսիվ երևույթներն անմիջականորեն կամ տարբեր միջավորումներով պետք է իրենց ներգործությունն ունենան մյուս բնագավառների վրա։ Օրինակ, գիտական հայտնագործությունները, որոնք պայմանավորում են գիտական մտքի պրոգրեսն ընդհանրապես, մի կողմից ներգործում են աշխարհայացքի վրա, հարուցում նրանում որոշակի փոփոխություններ, մյուս կողմից՝ այդ հայտնագործությունները, եթե ունեն արտադրական նշանակություն և կիրառվում են արտադրության մեջ, առաջ են բերում այդտեղ տեխնիկական հեղաշրջումներ, որոնք իրենց հերթին ազդում են արտադրության բնույթի ու կազմակերպման վրա և, վերջապես, ունենում են հեռուն գնացող սոցիալական հետևանքներ։ Բայց մարքսիզմը չի բավարարվում միայն երևույթների ընդհանուր փոխազդեցության փաստի արձանագրումով. պետք է պարզել նաև, թե հասարակական կյանքի ո՛ր բնագավառում կատարվող պրոգրեսիվ երևույթներն ունեն արմատական, մյուս բնագավառներում տեղի ունեցող փոփոխություններն իրենցով պայմանավորող նշանակություն։ Այդպիսի նշանակություն ունի պրոգրեսը հասարակության տնտեսական կյանքում, որով և, վերջին հաշվով, պայմանավորված են մյուս բոլոր, ինչպես և գիտության բնագավառում կատարվող պրոցեսները։ Եվ, իրոք, մոտիկից քննելիս պարզվում է, որ հասարակության հոգևոր կյանքն արտացոլում է հասարակական կեցությունը, որ արտադրության պահանջները կյանքի են կոչում գիտական հայտնագործություններ, որ հասարակության նյութական կյանքից ամենից ավելի հեռու գտնվող բնագավառներն իսկ իրենց արմատներն ունեն տնտեսական հարաբերությունների մեջ։ Այստեղից հետևում է, որ հասարակական պրոգրեսի չափանիշը նույնպես պետք է փնտրել հասարակության



տնտեսական կյանքում, ամենից առաջ արտադրողական ուժերի մեջ, որոնց զարգացման շահերը Վ. Ի. Լենինը բնութագրել է որպես հասարակական պրոգրեսի բարձրագույն չափանիշ (տե՛ս Երկեր, հ. 13, էջ 305)։

Արտադրողական ուժերի զարգացում ասելով պետք է հասկանալ ո՛չ միայն արտադրության նյութական տարրերի կատարելագործումն ու բարդացումը։ Ամեն մի հասարակարգի գլխավոր արտադրողական ուժը նյութական բարիքներ արտադրող մարդիկ են, աշխատավոր ժողովուրդը։ Մեքենաներն իրենք իրենց չեն ստեղծվում ու կատարելագործվում, մարդկանց մտքի ու ձեռքի արդյունքն են դրանք։ Կատարելագործելով արտադրության միջոցները՝ մարդիկ կատարելագործում են աշխատանքի իրենց ունակությունն ու հմտությունը, փորձն ու վարպետությունը, մեծացնում իրենց իշխանությունը բնության նկատմամբ, ավելի ու ավելի լայն ծավալով են բնության ուժերը ենթարկում իրենց կամքին։ Արտադրության պահանջները պայմանավորելով գիտության ծագումն ու զարգացումը, միաժամանակ պայմանավորում են նրա նվաճումների արտադրական կիրառությունը և, դրանով իսկ, գիտության վերածումը արտադրողական ուժի։ Այս տեսակետից գիտության զարգացումը ևս պետք է դիտել և՛ որպես հասարակական պրոգրեսի անհրաժեշտ պայման, և՛ որպես պրոգրեսի չափանիշ։ Եվ, քանի որ արտադրության նյութեղեն օբյեկտները և հոգևոր ուժերը արտադրողական ուժ են դառնում իրենց գործադրման շնորհիվ, ապա մարդկանց արտադրական գործունեությունը, այսինքն՝ մարդկանց կողմից արտադրության նյութական տարրերի ու հոգևոր ուժերի համատեղ գործադրման պրոցեսը հասարակական պրոգրեսի արմատական պայմանն է, գործունեություն, որն իրացնում է մարդկության ամբողջ նախընթաց զարգացման արդյունքները և բաց է անում մարդկության հետագա զարգացման մայրուղին։

Անտագոնիստական հասարակարգերում հասարակական պրոգրեսը ուղի է հարթում սուր հակասությունների միջով, ամենից առաջ տնտեսական բնագավառում, որտեղ անհամապատասխանություն և ապա կոնֆլիկտ է ստեղծվում մի կողմից արտադրողական ուժերի զարգացման տենդենցի ու հնարավորության և, մյուս կողմից՝ արտադրական հարաբերությունների տվյալ տիպի, ամենից առաջ, սեփականության տիրապետող ձևի միջև։ Այս կոնֆլիկտը, որի լուծումը տվյալ հասարակարգի շրջանակներում բացառված է, հասարակությունը կանգնեցնում է սոցիալական ցնցումների առաջ, դառնում սոցիալական ռևոլյուցիայի տնտեսական հիմքն ու արմատական պատճառը։ Հասարակական պրոգրեսի կրողները, այսինքն՝ իր ժամանակի ռևոլյուցիոն դասակարգերը, աշխատավոր ժողովուրդը հասարակության վերընթաց շարժումն ապահովում են համառ պայքարով, կործանելով ռեակցիոն բնույթ ընդունած հասարակական հարաբերությունները, հասարակական կյանքի քարացած ձևերը, հնացած հասարակական հաստատությունները, իմաստազրկված տրադիցիաները։

Հակասականությունը հասարակական պրոգրեսի բնորոշ հատկանիշն է հատկապես կապիտալիստական ֆորմացիայում, որտեղ ամեն մի առաջադիմական քայլ զուգակցվում է ռեգրեսով, հասարակական մի աննշան խավի հարստացումը աղքատության ու թշվառության է մատնում ժողովրդական բազմամիլիոն զանգվածներին, տեխնիկական կատարելագործությունները

աշխատանքը թեթևացնելու փոխարեն ավելի ծանր ու հոգեմաշ են դարձնում այն. գիտության լույսը, Մարքսի արտահայտությամբ, փայլում է տգիտության մռայլ ֆոնի վրա, փոքրամասնության մտավոր աշխատանքին զուգորդում է մեծամասնության ֆիզիկական աշխատանքը, քչերի ընդունակությունների ծաղկումը ենթադրում է շատերի ընդունակությունների ոտնահարում և այլն։

Հասարակական պրոգրեսի կարևորագույն առանձնահատկություններից մեկն այն է, որ պատմական զարգացման հետ միասին արագանում են նրա տեմպերը։ Պատմության ամենավաղ շրջանում պրոգրեսն աներևակայելիորեն դանդաղ է ծավալվում, հասարակ գործիքների ամենաչնչին կատարելագործումները, չխոսելով արդեն նոր գործիքների ու սարքերի ստեղծման մասին, պահանջում են հարյուրավոր ու հազարավոր դարերի մարդկային փորձ, նույնքան ժամանակ է պահանջվում հասարակ (այժմյան տեսակետից) հասկացության ձևավորման, տարրական հաշվարկման կամ մտքի արտահայտման ռացիոնալ ձևի մշակման համար։ Բայց նյութական ու հոգևոր նվաճումներն աստիճանաբար կուտակվում են և դառնում հասարակության և ամեն մի անհատի սեփականությունը, կատարելագործվում են աշխատանքի հմտությունն ու ճարտարությունը, մտածողության պրոցեսն ավելի ու ավելի է հարստանում հասկացություններով, տրամաբանական դատողություններով ու արտահայտման ձևերով և դրանց հիման վրա ավելի ու ավելի են ծավալվում մարդկանց ստեղծագործական ընդունակությունները, այդ ամենին զուգընթաց աճում են մարդու նյութական ու հոգևոր պահանջմունքները, հետևաբար և այն խթանները, որոնք մղում են մարդկանց գործունեության ավելի ու ավելի արդյունավետ միջոցների ու եղանակների հայտաբերման։

Բայց այս դեռ բոլորը չէ։ Մարդիկ սկսում են հասկանալ իրենց հասարակական կյանքի պայմաններն ու բնույթը և, հանգամանքների թելադրանքով, ձեռնամուխ լինել պատմական պրոգրեսը խոչընդոտող գործոնների վերացմանը։ Երկար ժամանակ մտածողները ռեալ կյանքի պահանջն ընկալել են որպես զուտ բանականության պահանջ, հետևաբար, բանականության գաղափարում մարդիկ մշուշոտ կերպով ընկալել են պատմական օրինաչափությունը, ինչպես և արդարության պահանջի մեջ իրենց արտահայտությունն են գտել ժողովրդական զանգվածների խուլ տրտունջը և պարբերաբար բռնկվող ընդվզումները շահագործողական կարգերի դեմ։ Պատմության պրոգրեսի հզոր լծակները, այսպիսով, հանդիսացել են արտադրողական ուժերի աճը և ռևոլյուցիոն ուժերի ու, առհասարակ, ամբողջ աշխատավոր ժողովրդի պայքարը կյանքի դաժան պայմանների դեմ. հենց այդ պայքարի մեջ է ծավալվել պատմության առաջընթացը։ Եթե հասարակական պրոգրեսի նյութական բազան արտադրության միջոցների սերնդե-սերունդ արագացող աճն ու կատարելագործումն է, ապա նրա սոցիալական բազան աշխատավոր ժողովրդի ավելի ու ավելի ակտիվ մասնակցությունն է, նախ՝ հին կարգերի խորտակմանը, ապա՝ մեր դարաշրջանում արդեն նոր հասարակարգի կառուցմանը։ Սա ժողովրդական մասսաների ակտիվության աճման օրենքն է, որը Մարքսը ձևակերպել է այսպես. «Պատմական գործողության հիմնավորության հետ միասին աճելու է, հետևաբար, և այն մասսայի ծավալը, որը պետք է կատարի այդ գործողությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 2, էջ 90)։



Արդի դարաշրջանի հատկանշական գիծը տարբեր սոցիալական սիստեմների, տարբեր սոցիալական ուժերի, իրարամերժ տենդենցների ու գաղափարների հարաճուն պայքարն ու բախումներն են և, բնականաբար, նման դարաշրջանում պատմական պրոգրեսը պետք է հակասական պրոցեսների ծնունդ լինի և ունենա ծավալման մի շարք ուղղություններ։ Պրոգրեսի առանձնահատկությունը բխում է արդի դարաշրջանի բովանդակությունից, որը ինչպես սահմանված է ՍՄԿՊ ծրագրում, անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին և այդ բովանդակությունը կազմող պրոցեսներից։ Հասարակական պրոգրեսի գլխավոր ուղղությունը, նրա մայրուղին անցումն է սոցիալիզմին և կոմունիզմի կառուցումը։ Բայց արդիականության համար այդ ամենաբնորոշ պրոցեսը ծավալվում է այն ժամանակ, երբ կապիտալիստական սիստեմը դեռևս պահպանվում է երկրագնդի զգալի մասում՝ իրեն հատուկ երևույթներով հանդերձ։

Կապիտալիզմի բարձրագույն փուլը՝ իմպերիալիզմը, իրենից ներկայացնում է ռեակցիա ամբողջ գծով։ Բայց ոչ մի ռեակցիա չի կարող ո՛չ միայն առհասարակ, լայն պատմական առումով, կանխել պրոգրեսը (որովհետև ամեն մի ռեակցիա վաղ թե ուշ տեղի է տալիս առաջադեմ ուժերի հանդեպ), այլև իր տիրապետության շրջանում կասեցնել հասարակական զարգացման պրոգրեսիվ տենդենցները կյանքի բազմազան բնագավառներում։ Կապիտալիստական աշխարհում հասարակական պրոգրեսի գլխավոր ուժը բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժումն է, որն ավելի ու ավելի է զուգակցվում ժողովուրդների ազգային-ազատագրական, հակաֆեոդալական ու հակաիմպերիալիստական շարժումների հետ։ Գաղութային ժողովուրդների ազատագրական պայքարը պսակվել է պատմական հաղթանակներով։ 1919 թվականին երկրագնդի տերիտորիայի 77,2 տոկոսը կազմում էին գաղութները, կիսագաղութներն ու դոմինիոնները, որոնցում բնակվում էին ավելի քան 1,2 միլիարդ մարդ, աշխարհի բնակչության 69,2 տոկոսը։ 1964 թվականին իմպերիալիզմի գաղութային տիրապետության տակ մնացել էր երկրագնդի տերիտորիայի միայն 6,9 տոկոսը և բնակչության՝ 1,4 տոկոսը։ Տասնյակ ժողովուրդների ազատագրումը գաղութարարների լծից և ազգային սուվերեն պետությունների կազմավորումը մեր դարաշրջանի առաջընթաց շարժման բնորոշ գծերից մեկն է։ Քաղաքական կյանքի ասպարեզ են մտել նոր հարյուր-միլիոնավոր աշխատավորներ և ավելի այժմեական են հնչում Վ. Ի. Լենինի 47 տարի առաջ ասած խոսքերը. «Այժմ պատմությունն ինքնուրույն կերպով կերտում են միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր մարդիկ» (Երկեր, հ. 27, էջ 184)։ Գաղութային սիստեմի փլուզումը մեծապես թուլացրել է իմպերիալիստական ռեակցիայի դիրքերը։

Սակայն, ինչպես նշված է ՍՄԿՊ ծրագրում, ազգային-ազատագրական ռևոլյուցիան չի ավարտվում քաղաքական անկախություն նվաճելով։ Ազատագրված երկրների հետագա զարգացման ընթացքը կախված կլինի նրանից, թե ինչ փոփոխություններ տեղի կունենան սոցիալական ու տնտեսական կյանքում, կլուծվե՞ն արդյոք ազգային վերածննդի կենսական խնդիրները։ Բազմախոստում հեռանկարներ կունենան այդ երկրները, եթե դրանք ընտրեն զարգացման սոցիալիստական ուղի. հակառակ դեպքում նրանց դեռևս կվիճակվի կրել այն տառապանքներն ու զոհողությունները, առանց որոնց հնարավոր չէ երևակայել կապիտալի տիրապետությունը։

Արդի դարաշրջանի պրոգրեսիվ սոցիալական երևույթներից է խաղաղության համար մղվող շարժումը՝ իր մի շարք առանձնահատկություններով։ Այն ունի խիստ լայն սոցիալական բազա, որովհետև իր շարքերում է համախմբում հասարակության տարբեր դասակարգերի ու խավերի, տարբեր երկրների ու ազգերի հոծ զանգվածներին, դրանով իսկ այն ամենամասսայական սոցիալական շարժումն է։ Խաղաղության համար մղվող պայքարի միջուկն ու ղեկավար ուժը բանվոր դասակարգն է, որն այդ պայքարը զուգակցում է իր դասակարգային պայքարի արմատական հարցերի հետ։ Խաղաղությունը պետք է բանվոր դասակարգին և ամբողջ աշխատավոր ժողովրդին, որովհետև դրանով աշխատանքի մարդիկ կփրկեն կորստից իրենց իսկ քրտինքով ստեղծված կամ, վերջին հաշվով, իրենց աշխատանքի շնորհիվ լույս աշխարհ եկած մարդկության նյութական ու հոգևոր բոլոր արժեքները, համաշխարհային քաղաքակրթությունը։ Ավելին, դրանով նրանք կփրկեն հենց իրենց՝ հարյուր միլիոնավոր աշխատավորների կյանքը. մի խոսքով, ո՛չ միայն կփրկեն անցյալի պրոգրեսի պտուղները, այլև կապահովեն պրոգրեսը ապագայում։ Խաղաղության համար մղվող պայքարը հետապնդում է ամենավեհ հումանիստական նպատակներ։ Խաղաղությունը մարդկության պրոգրեսիվ զարգացման նախապայմանն է արդի դարաշրջանում, երբ կործանարար զենքերի ուժը բազմապատկվել է։ Խաղաղության ուժերը վիթխարի են։ Դա մի բանակ է, որի ջոկատները կազմված են բոլոր երկրների աշխատավորներից և որի հուսալի պատվարը սոցիալիզմի լագերն է՝ իր տնտեսական ու ռազմական հզոր պոտենցիալով. նրա կողմն են մարդկային բանականությունն ու խիղճը, նրան են ուղղված ժողովուրդների հույսերն ու ակնկալությունները։

«Արդի դարաշրջանի կենտրոնում կանգնած են միջազգային բանվոր դասակարգը և նրա գլխավոր ծնունդը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը»— ազդարարում է ՍՄԿՊ ծրագիրը։ Բանվոր դասակարգը՝ բոլոր դասակարգերից ամենաառաջադեմն ու ռևոլյուցիոնը, հիմնադիրն է պրոգրեսի նոր տիպի, որն այդ դասակարգի հաղթանակով և նրա պատմական միսիայի կենսագործմամբ վերաճում է համաշխարհային կոմունիստական պրոգրեսի։ Այդ առաջադիմական շարժումը, որը գլխավորում է բանվոր դասակարգը, չունի իր հավասարը նախընթաց պատմության մեջ ո՛չ իր ծավալի ու թափի և ոչ էլ իր նպատակների ու հեռանկարների տեսակետից։ Դա մի շարժում է, որ իր դրոշի տակ է առնում ամբողջ աշխատավոր մարդկությանը և հետապնդում է ամենահումանիստական և ամենաազնիվ իդեալները, որ երբևէ իմացել է պատմությունը։ Դրանք կոմունիստական իդեալներն են, որոնք դարավոր երազանքից այժմ արդեն իրականություն են դառնում։

Կոմունիստական պրոգրեսը իր ամբողջ խորությամբ ու բազմերանգությամբ կծավալվի ապագայում։ Բայց պատմության փորձի ու մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների կանխատեսումների հիման վրա այժմ արդեն բացահայտված են այդ պրոգրեսի մի շարք բնորոշ գծերը։

Կոմունիզմը, որի առաջին՝ սոցիալիստական փուլն արդեն իրականացված է ՍՍՌՄ-ում և իրականացվում է մի շարք այլ երկրներում, վերջ է տալիս պրոգրեսի այն հակասականությանը, որը նրա բնորոշ գիծն էր անտագոնիստական հասարակարգերում։ Կոմունիստական պրոգրեսը խարսխվում է աշխատավոր ժողովրդի ընդունակությունների դրսևորման, տաղանդների ծաղկման, աշխատանքի նոր ձևերի ծլարձակման վրա։ Վերացել է շահագործումը,



և այլևս մեծամասնության տառապանքը վայելքի աղբյուր չէ փոքրամասնության համար, պրոգրեսի կրողներն այլևս զուրկ չեն նրա պտուղներից։ Կոմունիստական պրոգրեսն իր տնտեսական բազան ունի արտադրության միջոցների հանրային սեփականության մեջ, որը և պայմանավորում է մարդկանց՝ աշխատելու և աշխատանքի բարիքները վայելելու անկապտելի իրավունքը, մարդկանց ազատ մասնակցությունը հանրօգուտ աշխատանքին ու նրա կազմակերպմանը, հասարակական կառավարմանն ու կուլտուրական շինարարությանը։ Պրոգրեսի անտագոնիստական հակասականության վերացումը լայն ուղի է բացել մարդկանց համախմբման և միասնական գործունեության համար։ Եթե նախկինում պրոգրեսի հիմքում ընկած էին իրարամերժ գործոններ և մարդկանց ամբողջ գործունեությունը գումարվում էր հակադիր ձգտումների, շահերի, նպատակների ու իդեալների բախումներից և մարդկային աշխատանքի ու էներգիայի զգալի մասը անխուսափելիորեն վատնվում էր բազմազան ձգտումների, գաղափարների ու տենդենցների միջև մղվող պայքարում, ապա կոմունիստական պրոգրեսի հիմքում ընկած են այնպիսի ներդաշնակ գործոններ, որոնք մարդկանց արտադրական ու հասարակական գործունեությունը մղում են դեպի միասնական նպատակ, որի շնորհիվ անհամեմատ բարձրանում է այդ գործունեության արդյունքը։ Մարդկանց շահերի ու նպատակների, հետևաբար նաև գաղափարների ու բարոյական սկզբունքների միասնականությունը վերելք ապրող հասարակարգի ու նրա պրոգրեսի մեծագույն նվաճումն է։

Այստեղից բնավ չի հետևում, թե սոցիալիզմը և ապագայում՝ զարգացած կոմունիստական կարգերը բացառում են ամեն մի հակասություն հասարակության զարգացման մեջ։ Ամեն մի զարգացող պրոցես ենթադրում է որոշակի հակասությունների հաղթահարում, զարգացման ամեն մի աստիճան բացասում է նախկին աստիճանը, որը բացասվում է հենց այն պատճառով, որ պարունակում է հակասություններ, որոնք աճման գործոնից վերածվել են զարգացման խոչընդոտի։ Ոչ մի հասարակարգ, այն էլ պրոգրեսի լայն ծավալման պայմաններում, չի կարող գամվել զարգացման որոշակի աստիճանի, այն պետք է զարգանա, հաղթահարելով ներքին հակասությունները, պետք է վերացնի այն հակասությունները, որոնք խոչընդոտում են հետագա զարգացումը։ Մեր ժամանակներում, երբ դեռևս մնացել են էական տարբերությունները քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև, երբ կան հանրային սեփականության տարատեսակներ, երբ դեռևս հասարակությունը չի անցել ըստ պահանջի բաշխման սկզբունքին, բնականաբար, հասարակության կյանքը պետք է ծնի որոշակի հակասություններ, չխոսելով արդեն այն մասին, որ կապիտալիզմի մնացուկները դեռևս մինչև վերջ չեն հաղթահարված բոլորի գիտակցության ու վարմունքի մեջ։ Հակասությունների ժխտումը կամ անտեսումը օբյեկտիվորեն վնասում է հասարակական պրոգրեսին, որովհետև առանց դրանց էությունը բացահայտելու և բնույթը հասկանալու, հնարավոր չէ հաղթահարել կամ վերացնել դրանք։

Կոմունիստական պրոգրեսն ունի զարգացման ավելի բարձր տեմպեր, քան կարող էին ունենալ նախկին հասարակարգերը։ Զարգացման տեմպերի արագացումն ընդհանուր հասարակական օրենք է, բայց, ինչպես ամեն մի ընդհանուր օրենք, այս ևս տարբեր հասարակարգերում ունի իր գործողության կոնկրետ դրսևորումն ու առանձնահատկությունները։ Կոմունիստական կար-

գերն ապահովում են զարգացման բարձր տեմպեր հասարակական կյանքի
բոլոր բնագավառներում. տնտեսության, կուլտուրայի, գիտության զարգա-
ցումը տեղի է ունենում առանց ցնցումների, ճահճացման մոմենտների,
ընկրկումների: Զարգացման տարերային բնույթին փոխարինել են գիտակցա-
կան հասարակական ղեկավարությունն ու պլանայնությունը:
Կոմունիստական պրոգրեսի մյուս բնորոշ գիծը նրա անսպառելիությունն
է: Նախկինում ամեն մի հասարակարգ ունենում էր իր պրոգրեսիվ զարգացման
ժամանակը, որից հետո վրա էր հասնում նրա ճահճացման և ապա անկման
շրջանը: Բանվոր դասակարգի դասակարգային տիրապետության հաստատմամբ
նոր օրինաչափություն է սկսվում պատմության մեջ՝ տիրապետող դասակար-
գը դառնում է պատմության առաջադիմության կրողը իր տիրապետության
բոլոր շրջաններում: Ընդ որում նա բնավ չի հավերժացնում այդ տիրապետու-
թյունը. ապահովելով սոցիալիզմի լրիվ ու վերջնական հաղթանակը, նրա դիկ-
տատուրան ավարտում է ներքին զարգացման տեսակետից իր պատմական մի-
սիան, իսկ բանվոր դասակարգը, քանի դեռ չեն վերացել նրա և մյուս աշխա-
տավոր դասակարգի՝ գյուղացիության միջև եղած դասակարգային տարբերու-
թյունները, շարունակում է գլխավորել հասարակական զարգացման պրոգրեսիվ
ընթացքը: Այսպիսով, հասարակական պրոգրեսն այլևս չի կարող կաշկանդվել
որևէ դասակարգի էգոիստական ձգտումներով ու գործելակերպով և դրանցից
մեկընդմիշտ փրկված հասարակական կյանքը նոր, ավելի արագ տեմպ կվերց-
նի իր զարգացման քառուղիներում: Անցած սերունդների դրական գործունեու-
թյան արդյունքը, որ մարմնանում է տեխնիկայի, գիտության ու արվեստի մեջ,
կդառնա մարդկության հետագա պրոգրեսի նախադրյալը: Պրոգրեսի անսպա-
ռելիության մեջ իր արտահայտությունը կգտնի մարդկային բնության այն
առանձնահատկությունը, որ նա չի կարող վերջնական համարել ոչ մի նվա-
ճում թե՛ իրականության վերափոխման և թե իմացության բնագավառում:
Անտագոնիստական հասարակարգերում մարդկության նյութական ու հո-
գևոր նվաճումները երբեք չեն դրվել ամբողջ հասարակության կամ նրա մե-
ծամասնության տրամադրության տակ. լավագույն դեպքում միայն պրոգրեսի
փշրանքներն են հասել հասարակության մեծամասնությանը: Կոմունիստական
պրոգրեսի բովանդակությունն ու նպատակը հասարակության և անհատի
ծաղկումն է: Կոմունիստական հասարակական կենսաձևի հիմնական սկզբուն-
քը Մարքսը համարում էր ամեն մի անհատի լիակատար ու ազատ զարգացու-
մը (տե՛ս «Կապիտալ», հ. 1, 1954, էջ 620): Այդպիսի սկզբունքը ենթադրում
է արտադրողական ուժերի ավելի բարձր մակարդակ, բնության վրա մարդու
տիրապետության մեծացում և մարդկային անհատի ազատության լիակատար
ապահովում: Այդ ենթադրում է նաև անհատի ու հասարակության շահերի
լիակատար ներդաշնակություն, հասարակական զարգացման այնպիսի աս-
տիճան, երբ բոլոր ժողովուրդները հնարավորություն կունենան աշխատելու
համամարդկային մեծ կոլեկտիվում և վայելելու իրենց ձեռքերի ու մտքի ար-
դյունքը:

# ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԻ ԱՐԴԻ ԷՏԱՊԸ

Ա. ՍԱՐԳՍՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

Ազգային-ազատագրական ռևոլյուցիաների հզոր ալիքը սրբում տանում է մեր դարաշրջանի ամենախայտառակ ու ամոթալի գաղութային սիստեմը, քայքայում ու թուլացնում է զառամյալ իմպերիալիզմի հիմքերը: Նախկին գաղութային կայսրության փլատակների վրա ներկայումս առաջացել են մոտ 60 սուվերեն ու անկախ պետություններ: Եթե 1945 թվականին Աֆրիկայում և Ասիայում գաղութային ստրկության մեջ տառապում էին 700 միլիոն մարդ, ապա այժմ մնացել են միայն 40 միլիոն:

Իմպերիալիզմի սիստեմի անկասելի քայքայումը հետպատերազմյան ժամանակաշրջանի համաշխարհային պատմական իրադարձությունն է: Ծավալվել է այն ժողովուրդների վերածնման մեծ ու պատմական պրոցեսը, որոնց հարյուրամյակներ շարունակ գաղութարարները հեռու էին պահում մարդկային հասարակության զարգացման գլխավոր ճանապարհից: Հասել է համաշխարհային պատմության՝ մեծ Լենինի կանխանշած այն նոր ժամանակաշրջանը, երբ Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի բազմաչարչար ժողովուրդներն ակտիվ մասնակցում են ամբողջ աշխարհի բախտի վճռմանը, դառնում միջազգային հարաբերությունների նոր, հզոր գործոն:

Վերջին տարիների իրադարձությունները հօգս ցնդեցրին այն պատրանքները, թե իբր կարելի է հեշտությամբ հաղթանակ տանել գաղութակալության դեմ: Սկսվել է սուր և վճռական պայքար հանուն գաղութատիրության վերջնական վերացման, հանուն գաղութային ժողովուրդների ազգային վերածնունդի ու պետական սուվերենության:

Ինչպես հայտնի է, ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեան, Սովետական Միության նախաձեռնությամբ, 1960 թվականի դեկտեմբերի 14-ին քննարկեց գաղութային սիստեմի լիկվիդացման հարցը և ընդունեց Դեկլարացիա: Այդ պատմական փաստաթղթում նշվեց, որ անհրաժեշտ է անհապաղ և առանց վերապահման վերջ տալ գաղութակալությանն իր բոլոր ձևերով և դրսևորումներով:

Բացի մի բուռ գաղութատեր պետություններից՝ ԱՄՆ-ից, Անգլիայից, Ֆրանսիայից, Փորթուգալիայից, Բելգիայից, Հարավ-Աֆրիկյան Միությունից, Իսպանիայից, Ավստրալիայից ՄԱԿ-ի անդամ մյուս բոլոր երկրները միահա-

մուռ պաշտպանեցին այդ Դեկլարացիան և արտահայտվեցին հօգուտ գաղու-
թային խայտառակ սիստեմի վերջնական լիկվիդացման։ Դա սոցիալիստական
երկրների, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի անկախ պետու-
թյունների համատեղ պայքարի խոշոր հաղթանակն էր գաղութատիրության և
իմպերիալիզմի դեմ։

Բայց պետք է նշել, որ գաղութատեր պետությունները, ըստ էության, ան-
տեսում են ՄԱԿ-ի Դեկլարացիայի պահանջները և ձգտում հավերժացնել իրենց
տիրապետությունը դեռևս գաղութային ստրկության մեջ գտնվող ժողովուրդ-
ների վրա։ Աֆրիկայի մայրցամաքում դեռևս գաղութային ու կախյալ վիճա-
կում են բազմաթիվ երկրների ժողովուրդներ։ Ասիայում դեռևս չեն ազատա-
գրվել 12 երկրներ՝ մոտ 9 միլիոն բնակչությամբ։ Միայն Անգլիան շարունա-
կում է իր ձեռքում պահել 10 գաղութ, ուր ապրում են 7 միլիոնից ավելի մար-
դիկ։ Մոտ յոթ միլիոն մարդ գաղութային ծանր լծի տակ հեծում է նաև ամե-
րիկյան մայրցամաքում և նրա հարակից կղզիներում, ավելի քան 3 միլիոն
մարդ՝ Օվկիանիայում։ Այն հարցին, թե ինչո՞ւ մինչև հիմա այդ գաղութներն
ու խնամարկյալ տերիտորիաներն անկախություն չեն ստացել, իմպերիալիզմի
գրչակները պատասխանում են, թե իբր այդ ժողովուրդները դեռևս «պատրաստ
չեն անկախության»։ Այս պատճառաբանությունը մտացածին է և չի արտա-
հայտում իրերի իսկական վիճակը, մանավանդ որ ՍՍՌՄ-ի նախաձեռնու-
թյամբ ՄԱԿ-ի կողմից ընդունված հայտնի Դեկլարացիան ընդգծում է՝ «...քա-
ղաքական, տնտեսական և սոցիալական անբավարար պատրաստությունը կամ
կրթական բնագավառում անբավարար պատրաստությունը չպետք է օգտա-
գործվեն որպես առիթ անկախություն տալը ուշացնելու համար»։

Աֆրիկայում, Ասիայում և Օվկիանիայում գաղութային ռեժիմի բեկորների
պահպանմամբ իմպերիալիստական տերությունները ձգտում են արգելակել
ազգային-ազատագրական շարժումները, խոչընդոտել նրանց վերջնական հաղ-
թանակը։

Ազգային-ազատագրական պայքարը բարդանում է նաև այն պատճառով,
որ նրա դեմ ներկայումս հանդես է գալիս ոչ թե մեկ գաղութային պետություն,
այլ փաստորեն իմպերիալիստական պետությունների մի ամբողջ խումբ։ Միջ-
ազգային իմպերիալիզմի կողմից ստեղծված ՆԱՏՕ-ի, ՍԵԱՏՕ-ի, ՍԵՆՏՕ-ի
ռազմա-քաղաքական բլոկները կոչված են ո՛չ միայն պայքարելու սոցիալիզմի
ճամբարի երկրների դեմ, այլ նաև ազգային-ազատագրական շարժումներն ար-
յան մեջ խեղդելու, գաղութային խայտառակ սիստեմի բեկորները պահպանե-
լու համար։ Այդ ավելի ցայտուն է դրսևորվում Աֆրիկայում։ Ով պատահական
չէ, որ ՆԱՏՕ-ի ագրեսիվ-ռազմական բլոկի կազմում աֆրիկյան գործերի հա-
մար վերջերս ստեղծվել է հատուկ կոմիտե, որը փորթուգալական գաղութնե-
րում, Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկայում, Հարավային Ռոդեզիայում, Կոն-
գոյում (Լեոպոլդվիլ) հանդես է գալիս ազատագրական շարժումների դեմ, որ-
պես իմպերիալիստական երկրների կոլեկտիվ ուժ։

Հենվելով ՆԱՏՕ-ի աջակցության վրա, փորթուգալական գաղութարար-
ներն Անգոլայի ժողովրդի անկախության արդարացի և օրինական պահանջին
պատասխանեցին արյունալի պատերազմով, երկիրը վերածելով ավերակների։
Այդ ոճրագործությունը միջազգային հասարակայնությունից թաքցնելու հա-
մար Փորթուգալիայի կառավարությունը, օգտվելով ՆԱՏՕ-ի գծով իր դաշնա-
կիցների, առաջին հերթին՝ ԱՄՆ-ի ակտիվ աջակցությունից, հրաժարվեց կա-



տարել ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի և Գլխավոր Ասամբլեայի որոշում-
ները։ Փորթուգալական գաղութարարները փորձում են գաղութային կեղտոտ
պատերազմը տարածել նաև Մոզամբիկի և փորթուգալական Գվինեայի վրա։
Կասկածից վեր է, որ Փորթուգալիան սեփական ուժերով չի կարող պահպա-
նել իր տիրապետությունը աֆրիկյան գաղութներում, գաղութներ, որոնք տե-
րիտորիայով երեք անգամ մեծ են մետրոպոլիայից և որոնցում մեկուկես ան-
գամ ավելի շատ մարդ է ապրում։ Ազգային-ազատագրական շարժումները ճըն-
շելու համար Փորթուգալիան իր գաղութներում կուտակել է հսկայական բա-
նակ։ Ներկայումս միայն Անգոլայում կենտրոնացված է փորթուգալական 80
հազարանոց բանակ, Մոզամբիկում՝ 16, Գվինեայում՝ մոտ 5 հազարանոց և
այլն։ Վերջին երեք տարում Սալազարի ֆաշիստական կառավարությունը աֆ-
րիկյան հայրենասերների դեմ պատերազմ մղելու համար ծախսել է 200 միլիոն
դոլար։ Իմպերիալիստական պետությունների կողմից կոպիտ կերպով խախտ-
վում է ՄԱԿ-ի խորհրդի 1962 թվականի դեկտեմբերի 11-ի՝ խնամակալության
մասին որոշումը, որով արգելված է գաղութային պատերազմ վարելու համար
Փորթուգալիային զենք մատակարարելը։ Իմպերիալիստական պետություննե-
րը, հակառակ այդ որոշման, շարունակում են զենք մատակարարել Սալազարի
գաղութային պատժիչ ջոկատներին։ Անգոլայում օգտագործվում են նապալ-
մային ռումբեր, որոնք արտադրվել են ԱՄՆ-ում և Անգլիայում։ Փորթուգալա-
կան կառավարությունը Անգոլա է ուղարկել ՆԱՏՕ-ի զենքի մի մասը, որը
պահպանվում էր Փորթուգալիայում։

Գաղութային պատերազմ վարելու համար ԱՄՆ-ը Փորթուգալիային տվել է
300 միլիոն դոլարի արժողությամբ զենք և ռազմական հանդերձանք։ Անկաս-
կած, նման առատաձեռնությունն անհատույց չի մնացել։ ԱՄՆ-ը իրավունք է
ստացել օգտվելու Ազորյան կղզիներում գտնվող Լեժանս-ֆիլդ ռազմական խո-
շոր բազայից, որն ունի ռազմա-ստրատեգիական մեծ նշանակություն։ Բացի
այդ, Անգոլայում գտնվող երկաթի ու, մասամբ, մարգանեցի և ոսկու հանքերի
օգտագործումը տրվել է Կրուպպին, որը զենք է մատակարարել Սալազարին։

Վերոհիշյալ փաստերը համոզիչ կերպով ապացուցում են, որ սալազարա-
կան Փորթուգալիան, անզոր գտնվելով սեփական ուժերով պահպանելու իր գա-
ղութային տիրապետությունը Աֆրիկայում, ստիպված է օգտագործել ՆԱՏՕ-ի
գծով իր դաշնակիցների աջակցությունը։ Դա «կոլեկտիվ գաղութակալու-
թյուն է»։

Գաղութակալության մնացուկներն Աֆրիկայում պահպանելու կարևոր մի-
ջոցներից մեկը գաղութատերերի բլոկն է, որին աֆրիկացիներն իրավացի կեր-
պով անվանել են «հրեշավոր դաշինք»։ Այստեղ միավորվել են Հարավ-Աֆրիկ-
յան Միությունը, Հարավային Ռոդեզիայի և փորթուգալական գաղութարարները,
որոնց ակտիվ աջակցություն են ցույց տալիս Նյու-Յորքը, Լոնդոնը, Բոննը և
այլն։ Այդ «դաշինքի» ռազմա-քաղաքական նպատակն է՝ ազատագրական շար-
ժումների հարվածներից զերծ պահել մոնոպոլիստական կապիտալի դիրքերը
Հարավային Աֆրիկայում։

«Հրեշավոր դաշինքի» հիմնական հարվածային ուժը Հարավ-Աֆրիկյան
ռեսպուբլիկան է։ Նա ունի 20 հազարանոց մշտական բանակ, 26 հազար ոս-
տիկաններ, ռազմա-օդային և ծովային նավատորմ, հրթիռային զորամասեր
և այլ զինված ուժեր։ Նախատեսվում է մինչև 1966 թվականը մշտական բանա-

կի թվական կազմը հասցնել 60 հազարի: ՆԱՏՕ-ի օգնությամբ Հարավ-Աֆրիկ-
յան Ռեսպուբլիկայում ստեղծվում է ռազմական արդյունաբերություն:

Վերոհիշյալ փաստերը մի անգամ ևս ապացուցում են ՆԱՏՕ-ի մեջ մտնող
խոշոր պետությունների կառավարող շրջանների փարիսեցիությունը: Նրանք
խոսքով դատապարտում են Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկայում մոլեգնող
ռասայական խտրականությունը, իսկ գործնականում զենք են մատակարա-
րում ֆերվուրդյան ռասիստներին, դրանով բացահայտելով իրենց իմպերիա-
լիստական, գաղութակալական նկրտումները: Ակնհայտ է, որ եթե Հարավ-
Աֆրիկյան Ռեսպուբլիկայում հաղթանակի ազգային-ազատագրական շարժու-
մը, ապա այն սպառնալիք կստեղծի մոնոպոլիստների կողմից այդտեղ ներ-
դրված կապիտալի համար և նրանց կզրկի այդ կարևոր պլացդարմից: Բա-
վական է նշել, որ միայն ԱՄՆ-ը այդտեղ ունեն 500 միլիոն դոլար կապիտալ,
իսկ Անգլիան՝ մոտ 900 միլիոն ֆունտ ստեռլինգ, որը կազմում է վերջինիս
արտասահմանյան ներդրումների մեկ քառորդը:

ԱՄՆ-ի կրքոտ պաշտպանությունն ու հովանավորությունը գաղութատեր
պետություններին պետք է բացատրել երկու պատճառով: Առաջին՝ պաշտպա-
նելով գաղութարարներին, ԱՄՆ-ը դրանով իսկ պաշտպանում են իրենց մոնո-
պոլիաների շահերը, որոնք հսկայական կապիտալներ են ներդրել անգլիական,
ֆրանսիական, բելգիական, փորթուգալական գաղութներում: Բավական է
նշել, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԱՄՆ-ը Ասիայում,
Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում ներդրել են 21 միլիարդ դոլար և յու-
րաքանչյուր դոլարից ստացել 2,5 դոլար շահույթ (տե՛ս Правда, 19 հոկտեմ-
բերի, 1961 թ.): Երկրորդ՝ ԱՄՆ-ի կառավարող շրջանները պաշտպանում են
մյուս գաղութատեր երկրներին, որովհետև իրենք էլ սովորել են բազմամի-
լիոն ժողովուրդների և ստեղծել «անտեսանելի» գաղութային տիրապետություն:
Չնայած ամերիկյան իմպերիալիզմի պրշակները կաշվից դուրս են գալիս՝
ժխտելու և քողարկելու գաղութային այդ խայտառակ քաղաքականությունը,
բայց ապարդյուն:

Իմպերիալիստներն ինչպես էլ ձգտեն քողարկվել, միևնույն է, միջազգային
հասարակության աչքից չեն կարող թաքցնել այն ակնառու փաստը, որ Պոր-
տո-Ռիկոն իր երկու միլիոն բնակչությամբ դարձել է ԱՄՆ-ի մոնոպոլիստական
շրջանների կողոպուտի և շահագործման օբյեկտը: ԱՄՆ-ի կառավարող շրջան-
ներն ամեն ջանք գործադրում են, որպեսզի ՄԱԿ-ի կողմից իրենց տրված,
այսպես կոչված, խնամարկյալ տերիտորիան՝ Գուամ կղզին, դարձնեն իրենց
գաղութը: ԱՄՆ-ը անօրինական կերպով գաղութացրել է Ճապոնիային պատ-
կանող Օկինավա կղզին: Խաղաղօվկիանոսյան հարյուրավոր կղզիներ դարձել
են ատոմային ու ջրածնային ռումբերի փորձարկման պոլիգոններ:

Աֆրիկայի ազգային լիդերները, լավ հասկանալով կոլեկտիվ գաղութա-
կալության ռեալ վտանգը և, չնայած գոյություն ունեցող տարաձայնություն-
ներին, ամեն կերպ ձգտում են միավորել մայր ցամաքի ազատագրական ուժե-
րը և ամրապնդել աֆրիկյան միասնությունը: Հիշատակման արժանի է 1961
թվականին ստեղծված փորթուգալական գաղութների ազգային կազմակերպու-
թյունների աֆրիկյան կոնֆերանսը, որը հանդես է գալիս որպես Անգոլայի,
Մոզամբիկի, փորթուգալական Գվինեայի և Կանաչ հրվանդան կղզիների ազ-
գային-ազատագրական շարժումների կոորդինացման օրգան: Սերտ համա-
գործակցություն է ստեղծվել Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկայի, Բասուտոլեն-



դի, Բեչուանալենդի, Սվազիլենդի, Անգոլայի, Մոզամբիկի, Հարավ-Արևմտյան
Աֆրիկայի, Հարավային Ռոդեզիայի ազգային-ազատագրական ուժերի միջև:
Հայրենասիրական, հակագաղութակալական բոլոր ուժերի համախմբման նման
պրոցես այս կամ այն չափով տեղի է ունենում ազգային անկախության համար
պայքարող մյուս երկրներում:

Արդի ժամանակաշրջանում ազգային-ազատագրական շարժման ամրա-
պնդման ու զարգացման գործում կարևոր նշանակություն ունի քաղաքական
անկախություն ձեռք բերած երկրների միասնությունը: Այդ գործում մեծ դեր
կատարեց աֆրիկյան երկրների ղեկավարների 1963 թվականի մայիսին Ադիս-
Աբեբայում տեղի ունեցած կոնֆերանսը: Այդտեղ քննարկվեցին այն խնդիր-
ները, որոնք պետք է նպաստեին աֆրիկյան մայրցամաքում գաղութակալու-
թյան լիկվիդացմանը, օտարերկրյա ռազմական բազաների վերացմանը: Կոն-
ֆերանսին մասնակից աֆրիկյան շատ երկրներ համաձայնության եկան աֆ-
րիկյան միասնության հարցում: Կոնֆերանսը ընդգծեց, որ անհրաժեշտ է
համախմբել հակաիմպերիալիստական բոլոր ուժերը Անգոլայում գաղութակա-
լության սիստեմի մնացուկները լիկվիդացնելու, ազգային անկախությունն ու
պետական սուվերենությունն ամրապնդելու, նեոգաղութակալության դեմ պայ-
քարն ուժեղացնելու, օտարերկրյա ռազմական բազաները վերացնելու համար:

Ազատագրական սրբազան պատերազմ են մղում ներկայումս Անգոլայի,
Մոզամբիկի, փորթուգալական Գվինեայի, Կանաչ հրվանդան կղզիների, Հա-
րավային Վիետնամի, Օմանի և այլ գաղութների ժողովուրդները:

Ազգային-ազատագրական շարժման բոցը տարածվել է Կոնգոյում: Արև-
մտյան գաղութարարները, չհաշտվելով Կոնգոն կորցնելու փաստի հետ, ամեն
կերպ ձգտեցին այնտեղ պահպանել իրենց դիրքերը՝ մարիոնետային կառավա-
րության օգնությամբ: Եվ, իրոք, դատաստան տեսնելով Կոնգոյի հայրենասեր-
ների և Կոնգոյի ժողովրդի շահերի իսկական արտահայտիչ Լումումբայի հետ,
երկրում ստեղծեցին տեռորի և բռնության վրա հենված արյունալի ռեժիմ: Սա-
կայն Կոնգոյի ժողովուրդը, որ երկար տարիներ պայքարել է բելգիական գա-
ղութարարների դեմ, չէր կարող հաշտվել երկրում ստեղծված վիճակի հետ:
Ահա թե ինչու 1964 թվականի սկզբներից Կոնգոյի հայրենասիրական ուժերը,
Գաստոն Սումիալոյի գլխավորությամբ, պայքարի դրոշ բարձրացրին երկրի
իսկական անկախության համար: Պարտիզանական շարժումը ծավալվեց Հյու-
սիսային Կատանգայի, Կիվուի, Կվանգոյի, Կիվիլուի ընդարձակ շրջաններում:
Երկրի մի շարք կարևոր քաղաքներ՝ Ալբերտվիլը, Բոդուենվիլը, Կինդուն, Ստեն-
լիվիլը և այլն, անցան ապստամբների հսկողության տակ: Կոնգոյի մայ-
րաքաղաք Լեոպոլդվիլում կատարյալ քաոս էր տիրում: Չոմբեի մարիոնետային
կառավարությունը շտապ դիմեց բելգիական կառավարությանը՝ ռազմական
օգնություն ստանալու: ԱՄՆ-ի և Բելգիայի կառավարող շրջանները չհապաղե-
ցին ընդառաջել իրենց դրածոյի խնդրանքը: Ամերիկյան դոլարներով Հարավ-
Աֆրիկյան Միությունից, Արևմտյան Գերմանիայից, Բելգիայից, Կուբայական
հակառևոլյուցիոն թափթփուկներից կազմեցին հրոսակային ջոկատներ՝ Կոն-
գոյի հայրենասերների հետ հաշվեհարդար տեսնելու համար: Սակայն ապար-
դյուն են այդ ջանքերը: Կոնգոյի ազատագրական շարժումը վճռական կերպով
ձգտում է իսկական անկախության:

Ազգային-ազատագրական շարժումների հարուստ փորձը ցույց է տալիս,
որ Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում հանձին բանվոր դա-

սակարգի, ստեղծվել է այնպիսի հասարակական և քաղաքական ուժ, որն ընդունակ է բազմամիլիոն գյուղացիության հետ, կոմունիստական ու բանվորական պարտիաների գլխավորությամբ, հակահարված տալու ինչպես գաղութարարներին, այնպես էլ ներքին հակառևոլյուցիային:

Ազգային-ազատագրական շարժումների արդի էտապում ասիական, աֆրիկյան և լատինա-ամերիկյան մայրցամաքներում ծավալվում են գործադուլային շարժումներ, որոնք վկայությունն են այն բանի, որ բանվոր դասակարգը այդ երկրներում հանդես է եկել որպես քաղաքական հզոր ուժ:

Իմպերիալիզմի ոտնձգությունների դեմ ավելի ու ավելի են միավորվում աֆրիկյան միասնության կազմակերպության անդամները: Ակտիվ է գործում Աֆրիկայի ազատագրման կոմիտեն: Աֆրիկյան տարբեր երկրներում ստեղծվում են ազգային կամավորական կորպուսներ ազատագրական շարժմանը համակողմանի օգնություն և աջակցություն ցույց տալու համար:

Աֆրիկյան պետությունները սկսել են տնտեսական և քաղաքական սանկցիաներ կիրառել Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկայի և Փորթուգալիայի նկատմամբ: Բավական է նշել, որ ներկայումս 20-ից ավելի աֆրիկյան երկրներ Հարավ Աֆրիկյան Ռեսպուբլիկային բոյկոտ են հայտարարել և դադարեցրել են առևտրական հարաբերությունները, նրա առաջ փակել իրենց նավահանգիստներն ու օդանավակայանները:

Ուգանդայի պրեմիեր մինիստր Մ. Օբոտեն, հանդես գալով Ադիս-Աբեբայի կոնֆերենցիայում, աֆրիկյան երկրներին կոչ արեց տնտեսական բոյկոտ հայտարարել Մեծ Բրիտանիային, եթե նրա կառավարությունը անկախություն տա Հարավային Ռոդեզիային, քանի դեռ իշխանության գլուխ կանգնած է եվրոպական փոքրամասնության ներկայացուցիչը: Այդ տեսակետը հետագայում պաշտպանեցին Տանգանիկայի և Քենիայի ղեկավար գործիչները: Նրանք հայտարարեցին, որ իրենց երկրներն ստիպված են դուրս գալ Բրիտանական ազգային համագործակցությունից, եթե ռասայական կառավարության առկայության պայմաններում Հարավային Ռոդեզիային տրվի «անկախություն»: Այդ նախազգուշացումն ունեցավ իր ազդեցությունը: Հարավային Ռոդեզիային կեղծ անկախություն տալու դեմ հանդես եկան բրիտանական համագործակցության այնպիսի անդամներ, ինչպիսիք են՝ Կանադան, Ավստրալիան, Նոր-Զելանդիան:

Միջազգային իմպերիալիզմն՝ ԱՄՆ-ի գլխավորությամբ, ներկայումս ավելի է լկտիացել Հարավ-Արևելյան Ասիայի շրջանում և ամենասատոր միջոցներով աշխատում է արյան մեջ խեղդել ազգային-ազատագրական շարժումները: Դեռևս 1954 թվականի Ժնևի համաձայնագրերը Բիրմայի, Տաիլանդի, Կամբոջայի, Լաոսի և Վիետնամի ժողովուրդների առաջ բացեցին անկախության, խաղաղության ու դեմոկրատիայի ուղիով զարգանալու հեռանկարներ: Բայց ցավոք, մինչև այժմ էլ Հարավային Վիետնամի ժողովրդին վիճակված չէ զբաղվելու խաղաղ ու ստեղծագործ աշխատանքով, քանի որ ֆրանսիական գաղութարարներին փոխարինելու եկան ամերիկյան նեոգաղութարարները: Խախտելով խաղաղ ճանապարհով Վիետնամի երկու մասերը վերամիավորելու մասին Ժնևի համաձայնագիրը, ԱՄՆ-ը շտապեց Հարավային Վիետնամում հաստատել մարիոնետային ռեժիմ, իշխանության գլուխ կանգնեցնելով իրենց դրածո Նգո Դին Դիեմին: «Կոմունիզմի դեմ պայքարելու», ազգային-ազատագրական շարժումը ճնշելու համար նրան տրամադրվեցին միլիոնավոր դոլարներ, հազարավոր «խորհրդականներ», մասնագետներ ու կանոնավոր զորք:



Սակայն ամերիկյան իմպերիալիզմի այդ ջանքերն ապարդյուն անցան: Ո՛չ Նգո Դին Դիեմը, ո՛չ նրա հաջորդներ Վան Մինն ու Նգուեն Քանը և ոչ էլ ամերիկյան շռայլ օգնությունը ի վիճակի չեղան ճնշելու ազգային-ազատագրական շարժումը երկրում: Ահա թե ինչու ԱՄՆ-ի պաշտպանության մինիստր Ռոբերտ Մակնամարան, պետական քարտուղար Դին Ռասկը Վաշինգտոնի և Սայգոնի միջև հաստատել են յուրահատուկ «մերձքաղաքային հաղորդակցություն», նպատակ ունենալով Վիետնամում վարվող «կեղտոտ» պատերազմը հասցնել հաղթական ավարտի:

Այդ հրեշավոր պլաններն իրականացնելու համար ԱՄՆ-ի կառավարող շրջանները բացահայտ պատերազմ են սկսել երկրագնդի այդ շրջանում: Անզոր գտնվելով հաղթահարելու հայրենասերների հարաճուն դիմադրությունը, Պենտագոնի ռազմամոլներն իրենց Հարավ-վիետնամական մարիոնետի հետ միասին սկսեցին օդահենային հարձակումներ գործել սուվերեն Լաոսի, Կամբոջայի և նույնիսկ Վիետնամի Դեմոկրատական ռեսպուբլիկայի խաղաղ գյուղերի ու քաղաքների վրա: Նման ավանտյուրան առաջ բերեց միջազգային հասարակայնության արդարացի զայրույթը: Սովետական ժողովուրդը, սոցիալիզմի լագերի մյուս աշխատավորները, հավատարիմ իրենց ինտերնացիոնալ պարտքին, միահամուռ պատրաստակամություն հայտնեցին օգնելու վիետնամական ժողովրդի ազատագրական արդարացի պայքարին: ԱՄՆ-ի և նրա՝ ՍԵԱՏՕ-ի գծով դաշնակիցների նման ագրեսիվ գործողությունները կոպիտ կերպով ոտնահարում են Ժնևի որոշումները և միջազգային հասարակական կարծիքը:

Ազգային-ազատագրական շարժումների հաղթանակի, գաղութային սիստեմի բեկորների լիկվիդացման և ստրկացված ժողովուրդների վերջնական ազատագրման ու նրանց քաղաքական և տնտեսական լիակատար անկախության կարևորագույն գործոնը սոցիալիզմի սիստեմի տնտեսական, քաղաքական ու ռազմական հզորությունն է, նրա ինտերնացիոնալ միասնությունը: Վ. Ի. Լենինը դեռևս 1919 թվականին նշել է. «...Արևելքի ժողովուրդների այս ռևոլյուցիոն շարժումը կարող է այժմ հաջող զարգացում ստանալ, կարող է այն լուծում ստանալ ոչ այլ կերպ, քան անմիջականորեն կապվելով մեր Սովետական ռեսպուբլիկայի ռևոլյուցիոն պայքարի հետ՝ ընդդեմ միջազգային իմպերիալիզմի» (Վ. Ի. Լենին, հ. 30, էջ 174):

Ելնելով մարքս-լենինյան ուսմունքից, Սովետական Միության կոմունիստական պարտիան, եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաները ազգային-ազատագրական շարժումը համարում են արդիականության ռևոլյուցիոն կարևոր ուժերից մեկը, որը մեծ ավանդ է ներդնում միջազգային իմպերիալիզմի դեմ, խաղաղության ու սոցիալիզմի համար մղվող պայքարում:

Ինչպես միջազգային բանվոր դասակարգի, այնպես էլ ազգային-ազատագրական շարժման գալիք հաղթանակների երաշխիքը նրանց ամուր դաշինքն ու համագործակցությունն է, իմպերիալիզմի դեմ նրանց համատեղ, ընդհանուր շահերով թելադրվող պայքարը: Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Մարքսի և Էնգելսի «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգը դարձել է համաշխարհային պրոլետարիատի պայքարի մարտական դրոշը: Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Լենինն առանձնապես նշեց սոցիալիստական ռևոլյուցիայի և ազգային-ազատագրական շարժման անխզելի կապը:

Ահա թե ինչու սխալ և հակագիտական է այն տեսակետը, թե իբր միջազգային ռևոլյուցիոն պրոցեսում գլխավոր դերը ներկայումս խաղում են ոչ թե

միջազգային բանվորական ռևոլյուցիոն շարժումը և սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, այլ ազգային-ազատագրական շարժումը։ Նման մնդումն, ըստ էության, անտեսում է սոցիալիզմի հաղթանակի հսկայական նշանակությունը մարդկային հասարակության պատմության համար։ Մի՞թե կարելի է ժխտել այն վիթխարի ազդեցությունը, որ ունեցել է և ունի Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի և Օվկիանիայի ժողովուրդների ազատագրման համար։ Մի՞թե կարելի է մաղաչափ անգամ կասկածի տակ առնել, որ սոցիալիզմի հզոր լագերի ստեղծումը նոր, հզոր թափ հաղորդեց այդ ժողովուրդների պայքարին։

1960 թվականի նոյեմբերին 81 երկրների կոմունիստական և բանվորական պարտիաները միաձայն ընդունեցին, որ համաշխարհային սոցիալիզմի ուժերը վճռականորեն նպաստեցին գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդների ազատագրական պայքարին, որ սոցիալիզմի սիստեմը դարձել է ազատագրված ժողովուրդների ազգային ինքնուրույնության զարգացման հուսալի վահանը։

Արդի ժամանակաշրջանում համաշխարհային զարգացման հիմնական բովանդակությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելն է, իսկ ազգային-ազատագրական շարժումը, չնայած հսկայական ուժ է միջազգային ռևոլյուցիոն շարժման մեջ, լուծում է միայն համադեմոկրատական խնդիրներ։ Ազատագրական շարժումներին մասնակցում են սոցիալական այնպիսի ուժեր, որոնք ունեն դասակարգային տարբեր, երբեմն էլ գաղափարական ու քաղաքական հակադիր շահեր։ Նրանցից ոմանք, նույնիսկ հակում ունեն փործարք կնքելու իմպերիալիզմի և ներքին ռեակցիայի հետ։ Միայն բանվոր դասակարգն է ունակ հակաիմպերիալիստական շարժումը ճիշտ ուղու վրա դնելու և այն հասցնելու իր հաղթական վախճանին։ Եվ միայն բանվոր դասակարգի հեգեմոնիայի պայմաններում, լինի ազգային թե համաշխարհային մասշտաբով, այդ շարժումը, վերջին հաշվով, ձեռք կբերի սոցիալիստական բովանդակություն, կթևակոխի սոցիալիստական ռևոլյուցիայի ուղին։ Ահա թե ինչու մարքսիստական-լենինյան պարտիաները ոչ թե հակադրում են միմյանց ժամանակակից ռևոլյուցիոն ուժերը, այլ ամրապնդում են նրանց միասնությունը, գլխավոր ուժը տեսնելով սոցիալիզմի համաշխարհային սիստեմի և միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման մեջ։

Սովետական Միությունը, ինչպես նաև սոցիալիզմի մյուս երկրները, ազգային-ազատագրական շարժմանը մշտապես ցույց են տալիս տնտեսական, քաղաքական, իսկ անհրաժեշտության դեպքում նաև ռազմական օգնություն, ամեն կերպ խանգարում են լոկալ պատերազմների սանձազերծմանն ու զինված հակառևոլյուցիայի արտահանմանը։ Եգիպտոսին, Ալժիրին, Ինդոնեզիային, Եմենին, Կիպրոսին և մյուս երկրներին ցույց տված օգնությունը մի անգամ ևս ապացուցում է, որ Սովետական Միությունը և սոցիալիզմի ամբողջ լագերը անշահախնդիր կերպով պաշտպանում են ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարը։

Ինչպիսի ստոր միջոցների էլ դիմեն միջազգային ռեակցիոն ուժերը, միևնույն է, պատմական օրինաչափ զարգացումը տանում է դեպի գաղութակալության լիակատար վերացում։ Գաղութակալության վերջնական լիկվիդացման զանգն արդեն ղողանջում է։

# ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՌԱԶՄԱԿԱՆԱՑՈՒՄԸ

Վ. ԳԱԲՈՒԶՅԱՆ

Էկոնոմիկայի ռազմականացման թեման չի կարող քննարկվել պատերազմի հարցերից անկախ։ Ռազմականացումն իրականացվում է պատերազմական՝ հարձակողական կամ պաշտպանողական գործողություններ ծավալելու նպատակով։ Այդպես է եղել սկսած այն ժամանակներից, երբ սկիզբ է առել մարդկային հասարակության սոցիալական շերտավորումը, երբ մարդկանց տարբեր խմբավորումների և, հատկապես, պետությունների շահերի հակադրությունը լուծելու համար դիմել են զենքի։ Այդպես է եղել դեռ ստրկատիրական և ֆեոդալական հասարակարգերում, սակայն ռազմականացումն այդ հասարակարգերի էկոնոմիկայի համար բնորոշ չի եղել։ Ավելին. էկոնոմիկայի ռազմականացումը հատուկ է ոչ թե առհասարակ կապիտալիզմին, այլ նրա մոնոպոլիստական ստադիային՝ իմպերիալիզմին։ Նշանակում է՝ էկոնոմիկայի ռազմականացումը XX դարի կապիտալիզմի առանձնահատկություններից է։ «Միլիտարիզացիան,— գրել է Վ. Ի. Լենինը 1916 թվականին,— այժմ թափանցում է հասարակական ողջ կյանքը» (Երկեր, հ. 23, էջ 121)։

Իմպերիալիստական երկրների էկոնոմիկայի ռազմականացումը պատկերելու համար ստորև կբերվեն համապատասխան թվեր ու փաստեր։ Սակայն մինչ այդ անհրաժեշտ է պարզել, թե ինչու էկոնոմիկայի ռազմականացումը միայն XX դարի կապիտալիզմի առանձնահատկությունն է, եթե նախորդող պատմական ժամանակաշրջանում նույնպես տեղի են ունեցել բազմաթիվ պատերազմներ, որոնք միշտ էլ մղվել են ռազմականացման պայմաններում։

Կապիտալիստական երկրների էկոնոմիկայի ռազմականացման հասկացությունն ընդգրկում է տնտեսական կյանքի բոլոր կողմերը, այն ենթադրում է, որ ռազմականացվում են ամբողջ արդյունաբերությունը, արտադրության մյուս ճյուղերը, դրամա-վարկային սիստեմը, առևտուրը, գիտությունը և այլն։

Հասկանալի է, որ մինչև XX դարը պատերազմական գործողություններ ծավալելու համար, ի թիվս այլ միջոցառումների, նախապատրաստվում էր նաև արդյունաբերությունը՝ շեշտակի աճում էր զենքի և բնաջնջման այլ պարագաների թողարկումը։ Բացի դրանից, ռազմականացվում էին նաև քաղաքացիական արդյունաբերության շատ ճյուղեր, ինչպես, օրինակ, տեքստիլ, կարի, կոշիկի և այլն. ավելի մեծ չափերով ռազմական հանդերձանք էր արտադրվում։ Այնուամենայնիվ, ինչքան էլ խոր ու լայն լինեին ռազմականացման «վարակի» մասշտաբները, միևնույն է, դրանք չէին ընդգրկում արդյունաբերության բոլոր ճյուղերը, չէին ընդգրկում, առավել ևս՝ ամբողջ էկոնոմիկան։

Սակայն, գիտության ու տեխնիկայի առաջընթացի համեմատությամբ ռազմական ավերածությունների բնագավառում մարդկային մտքի դերը մեծանում է հակադարձ համեմատությամբ. պատերազմական գործողություններ ծավալելու համար նախապատրաստական մոլուցքը դարեդար ավելի ու ավելի մեծ թվով ձեռնարկություններ, ճյուղեր ու ոլորտներ է թափանցում։ Եվ հասնում է այն ժամանակը, երբ սկսվում են ռազմականացվել ո՛չ միայն արդյունաբերության առանձին ճյուղեր, ո՛չ միայն ամբողջ արդյունաբերությունը, այլև ամբողջ էկոնոմիկան։ Եվ դա հենց XIX և XX դարերի սահմանագիծն էր, այսինքն՝ մինչմոնոպոլիստական կապիտալիզմից իմպերիալիզմին անցնելու շեմին։ Սա է առաջին հանգամանքը, որը բացատրում է, թե ինչու էկոնոմիկայի ռազմականացումը հատուկ է մոնոպոլիստական կապիտալիզմին։

Երկրորդ, պետք է նկատի ունենալ, որ մինչև XX դարը, հատկապես մինչմոնոպոլիստական կապիտալիզմի դարաշրջանում, թեպետ եղել են ժամանակի համար խոշոր պատերազմներ, որոնց կապակցությամբ և ռազմականացումն ընդունել է լայն մասշտաբներ ու երբեմն ընդգրկել նույնիսկ ամբողջ էկոնոմիկան, սակայն այդ երևույթը կրել է ժամանակավոր բնույթ։ Էկոնոմիկան ռազմականացվել է պատերազմական գործողությունների նախապատրաստման ու հենց պատերազմների ժամանակաշրջանում, որից հետո, որպես կանոն, զգալիորեն նվազել է ռազմական արտադրանքի թողարկումը, խիստ կրճատվել են ռազմական ծախսերը։ Այլ է իմպերիալիզմի դարաշրջանում, երբ սպառազինությունների մրցավազքը շարունակվում է նաև խաղաղ տարիներին։

Նշված երկու պատմական փաստերը բացատրում են, թե ինչու էկոնոմիկայի ռազմականացումը միայն մոնոպոլիստական կապիտալիզմի առանձնահատկությունն է, սակայն դեռ չեն պատասխանում այն հարցին, թե ըստ էության ո՞րն է դրա պատճառը։

Այստեղ չի կարելի անտեսել տեխնիկայի զարգացման գործոնը, այն, որ ի տարբերություն պատմական անցյալ դարաշրջանների, ռազմական ժամանակակից տեխնիկայի արտադրությունը չի կարող իրականացվել առանձին ճյուղերի սահմանափակ շրջանակներում, որ այդ գործում տնտեսության համարյա բոլոր ճյուղերն էլ այս կամ այն չափով մասնակցում են. չի կարելի անտեսել, որ ժամանակակից ռազմական բարդ տեխնիկայի արտադրությունը ներկայացնում է երկարատև ցիկլ, որն իրականացվում է մեծ ժամանակամիջոցում։ Ուստի, ագրեսիվ կամ պաշտպանողական գործողությունների համար պետությունները նախապատրաստվում են տարիներ առաջ, որի հետևանքով և իմպերիալիզմի երկրներում ստեղծվում է մշտական ռազմականացված դրություն։

Այնուամենայնիվ, այս բացատրությունը ևս բավարար չէ։ Դա հարցի տեխնիկական կողմն է։ Անհրաժեշտ է ցույց տալ ռազմականացման, որպես հասարակական երևույթի, դրդապատճառները։ Մեզ հետաքրքրում է ո՛չ միայն և ոչ այնքան այն, թե ինչու իմպերիալիզմի ժամանակ, ի տարբերություն պատմական անցյալ դարաշրջանների, ռազմականացումը, որպես երևույթ, ավելի համընդհանուր է ու մշտական, այլ այն, թե ինչի՞ց է բխում հենց այդ ռազմականացման անհրաժեշտությունը։ Ինչո՞վ բացատրել, որ XX դարում ոչ մի տարի չի անցել առանց երկրագնդի այս կամ այն մասում իմպերիալիստների կողմից կազմակերպված պատերազմական գործողությունների։ Որո՞նք են եղել XX դարում ծավալված մեծ ու փոքր 70 պատերազմների և այդ պա-



տերազմների ընթացքում միլիոնավոր մարդկային զոհերի դրդապատճառները։ Ինչո՞ւ պետք է ժողովուրդները 1900—1953 թվականների ընթացքում ծավալված պատերազմների համար ծախսեին 4000 միլիարդ դոլար, մի գումար, որը մոտ 13 անգամ շատ է, քան երկրագնդի բոլոր երկրների տարեկան միջին ազգային եկամուտը՝ միասին վերցրած։

Այդ ամենի պատճառն, անշուշտ, այն չէ, որ աշխարհը պառակտված է երկու հակադիր լագերների, ինչպես պնդում են բուրժուական քաղաքագետները։ Ճիշտ է, որ արդի ժամանակաշրջանի գլխավոր հակասությունները բխում են սոցիալական երկու հակադիր համաշխարհային սիստեմների առկայությունից։ Սակայն պատերազմների և իմպերիալիստական տերությունների էկոնոմիկայի ռազմականացման դրդապատճառները պետք է որոնել ոչ թե այդ փաստի մեջ, այլ մոնոպոլիստական կապիտալիզմի առանձնահատկություններում։ Չէ՞ որ էկոնոմիկայի համընդհանուր ռազմականացման երևույթը, կապիտալիզմի նեխման այդ արտահայտությունը, ինչպես նշվեց, դրսևորվել է XIX և XX դարերի սահմանագծի վրա, տնտեսության համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումից կես դար առաջ. չէ՞ որ առաջին համաշխարհային պատերազմը, մինչ այդ ծավալվածներից ամենաահավորը, նախապատրաստվեց ու սանձազերծվեց, երբ աշխարհում դեռևս չկար ոչ մի սոցիալիստական պետություն։ Եվ, վերջապես, չէ՞ որ երկրորդ համաշխարհային պատերազմը՝ մինչ այդ ծավալվածներից ամենաաղետաբերը, նախապատրաստվեց ու ծայր առավ ոչ թե կապիտալիստական ու սոցիալիստական, այլ կապիտալիստական տերությունների միջև։

Հայտնի է, որ իմպերիալիզմի ստադիայում կապիտալիստական երկրների տնտեսական ու քաղաքական զարգացումն ընթանում է անհամաչափորեն։ XX դարի արտադրողական ուժերը առանձին երկրների հնարավորություն են տալիս թռիչքաձև զարգանալու և առաջ անցնելու նախկինում անհասանելի համարվող պետություններից։ Դրա հետևանքով, բնականաբար, խախտվում է կապիտալիստական երկրների՝ մինչ այդ ստեղծված ուժերի հարաբերակցությունը։ Մյուս կողմից, իմպերիալիստական երիտասարդ պետությունների համար փակված է «խաղաղ» ընթացքով գաղութներ ձեռք բերելու ուղին, որովհետև ավարտված է աշխարհի տերիտորիալ բաժանումը, կապիտալիստական խորտիկների սեղանի շուրջը ազատ տեղեր չկան։ Իմպերիալիստական էկոնոմիկայի համար կենսական տարածություն ձեռք բերելու համար մնում է ներթափանցել մրցակիցների ազդեցության ոլորտները, որը կարող է իրականացվել միայն պատերազմների միջոցով։

Ահա այս գործոններից են բխել իմպերիալիզմի՝ մինչև կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի սկիզբն ընկած ժամանակաշրջանի պատերազմները, այդ թվում՝ առաջին համաշխարհայինը, որին մասնակցում էին աշխարհի 30 պետություններ՝ 1,5 միլիարդ ընդհանուր բնակչությամբ, և որը մարդկությունից խլեց 10 միլիոն կյանք։ Սա չի նշանակում, թե կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ծավալմամբ դադարեց իմպերիալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափությունը՝ դրանից բխող հետևանքներով հանդերձ։ Ընդհակառակը՝ պատերազմներ ծնող այդ գործոնը շարունակեց գոյություն ունենալ, ընդ որում՝ գնալով ավելի ուժեղացավ։ Սակայն դրան ավելացան նոր գործոններ։ Ռազմականացումն իր սուր ծայրով ուղղվեց հաղթանակած սոցիալիստական ռևոլյուցիայի դեմ։ Իր դարն ապրած կապիտալիզմը սո-

ցիալիստական հասարակարգի ծննդյան առաջին օրից սուրբ նպատակ համարեց ետ շրջել պատմության անիվը։ Դրան ավելացավ իմպերիալիզմի գաղութային սիստեմի ճգնաժամի ծավալումն արգելակելու նյարդային ձգտումը։ Եվ ահա այս բոլոր գործոնները միասին պայմանավորեցին կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի առաջին էտապում իմպերիալիստական երկրների էկոնոմիկայի ռազմականացումը։ Այդ բոլոր գործոններից բխեց երկրորդ համաշխարհային պատերազմը, որին մասնակցում էին աշխարհի 50 պետություններ՝ 1,7 միլիարդ բնակչությամբ, և որը մարդկությունից խլեց ավելի քան 50 միլիոն կյանք։

Պատերազմի ընթացքում և պատերազմից հետո կազմավորվեց ու արագ զարգացավ տնտեսության համաշխարհային սոցիալիստական սիստեմը, սկսեց քայքայվել իմպերիալիզմի գաղութատիրությունը։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երկրորդ էտապում միջազգային իմպերիալիզմն սկսեց պատրաստվել, որպեսզի զենքի ուժով կասեցնի այդ պրոցեսը։ Մյուս կողմից խորանում էին կապիտալիստական վերարտադրության ներքին հակասությունները։ Եվ ահա այս բոլոր գործոնների ազդեցության տակ ավելի ուժեղացավ իմպերիալիզմի էկոնոմիկայի ռազմականացումը։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երրորդ էտապում, երբ տնտեսության համաշխարհային սոցիալիստական սիստեմը դառնում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոն, երբ մոտեցել է գաղութային ամոթալի սիստեմի մահաժամը, երբ ուժեղացել է համաշխարհային կապիտալիզմի անկայունությունը, երբ սրվել է պայքարը աշխատանքի ու կապիտալի միջև, խորացել է բուրժուական դեմոկրատիայի և գաղափարախոսության ճգնաժամը, ավելի մեծ չափերով է ռազմականացվում կապիտալիստական էկոնոմիկան։ Ներկայումս ռազմականացման գլխավոր գործոններից մեկը իմպերիալիզմի՝ համաշխարհային տիրապետության հասնելու ձգտումն է։ Այլապես ինչո՞ւ ԱՄՆ-ը աշխարհի 90 երկրներում գտնվող իր 2200 ռազմական բազաներում և այլ օբյեկտներում պետք է պահեր ավելի քան մեկ միլիոն ամերիկյան զինվորներ։

Չպետք է մոռանալ, որ արդի դարաշրջանում անհնար է ռազմականացնել էկոնոմիկան՝ առանց կապիտալիստական վերարտադրության պրոցեսներին պետության ակտիվ միջամտության։ Ռազմականացման գործում շահագրգռված է մոնոպոլիստական բուրժուազիան, քանի որ սպառազինությունների արտադրությունը մոնոպոլիաներին հսկայական շահույթներ է բերում։ Հենց այդ է պատճառը, որ ռազմական պատվերների ստացման համար սուր պայքար է տեղի ունենում մոնոպոլիաների միջև։ Եվ մոնոպոլիստական բուրժուազիայի շահերն արտահայտող պետությունը օրենսդրական կարգով խթանում է ռազմական արտադրության աճը։ Մոնոպոլիաների և պետության ուժերի միացումն է, որ հնարավորություն է տալիս մեծ մասշտաբներով ռազմական հունը տեղափոխելու բուրժուական երկրների տնտեսությունը։ Ժամանակակից պայմաններում էկոնոմիկայի ռազմականացումն անհնար է առանց պետական-մոնոպոլիստական միջոցառումների։ Իր հերթին էկոնոմիկայի ռազմականացումը անխուսափելիորեն ուժեղացնում է կառավարական բազմաթիվ հիմնարկների միջամտությունը երկրի տնտեսական կյանքին։ «Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը չլսված չափերով ուժեղացնում է միլիտարիզմը» (ՍՄԿՊ ծրագիր, էջ 33)։



Կապիտալիստական երկրներում սպառազինությունների և ռազմական գործի հետ կապված մյուս ծախսերը ֆինանսավորվում են հիմնականում պետության կողմից։ Հետևաբար, տնտեսության ռազմականացման ընդհանրացնող ցուցանիշը պետական բյուջեի մեջ ռազմական ծախսերի գումարներն են, որոնք գնալով աճում են։

Ռազմական բյուջեների արագ աճի հետ փոխվում են ծախսերի տարբեր տեսակների բաժինները։ Այսպես, եթե մինչև համաշխարհային պատերազմների ժամանակաշրջանը ռազմական հատկացումների մեջ մարտական տեխնիկայի միջոցների վրա կատարվող ծախսումների տեսակարար կշիռը տատանվում էր 11—15 տոկոսի սահմաններում, ապա առաջին համաշխարհային պատերազմում բանակների նյութատեխնիկական մատակարարման և անձնակազմի պահպանման ծախսերի հարաբերությունը կազմում էր 1:1, իսկ ներկայումս այդ հարաբերությունը ԱՄՆ-ում հավասար է 3:1-ի, այլ կերպ ասած՝ ռազմական տեխնիկայի վրա ծախսվում է 3 անգամ ավելի շատ, քան անձնակազմի պահպանման վրա։ Սա, իհարկե, չի նշանակում, թե անձնակազմի պահպանման ծախսերը նվազում են նաև բացարձակ թվերով։ Ընդհակառակը, դրանք ևս աճում են։ Բավական է նշել, որ ԱՄՆ-ի զինված ուժերի անձնակազմի վրա կատարվող ծախսերը 1950/51 ֆինանսական տարում կազմել են 7148 միլիոն դոլար, իսկ 1961/62 տարում՝ 12200 միլիոն։ Սակայն այդ ծախսերի բաժինը ԱՄՆ-ի 1950/51 տարվա ռազմական ամբողջ բյուջեի մեջ կազմել է 32 տոկոս, իսկ 1961/62 տարում՝ 25 տոկոս, այսինքն՝ տեսակարար կշռով նվազել է, որովհետև տեխնիկայի վրա կատարվող ծախսերը աճել են ավելի արագ։

Իմպերիալիստական երկրներում սպառազինությունների մրցավազքը առանձնապես ուժեղացավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո և, հատկապես, հյուսիս-ատլանտյան ագրեսիվ կազմակերպության ստեղծումից հետո։ Այդ բլոկի կազմակերպման առաջին տարում՝ 1949 թվականին, մասնակից պետությունների ռազմական ծախսերի ընդհանուր գումարը կազմել է 18,8 միլիարդ դոլար, իսկ 1963 թվականին՝ 75,5 միլիարդ։ Միայն մեկ ամսվա ընթացքում ՆԱՏՕ-ի անդամ պետություններն սպառազինման վրա ծախսում են այնքան գումար, որով կարելի կլիներ ոռոգել Սահարայի անապատը։

ԱՄՆ-ի ուղղակի ռազմական ծախսերը 1949/50 թվականին կազմել են 13 միլիարդ դոլար, իսկ 1963/64-ին՝ հասան 55,5 միլիարդի։ Անգլիայի ռազմական ծախսերը նույն թվականներին կազմել են 753 և 1792 միլիոն ֆունտ ստեռլինգ, համապատասխանաբար, Ֆրանսիայում՝ 4850 և 19877 միլիոն ֆրանկ։ Ռազմականացման նպատակների համար ԱՄՆ-ում ծախսվում է ազգային եկամտի ոչ պակաս քան 11 տոկոսը, Անգլիայում՝ 8, Ֆրանսիայում՝ 7,5 տոկոսը։ Ազգային եկամտի մեջ ռազմական ծախսերի բաժնի ցուցանիշով այդ երկրներին արագ մոտենում է Արևմտյան Գերմանիան։ Բոննի կառավարության ռազմական ծախսերն սկսեցին մեծ թափով աճել հատկապես 1960 թվականից։ Եթե 1960 թվականին այդ ծախսերի գումարը կազմում էր 8,2 միլիարդ մարկ, ապա 1964 թվականին գերազանցեց 22 միլիարդից։ Բունդեսվերի մեկ զինվորի վրա տարեկան ծախսվում է 70 հազար մարկ, իսկ արևմտագերմանական մեկ դպրոցականի վրա՝ ընդամենը 70 մարկ։

Չնայած մի շարք միջազգային համաձայնագրերի, որոնք արգելում են, որ ԳՖՌ-ն ունենա ատոմային զենք և այն նպատակակետին հասցնելու տեխ-

նիկա, արդեն այժմ Արևմտյան Գերմանիան փաստորեն դառնում է ատոմային զենք ունեցող պետություն։ Եթե 1960—1961 թվականներին ԳՖՌ-ում ատոմային արդյունաբերության զարգացման համար ծախսվել է 270 միլիոն մարկ, ապա ներկայումս տարեկան ծախսվում է 3—4 անգամ ավելի շատ։ «1963—1967 թթ. ատոմային ծրագրով» նախատեսված է մոտ 3 միլիարդ մարկ ծախսել «ատոմային էներգիայի հետազոտման և օգտագործման բնագավառի աշխատանքների վրա», որոնք կատարվում են «խաղաղ հետազոտություններ» պիտակով։

Սակայն դա դեռ բոլորը չէ։ ՆԱՏՕ-ի բազմակողմ միջուկային ուժեր ստեղծելը ԳՖՌ-ին հնարավորություն կտա տիրանալու միջուկային զենքին, և այդ գնով ԱՄՆ-ը հույս ունի ապահովելու իր ռազմա-քաղաքական գերիշխանությունը Արևմտյան Եվրոպայում։

Բուրժուական ժամանակակից տնտեսագետները, պատերազմների և ժողովրդական տնտեսության ռազմականացման ջատագովները ձգտում են ապացուցել, որ սպառազինությունների մրցավազքը օգտակար է, բարձր կոնյունկտուրա ապահովելու հուսալի միջոց է, որ ընդլայնելով ռազմական արտադրությունը, կապիտալիստներն իրենց հայրենասիրական պարտքն են կատարում երկրի տնտեսության հանդեպ։ Էկոնոմիկայի ռազմականացումը նրանք ներկայացնում են որպես տնտեսության կարգավորման հիմնական տարրերից մեկը։ Արդի կեյնսականները պնդում են, թե իբր ռազմականացման միջոցով կարելի է լրիվ զբաղվածություն ապահովել, բարձրացնել ժողովրդի կենսամակարդակը, վերացնել տնտեսական ճգնաժամերը։ Այդ տեսակետների թունդ պաշտպաններից է Էլվին Հ. Հանսենը, որի «Ամերիկյան էկոնոմիկան» աշխատությունը դարձել է սպառազինությունների մոլուցքով վարակված տեսաբանների ու գործիչների պաշտամունքի առարկան։

Էկոնոմիկայի ռազմականացումը սպառազինությունների թաքուն գերարտադրության հնարավորություն է ստեղծում, քանի որ ռազմական արտադրանքի գնորդը՝ պետությունը, կարող է դրա նկատմամբ արհեստականորեն բարձր պահել պահանջարկը։

Սպառազինությունների մրցավազքի հետևանքով քաղաքացիական արդյունաբերության ճյուղերից մեծ քանակությամբ արտադրական հզորություններ, հումք և աշխատուժ է հեռացվում։ Սակայն ռազմական արտադրանքի ձևով հանդես եկող նյութական արժեքների հսկայական մասսան չի փոխհատուցում հասարակական արդյունքի որևէ մասը, չի մասնակցում արտադրության նյութական տարրերի հետագա շրջապտույտին, դուրս է հանվում վերարտադրության պրոցեսից։ Չնայած դրան, պետությունն այդ արտադրանքի համար հսկայական գումարներ է վճարում մոնոպոլիաներին։ Դրա հետևանքով խախտվում է փողի անհրաժեշտ քանակի և շրջանառության մեջ փաստորեն գործող գումարի հարաբերակցությունը, ուժեղանում է ինֆլյացիան։

Ինֆլյացիան, իր հերթին, խփում է աշխատավորական մասսաների կենսապայմաններին։ Մյուս կողմից՝ էկոնոմիկայի ռազմականացումն իջեցնում է ժողովրդի կենսամակարդակը՝ աշխատավարձից պահումները մեծացնելու հետևանքով։ Քանի որ ռազմականացման ուղղությամբ գնալով ավելի ու ավելի մեծ գումարներ են ծախսվում, և քանի որ պետական ծախսերը ծածկվում են հիմնականում բյուջեների հարկային եկամուտների հաշվին, հետևաբար աճում են հարկերը, որոնց հիմնական ծանրությունն ընկած է աշ-



խատավորների ուսերին։ Այսպես, Օրինակ, Ֆրանսիայի պետական բյուջեում 1964 թվականին 80,8 միլիարդ ֆրանկ հարկային ընդհանուր եկամուտների մեջ եկամտահարկը կազմել է 17,4 տոկոս, «սպառման հարկը»՝ 64,1, իսկ շահույթների և հարստությունների հարկադրումը՝ ընդամենը 18,5 տոկոս։ Անուղղակի հարկերը, որոնց ճնշող մասը վճարում են բնակչության մեծամասնությունը կազմող աշխատավորները, 1958-ից մինչև 1962 թվականը աճել են 2 անգամ, մինչդեռ կորպորացիաներից գանձվող հարկերը նույն ժամանակամիջոցում աճել են ընդամենը 28 տոկոսով։ ԳՖՌ-ի ֆեդերալ բյուջեի հարկային եկամուտների գումարը 1960 թվականին կազմել է 36,6 միլիարդ մարկ, 1961 թվականին՝ 41,7, 1962 թվականին՝ 45,5, 1964 թվականին՝ 53,4 միլիարդ։ Անգլիայում եկամուտների այդ հոդվածով 1963/64 ֆինանսական տարում գոյացել է 6621 միլիոն, իսկ 1964/65 տարում՝ 7169 միլիոն ֆունտ ստեռլինգ։

Վերը շարադրվածից կարելի է եզրակացնել, որ ռազմականացումը կապիտալիստական էկոնոմիկայի անկայունությունն ուժեղացնող գործոն է։ Հենց դրանով էլ պայմանավորված է այն փաստը, որ տնտեսական զարգացման տեմպերն ավելի ցածր են ավելի ուժեղ ռազմականացված էկոնոմիկա ունեցող երկրներում, ինչպես, օրինակ, ԱՄՆ-ում և Անգլիայում։ ԱՄՆ-ի սենատոր Ջորջ Մակգովերնը իր ելույթներից մեկում առաջարկելով կրճատել պետության ռազմական բյուջեն, նշել է. «Ճապոնիան և արևմտաեվրոպական մեր բոլոր դաշնակիցներն իրենց քաղաքացիական արդյունաբերությունը մոդեռնացնում են զգալիորեն ավելի արագ տեմպերով, քան ԱՄՆ-ը՝ հիմնականում մեր ջանքերը սպառազինությունների արտադրության ուղղությամբ կենտրոնացնելու հետևանքով... Կար ժամանակ, երբ ամերիկյան սարքաշինական արդյունաբերությանը նախանձում էր ամբողջ աշխարհը, իսկ այժմ այն իջել է աշխարհում չորրորդ կամ հինգերորդ տեղը»։

Էկոնոմիկայի ռազմականացման հետևանքով հսկայական չափերով արտադրողական ուժեր են վատնվում, որը կապիտալիզմի նեխման հիմնական արտահայտություններից է։ Սպառազինությունները չեն արտադրվում ո՛չ արտադրողական, ո՛չ էլ անձնական սպառման համար։ Կա՛մ օգտագործվելով պատերազմի ժամանակ, դրանք ոչնչանում են, կա՛մ չօգտագործվելով բարոյապես մաշվում և վերածվում են ջարդոնի։

Էկոնոմիկայի ռազմականացումը հսկայական չափերով կենդանի աշխատանք է կլանում։ Պատերազմը և պատերազմի նախապատրաստությունը միլիոնավոր մարդկանց կտրում են խաղաղ աշխատանքից։ Ըստ պաշտոնական տվյալների, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԱՄՆ-ի ռազմական արտադրության մեջ աշխատողների տարեկան թիվն անցնում է 7 միլիոնից։ Եթե դրան ավելացնենք նաև զինված ուժերում ծառայողներին, ապա այդ թիվը կհասնի 10 միլիոնի։ Այդ մի հսկայական բանակ է, որն իր ուժն ու գիտելիքներն օգտագործում է ոչ թե հանուն հասարակության բարեկեցության, այլ մարդկանց և նյութական արժեքների ոչնչացման։

Սպառազինությունների մրցավազքի հետևանքով ծախսվող միջոցների գումարներն աստղաբաշխական թվերի են հասնում։ Պատկերացում տալու համար նշենք, որ ամերիկյան «Բ—70» մեկ ռմբակոծիչը արժե այնքան, ինչքան պետք է դպրոցական 500 դասարան պահելու համար։ «Պոլարիս» հրթիռով զինված և ատոմային շարժիչ ունեցող սուզանավը նստում է այնքան, ինչքան 23 հիվանդանոցները՝ յուրաքանչյուրը 160 տեղով։ Յուրաքանչյուր «Օդ-Օդ»

(«Ռեսքլ») տիպի որսիչ հրթիռների սիստեմի ստեղծման ծախսերը հավասար են 14300 դոլար արժող 21150 տների շինարարության ծախսերին, իսկ ատոմային շարժիչով ավիակրի արժեքով կարելի է կառուցել 95 դպրոց։

Էկոնոմիկայի ռազմականացումն ու կապիտալիզմի նեխումը ցայտուն են արտահայտվում նաև գիտության բնագավառում։ Գիտության ռազմականացումը խոչընդոտում է քաղաքացիական գիտական հետազոտությունների զարգացմանը, քանի որ ռազմական խնդիրների մշակման գործում ներգրավվում են շատ գիտական կադրեր ու միջոցներ, որոնք կարող էին օգտագործվել խաղաղ նպատակներով։ Անգլիացի ականավոր գիտնական և հասարակական գործիչ Ջոն Դեսմոնդ Բեռնալը իր «Գիտությունը հասարակության պատմության մեջ» գրքում գրել է. «Գիտության նյութական կարիքների մեծացումը աստիճանաբար բացարձակապես գերակշռող է դարձնում գիտության վրա կառավարական հատկացումները, իսկ կապիտալիստական պետությունները դրանք տրամադրում են գերազանցապես պատերազմական նպատակներին։ 1953 թվականին Անգլիայում գիտության վրա կատարված կառավարական ծախսերի 80 տոկոսը գնացել է ռազմական նպատակներով... ԱՄՆ-ում ռազմական նպատակներով կատարվող գիտության զարգացման ծախսերի չափը համապատասխան ցուցանիշում կազմել է 90 տոկոս[1]...

Գիտության կենտրոնացման և ռազմականացման հետևանքները դուրս են գալիս ԱՄՆ-ի ու Անգլիայի հետազոտությունների և արտադրության կենտրոնների սահմաններից... լավագույն գիտնականները, կամ, առնվազն, լավագույններն այն գիտնականներից, որոնք վարակված չեն կոմունիզմով ու այլ հայրենասիրությամբ, գնվում և տեղավորվում են Միացյալ Նահանգների գեղեցիկ կահավորված լաբորատորիաներում... Միացյալ Նահանգների ականավոր գիտնականների գրեթե կեսը փաստորեն օտար ծագում ունի։ Այդ գիտնականները կտրվել են իրենց երկրների առաջ ծառացած պրոբլեմների լուծման աշխատանքներից հենց այն ժամանակ, երբ նրանց ստեղծագործական ազդեցությունը, նրանց աշխատանքը ամենից շատ էր պետք այնտեղ։

Գիտության կենտրոնացումը լաբորատորիաներում, որոնք ձևականորեն համալսարանների հսկողության տակ են գտնվում, իսկ իրականում վերահսկվում են մոնոպոլիաների կամ կառավարության կողմից, և որոնք մշակում են ռազմական արժեք ունեցող նախագծեր, առավել լուրջ վտանգն է գիտության համար»։

Ինչպես վերևում ցույց տրվեց, մոնոպոլիստական կապիտալի գաղափարախոսներն սպառազինությունների մրցավազքը համարում են կապիտալիստական էկոնոմիկան կայունացնող գործոն։ Նրանք տնտեսության ռազմականացումը համարում են նույնիսկ անհրաժեշտություն, այն բխեցնելով պատերազմների անխուսափելիության մասին իրենց ռազմամոլ թեզից։ Ըստ որում, բնորոշ է, որ տնտեսության ռազմականացումն անհրաժեշտ համարող եզրակացությանն են հանգում ամենատարբեր երանգի, տարբեր հարցադրումներով առաջնորդվող բուրժուական քաղաքագետներ։ Օրինակ, նրանց մի մասը պա-

1 Թեև Ջ. Բեռնալի ուսումնասիրությունները վերաբերում են մինչև 1953 թվականն ընկած ժամանակաշրջանին, սակայն ներկայումս նույնպես իմպերիալիստական պետությունների կողմից գիտության զարգացման համար կատարվող հատկացումների 75—90 տոկոսը տրամադրվում է ռազմական նպատակների։ Տարբերությունն այն է, որ այսօր այդ 75—90 տոկոսն արտահայտվում է շատ ավելի մեծ բացարձակ թվերով, քան 1953 թվականին։



տերազմների անխուսափելիությունը բխեցնում է հենց մարդկային էակի խառնվածքից՝ բռնության նկատմամբ մարդու ունեցած ներքին հակումից, քարուքանդ անելու ժառանգական ձգտումից, որն արտահայտվում է, հատկապես, «անկուլտուրական մասսաների» «մահվան բնազդի» ձևով։ Պատմության և գիտության կողմից վաղուց հերքված այս սուբյեկտիվ-իդեալիստական տեսակետը այսօր ծամծմող տեսաբաններից են անգլիացի պատմաբան Առնոլդ Թոյնբին և ամերիկացի Սորոկինը։

Էկոնոմիկայի ռազմականացումն ավելի ուժեղացնելու անհրաժեշտությունը հիմնավորելու համար մի ուրիշ ուղղություն ձգտում է հավատացնել, թե այն օգտակար է միջազգային հարաբերությունների համար, իսկ զինաթափումը, ընդհակառակը, ոչ մի լավ բան չի խոստանում։ Օրինակ՝ ամերիկյան «Ռենդ-կորպորեյշն» ռազմա-հետազոտական ինստիտուտի աշխատակից Ամբոմ Կացը գտնում է, որ աստիճանաբար զինաթափվելու մեթոդները բավականաչափ ուսումնասիրված չեն, մինչդեռ սպառազինությունների մրցավազքը ո՛չ միայն ուսումնասիրված, այլև կյանքում փորձված ու արդարացված է։ Ըստ նրա սպառազինությունների մրցավազքը վերջին տասը տարիների ընթացքում նպաստել է խաղաղության պահպանմանը։ Կացը դեմ է սպառազինությունների կրճատմանը և, հատկապես, օտար երկրներում գոյություն ունեցող ամերիկյան ռազմական բազաների վերացմանը։ Նա նույնիսկ հայտարարում է, թե Սովետական Միության և ԱՄՆ-ի փոխհարաբերությունները կարող են ամենից լավ ապահովվել սպառազինությունների մրցավազքի և պատերազմի սպառնալիքի մեծացման պայմաններում։

Բուրժուական հեղինակների մի ուրիշ խումբ յուրովի, համեմատաբար նվազ քողարկված է մեկնաբանում էկոնոմիկայի ռազմականացման անհրաժեշտությունը։ Օրինակ, ամերիկյան տնտեսագետ Հերման Կանը ընդունում է, որ սպառազինությունների ներկա մրցավազքի պայմաններում խաղաղությունը չի կարող երկար պահպանվել։ Սակայն, այստեղից ամենևին չի եզրակացնում, թե անհրաժեշտ է զինաթափվել։ Ընդհակառակը, նա գերադասում է ուժերի բախումը, ջերմամիջուկային կործանիչ պատերազմը, հայտարարելով, թե դա այնքան էլ վտանգավոր չէ, ինչքան մարդիկ կարծում են։

Ագրեսիվ ուժերի նպատակներն ու գործողությունները տեսականորեն արդարացնող՝ պատերազմների անխուսափելիությունը հիմնավորողները գտնվում են ո՛չ միայն բուրժուական սոցիոլոգների շարքերում։ Կան նաև իմպերիալիզմի դարաշրջանում պատերազմների անխուսափելիության մասին Լենինի թեզը խեղաթյուրողներ, որոնք պնդում են, թե սոցիալիստական պետությունների գործողությունները չպետք է ուղղված լինեն խաղաղ գոյակցության պահպանմանը։

Լենինը, իրոք, պատերազմները համարել է իմպերիալիզմի անխուսափելի ուղեկից։ Եվ այդ դրույթը միանգամայն ճիշտ է եղել այն ժամանակաշրջանի համար, երբ համաշխարհային քաղաքական հարաբերություններում իշխել են իմպերիալիզմի ուժերը, այսինքն՝ մինչև կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երկրորդ էտապի ծավալումը։ Մինչև կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի առաջին էտապը իմպերիալիզմն անբաժան տիրապետում էր, իսկ մինչև կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երկրորդ էտապը գոյություն ուներ կապիտալիստական շրջապատման մեջ գտնվող սոցիալիստական մեկ պետություն։ Այլ կերպ ասած՝ երաշխիք չկար, որ պատերազմի կրակը բորբոքելու իմպե-

րիալիզմի փորձերը կարող էին ձախողվել հենց առաջին կայծն արձակելիս, քանի որ անեղ հակահարվածի սպառնալիք չկար դեռևս։ Բոլորովին այլ է դրությունն այսօր, երբ վերացել է կապիտալիստական շրջապատումը, երբ խաղաղության հիմնական կռվանը՝ սոցիալիզմը, դուրս է եկել մեկ երկրի սահմաններից և կազմակերպվել է որպես տնտեսության համաշխարհային սիստեմ, որի ուժերը գնալով աճում են՝ համաշխարհային պատերազմի ձգտող իմպերիալիզմի լագերի ուժերի համեմատությամբ։

Նոր համաշխարհային պատերազմից խուսափելու, խաղաղության պահպանման օգտին հանդես են գալիս նաև այլ ուժեր։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի առաջին էտապում ծայր առավ իմպերիալիզմի գաղութային սիստեմի ճգնաժամը։ Սկսեցին կախյալ վիճակը թոթափել և քաղաքական ինքնուրույն զարգացման ուղին թևակոխել թվով ավելի ու ավելի շատ երկրներ։ Այդ հասցրեց նոր որակի, և կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երկրորդ էտապում արդեն սկսեց քայքայվել իմպերիալիզմի գաղութային սիստեմը։ Իսկ ազատագրվող երկրների ճնշող մեծամասնությունը հանդես է գալիս պատերազմների դեմ, ընդունում է խաղաղ գոյակցության սկզբունքը, վարում չեզոքության քաղաքականություն։ Այսպիսով, անկախ նրանցում տիրող հասարակական կարգից, անկախ զարգացման կապիտալիստական, թե ոչ-կապիտալիստական ուղու վրա գտնվելուց, այդ երկրները դադարել են տնտեսական, դիվանագիտական և ռազմական հարցերում իմպերիալիստական տերությունների կամակատարները լինելուց և միացել են իմպերիալիզմի լագերի ագրեսիվ քաղաքականությանը դիմադրող ուժերին։

Պետք է ավելացնել, որ հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ուժեղացել են խաղաղության պահպանման համար պայքարող ուժերը՝ հենց իմպերիալիստական երկրներում։ Մարդկության համար կենսական նշանակություն ունեցող այդ ընդհանուր դեմոկրատական շարժումը, որի ամենահետևողական մարտիկները կոմունիստներն են, իր մեջ խմբավորում է ամենատարբեր համոզմունքների և դավանանքի տեր մարդկանց ու հոսանքներ։ Օրինակ, կոմունիստական գաղափարախոսությունից շատ հեռու կանգնած ամերիկյան սոցիոլոգ Իրվինգ Լուիս Հորովիցը 1963 թվականին հրատարակած իր «Ռազմական խաղ» աշխատության մեջ քննադատելով միջազգային հարաբերություններում ամերիկյան հակաժողովրդական կուրսը, գրում է, որ պատերազմի և խաղաղության սուբյեկտիվ-իդեալիստական թեորիաների վրա հենվող ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության հիմնական արատը բխում է ուրիշ ժողովուրդների վզին «ամերիկյան սիստեմը» փաթաթելու փորձերից։

Համաշխարհային էկոնոմիկայի և քաղաքականության մեջ տեղի ունեցած տեղաշարժերի շնորհիվ խաղաղության ուժերն այսօր գերազանցում են պատերազմի հրձիգների ուժերին։ Եվ այդ նոր իրադրության վերլուծման հիման վրա կոմունիստական ու բանվորական պարտիաների 1957 և 1960 թվականների խորհրդակցություններում, ՍՄԿՊ XX և XXII համագումարներում նշվեց, որ ներկա ժամանակաշրջանում թեև դեռևս իսպառ վերացված չէ պատերազմների հնարավորությունը, սակայն դրանք դադարել են անխուսափելիություն լինելուց։ Պատերազմների հնարավորությունը վերացնելու ամենաապահով երաշխիքը ապառազմականացումն է, ընդհանուր և լրիվ զինաթափումը, որի շնորհիվ կվերանան պատերազմներ վարելու միջոցները։



# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Ե. ԱՍԾԱՏՐՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար, ՀԿՊ Կենտկոմի և ՀՍՍՌ
Մինիստրների սովետի պարտիական-պետական վերահսկողության
կոմիտեի նախագահ

Սովետական մարդկանց ստեղծագործական ակտիվության պայմաններում մեր երկրում հաջողությամբ իրագործվում է կոմունիզմի կառուցման հոյակապ պլանը։ Արդյունաբերության, գյուղատնտեսության բնագավառներում և գիտական հիմնարկություններում աշխատող միլիոնավոր մարդիկ պայքարի են ելել՝ յոթնամյակը հաջողությամբ ավարտելու, ավելի լայն հնարավորություն ստեղծելու աշխատավորության բարեկեցության բարձրացման համար։ Այդ մասին է վկայում ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի՝ վերջերս կայացրած որոշումը մի շարք արդյունաբերական ապրանքների գները իջեցնելու մասին։ Կոմունիստական պարտիայի հոգատարությանը սովետական մարդիկ պատասխանում են ժողովրդական տնտեսության պլանների կատարմամբ, իրենց աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ։

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները, պայքարելով յոթնամյակի հաջող կատարման համար, գերակատարեցին ինչպես արդյունաբերության ընդհանուր ծավալի, այնպես էլ իրերի կարևորագույն տեսակների թողարկման 1965 թվականի առաջին եռամսյակի պլանը։ Ռեսպուբլիկայում, ամբողջությամբ վերցրած, 1964 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքն աճել է 12, ժողտնտխորհի արդյունաբերությանը՝ 10 տոկոսով։ Ավելի մեծ աճ են տվել պղնձի, կաուստիկ սոդայի, ուժային տրանսֆորմատորների, խոշոր էլեկտրամեքենաների, բույսերի պահպանության քիմիական միջոցների, սինթետիկ խեժերի և այլ իրերի ու մթերքների արդյունաբերությունը։

Յոթնամյակի տարիներին պետական պլանների կատարման գործում ռեսպուբլիկայի ժողտնտխորհի արդյունաբերությունը հասավ մեծ հաջողությունների։ Զգալի չափով աճեց արտադրության ծավալը, բարելավվեցին արդյունաբերական շատ ձեռնարկությունների քանակական ու որակական ցուցանիշները։

Արագ տեմպերով են զարգանում ժողովրդական տնտեսության այնպիսի պրոգրեսիվ ու կարևորագույն ճյուղեր, ինչպիսիք են՝ քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, էլեկտրատեխնիկան ու ռադիոէլեկտրո-

նիկան։ Յոթնամյակի անցած վեց տարիներին սինթետիկ խեժերի թողարկումն
ավելացավ 8,8, վայրբարսային պղնձինը՝ 4,2, պղնձի կոնցենտրատինը՝ 2,7,
մետաղահատ հաստոցներինը՝ 4, տրանսֆորմատորներինը՝ 1,7, մինչև 100 կվտ
կարողությամբ էլեկտրաշարժիչներինը՝ 2,2 անգամ։ Յուրացվել է էլեկտրոնա-
հաշվիչ մեքենաների, սինթետիկ կորունդի ու մանրաթելի, մելամինի և այլ
տարբեր արտադրատեսակների թողարկումը։ Զգալիորեն ավելացավ նաև ժողո-
վըրդական սպառման ապրանքների արտադրությունը։

Յոթնամյակի տարիներին ռեսպուբլիկաներում թողարկվեց ավելի քան
200 մլն ռուբլու արտապլանային արտադրանք։ Իրագործվեցին մի շարք կա-
րևոր միջոցառումներ արդյունաբերության տեխնիկական պրոգրեսի բնագավա-
ռում։ Տեխնիկայի ու տեխնոլոգիայի նվաճումները լայնորեն են արմատավոր-
վում հատկապես քիմիական արդյունաբերության մեջ։ Այսպես, Ս. Մ. Կիրովի
անվան գործարանում, երկրում առաջին անգամ, աշխատանքներ են տարվում
բնական գազի ջերմաօքսիդիչ պիրոլիզի միջոցով ացետիլենի ստացման նոր
անկարբիդային եղանակը մեծ մասշտաբով յուրացնելու ուղղությամբ։ Այդ
եղանակի արմատավորումը հնարավորություն կտա թողարկելու մեծ քանա-
կությամբ ացետիլեն (որն անհրաժեշտ է սինթետիկ կաուչուկի, պոլիվինիլ-
բուտիրալի և քիմիական այլ արժեքավոր արտադրանքների արտադրության
համար) և ժողովրդական տնտեսության կարիքների համար տնտեսելու մեծ
քանակությամբ էլեկտրաէներգիա։

Հիանալի հաջողությունների հասավ էլեկտրոնա-հաշվիչ մեքենաների
փորձնական գործարանի աշխատողների կոլեկտիվը, որը յուրացրեց «Հրազ-
դան—2» և «Նաիրի» բարդ մաթեմատիկական մեքենաների արտադրությունը։
Մեծ աշխատանք է կատարվել նաև արտադրության մեջ դետալների ուլտրա-
ձայնային մշակման մեթոդի արմատավորման ուղղությամբ։

Վերակառուցվում և ընդարձակվում են գործող արդյունաբերական ձեռ-
նարկությունները, կառուցվում են նորերը։ Յոթնամյակի անցած տարիներին
միայն արդյունաբերական շինարարության մեջ ռեսպուբլիկայում ներդրվեց
մոտ 900 մլն ռուբլի, որը 1,4 անգամ ավելի է սովետական իշխանության ան-
ցած բոլոր տարիների ընթացքում արդյունաբերական շինարարության մեջ
ներդրված միջոցներից։

Կիրովականի արհեստական մանրաթելի գործարանի, Ագարակի պղնձա-
մոլիբդենային կոմբինատի, Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատի չորրորդ
տեխնոլոգիական գծի, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի ծծմբաթթվա-
կան արտադրության, «Պոլիվինիլացետատ» գործարանի ացետիլցելյուլոզի
կոմպլեքսի, Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանի և Կիրո-
վականի Ա. Ֆ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի նոր ցեխերի ու
տեղամասերի, սարքաշինական, մեքենաշինական ու գործիքաշինական մի
շարք գործարանների գործարկումը որակական լուրջ փոփոխություններ առա-
ջացրեց ռեսպուբլիկայի արդյունաբերության կառուցվածքում, բացառիկ կա-
րևոր դեր խաղաց նրա արտադրողական ուժերի հետագա զարգացման գործում։

Սակայն, ինչպես ցույց է տալիս արդյունաբերության ուսումնասիրությու-
նը, ժողտնտխորհը, նրա ճյուղային վարչությունները և շատ ձեռնարկություն-
ներ դեռևս անբավարար են օգտագործում հանրային արտադրության տնտե-
սական արդյունավետության բարձրացման ռեզերվները, տնտեսական աշխա-
տանքը չի գտնվում պատշաճ մակարդակի վրա։



Առանձին տնտեսավարներ, մտահոգված միայն պլանի ընդհանուր ցուցա-
նիշների կատարմամբ, խորամուխ չեն լինում արտադրության էկոնոմիկա-
յում, շռայլություն, երբեմն էլ, պարզապես, անտնտեսավարություն են թույլ
տալիս նյութական ռեսուրսներն ու դրամական միջոցները գործադրելիս։

Ահա մի քանի օրինակ։

Վերջին տարիներս Հայգորգ ֆիրմայի ձեռնարկություններում գործարկ-
վեցին զգալի կարողություններ և ֆիրմայի հիմնական ֆոնդերը մեծացան ա-
վելի քան երկու անգամ։ Բայց այդ ֆիրմայի առաջատար ձեռնարկությունը՝
Իջևանի գորգի կոմբինատը, որը հագեցած է ժամանակակից սարքավորմամբ,
իր արտադրական կարողություններն օգտագործում է ոչ ավելի քան 20 տոկո-
սով, որը բացասաբար է անդրադառնում ֆոնդերի փոխհատուցման վրա։

Լուսավանի գործիքաշինական գործարանը, որն ունի տարեկան 20 հազար
տոննա չուգունե ձուլվածք արտադրելու կարողություն, 1963 թվականին թո-
ղարկեց 2224, իսկ 1964 թվականին՝ 4734 տոննա ձուլվածք, ընդ որում պետք է
նշել, որ դեռևս ցածր է չուգունե ձուլվածքի արտադրության տեխնիկական մա-
կարդակը։

Նոր տեխնոլոգիայի դանդաղ արմատավորման, արտադրության անբավա-
րար կազմակերպման և ժամանակին որակյալ բանվորական կադրերով չապա-
հովելու հետևանքով որոշ մեքենաշինական ձեռնարկություններում արտա-
դրական կարողությունները լրիվ չեն գործարկվում։ Այսպես, 1959 թվականից
հետո շահագործման հանձնված գործարաններում 100 ռ. հիմնական ֆոնդերի
դիմաց համախառն արտադրանքի թողարկումը 1964 թվականին կազմեց
52 ռ. կամ մոտ երեք անգամ ավելի քիչ, քան հին գործարաններում։

Դրությունն ավելի է վատանում նրանով, որ ռեսպուբլիկայի պետպլանն
ու ժողտնտխորհը պատշաճ չափով հոգ չեն տանում ձեռնարկությունների ար-
տադրական կարողությունների բեռնվածությունն ապահովելու և ռիթմիկ աշ-
խատանքի մասին, օպերատիվ և վերջնականապես չեն լուծում նոր գործարկ-
ված ձեռնարկություններն անհրաժեշտ հումքով ու նյութերով ապահովելու,
ինչպես և պատրաստի արտադրանքի վաճառահանման հարցերը։

Անցյալ տարի ռեսպուբլիկայի ժողտնտխորհի մի շարք ձեռնարկություն-
ների կարողությունները լրիվ ծանրաբեռնված չեն եղել և այդ պատճառով ժո-
ղովրդական տնտեսությունը մոտ 300—320 մլն ռուբլով պակաս արտադրանք
ստացավ։ Դրա հետևանքով 1959 թվականի համեմատությամբ ֆոնդերի փոխ-
հատուցման ցուցանիշն իջավ 20 տոկոսով, մինչդեռ յոթնամյակի տարիներին
ժողտնտխորհի հիմնական ֆոնդերը գրեթե կրկնապատկվեցին։

Վերջին տարիներս ռեսպուբլիկայում կենսագործվեցին մի շարք միջոց-
առումներ ձեռնարկությունների մասնագիտացման ու կոոպերացման ուղղու-
թյամբ, ստեղծվեցին մասնագիտացված գործիքաշինական երեք գործարան-
ներ։ Սակայն այդ ձեռնարկությունների կարողությունները լրիվ չեն օգտագործ-
վում, իսկ ստանդարտ ու նորմալացված մետաղահատ գործիքների արտադրու-
թյամբ շարունակում են զբաղվել 22 ձեռնարկություն. այդ շատ ավելի թանկ է
նստում, քան մասնագիտացված գործարաններում։ Ֆ. Է. Ձերժինսկու անվան
հաստոցաշինական գործարանում գործիքի պատրաստումը, օրինակ, տասն
անգամ ավելի թանկ է, քան ռեսպուբլիկայի մասնագիտացված գործիքաշինա-
կան գործարանում։ Հաշվումները ցույց են տալիս, որ ստանդարտ ու մետա-
ղահատ գործիքների արտադրության ոչ ռացիոնալ կազմակերպման պատճա-

ռով անցյալ տարի ժողովրդական տնտեսությունը կես միլիոն ռուբլու վնաս կրեց: Նույնպիսի վիճակում է նաև ձուլվածքի արտադրությունը:

Լուսավանի գործիքաշինական գործարանում ապրանքային չուգունի մեկ տոննա ձուլվածքի ինքնարժեքը 1963 թվականին կազմել է 368 ռուբլի, մեծածախ արժեքի 174 ռուբլու դիմաց, 1964 թվականին՝ 429 ռուբլի, մեծածախ արժեքի 209 ռուբլու դիմաց: Այդ այն ժամանակ, երբ ՍՍՌՄ-ում չուգունի այդպիսի ձուլվածքի մեկ տոննայի ինքնարժեքը կազմել է 151 ռուբլի, Վրացական ՍՍՌ-ում՝ 155, Ադրբեջանական ՍՍՌ-ում՝ 146 ռուբլի:

Ռեսպուբլիկայի ժողտնտխորհի արդյունաբերության ֆինանսա-տնտեսական գործունեության վրա բացասաբար են անդրադառնում պլանավորման, գնագոյացման և նյութատեխնիկական մատակարարման գործում եղած թերությունները, տնտեսական գործունեության մեջ շահույթի դերի թերագնահատումը, ինչպես նաև հանրային արտադրության վերջնական պրոցեսում աշխատողների նյութական խրախուսման չլուծված հարցերը: Անտարակույս, այդ պրոբլեմները կլուծվեն: Դրա համոզիչ վկայությունն են ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումները և ներկայումս պարտիայի ու կառավարության ձեռնարկած միջոցները:

Յոթնամյակի անցած տարիներին արդյունաբերությունը գերակատարել է ինքնարժեքի իջեցման ու կուտակումների առաջադրանքները: Անցյալ տարի շահույթը (ժողտնտխորհի գծով ամբողջովին առած) կազմեց 144,4 մլն ռ., որը 2,3 անգամ ավելի է, քան 1958 թվականինը: 1964 թվականին շահույթը 27 մլն ռ. ստացվեց ձեռնարկությունների շահութաբերության ընդհանուր գումարից բարձրացման շնորհիվ:

Արդյունաբերական շատ ձեռնարկություններում ապրանքային արտադրանքի ինքնարժեքի իջեցումը հիմնականում կատարվում է սոցիալիստական տնտեսավարության ձևերի ու մեթոդների կատարելագործման, տնտհաշվարկի զարգացման, խնայողության ռեժիմի կիրառման շնորհիվ: Բայց արտադրանքի ինքնարժեքն ավելի ցածր կլիներ, ձեռնարկության շահութաբերությունն ավելի բարձր, եթե արդյունաբերական օբյեկտների ղեկավարները ինքնարժեքի իջեցումը պլանավորելիս հաշվի առնեին առկա ռեզերվները, մասնավորապես նոր տեխնիկայի արմատավորման արդյունավետությունը, հումքի ու նյութերի ամենաառաջավոր տեսակների կիրառման, մեքենաների, սարքերի, սարքավորման և այլնի ամենախնայողաբեր ու բարձր արտադրողական տեսակների արտադրության յուրացման հնարավորությունը և դրանք իրականացնեին կյանքում:

Հատկապես վատ է նորմավորվում նյութերի ծախսը, որի հետևանքով շատ ձեռնարկություններում պլանային արտադրանքի վրա ծախսվող հումքի չափը որոշվում է հնացած, բացահայտ բարձր նորմաներով, որի հետևանքով անտնտեսավար են օգտագործվում նյութական ռեսուրսները: Այսպես, պլանավորվել էր մեկ տոննա ացետատային մետաքսի թողարկման համար ծախսել 1047 կգ ացետիլցելյուլոզ, մինչդեռ Կիրովականի արհեստական մանրաթելի գործարանում, նույնիսկ անտնտեսավարության հետևանքով առաջացող մեծ կորուստների առկայության դեպքում, ծախսվում է 1020 կգ: Գործարանի ապրանքային արտադրանքի ինքնարժեքի 1964 թվականի պլանում ացետոնի ծախսի նորման անհիմն կերպով բարձրացվել էր, այլ կերպ ասած՝ հումքի տվյալ տեսակի ծախսումները արհեստականորեն ավելացվել էին 230 հազար



ռուբլով: Երևանի կոմպրեսորների գործարանում մեկ կոմպրեսորի պատրաստման վրա ծախսվում է 100 կգ սև մետաղի գլանվածք, մինչդեռ ինքնարժեքի պլանում նախատեսված է 200 կգ:

Նման փաստեր կան նաև բրդյա նուրբ գործվածքների-մահուդի կոմբինատում, Լենինականի դարբնոցա-մամլիչային սարքավորման, Երևանի կաբելի գործարաններում և մի շարք այլ ձեռնարկություններում:

Ձեռնարկությունների շահութաբերության բարձրացման կարևոր գործոն են հումքն ու նյութերը խնայողաբար ծախսելը, արտադրության մնացուկների խիստ կրճատումն ու դրանց լրիվ օգտագործումը: Բայց արդյունաբերության շատ ճյուղերում այդ ռեզերվները չափազանց անբավարար են օգտագործվում: Այսպես, մեքենաշինության մեջ սև մետաղների օգտագործման գործակիցը չի անցնում 60, բրոնզինը՝ 45 տոկոսից: Ֆ. է. Ձերժինսկու անվան գործարանում խառատա-պտտտակահան հաստոցների պատրաստման պրոցեսում տաշեղի են վերածվում ամբողջ սև գլանվածքի ավելի քան կեսը և գունավոր մետաղների՝ երեք քառորդը: Սակայն այդպիսի վիճակը, ըստ երևույթին, քիչ է անհանգստացնում գործարանի պարտիական կազմակերպությանն ու տնտեսական ղեկավարությանը, ժողտնտխորհի ճյուղային վարչությանը: Այլապես անհասկանալի է, թե ինչու նրանք միջոցներ ձեռք չեն առնում մետաղների մշակման ժամանակակից մեթոդներն արմատավորելու և նման անտնտեսավարությունը կանխելու համար: Օրինակ, 1960 թվականից Հայէլեկտրո գործարանում չի տեղադրված «120» գլանահաստոցը: Նրա գործարկումը հնարավորություն կտար տարեկան խնայելու 2000 տոննա սև մետաղ:

Փայտամշակման, քիմիական, սննդի, գինեգործական, մսի և կաթի արդյունաբերության ձեռնարկությունները չեն օգտագործում արտադրության մնացուկները. բայց չէ՞ որ առանց հատուկ կապիտալ ներդրումների, դրանցից կարելի է կազմակերպել ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ շատ արտադրատեսակների արտադրությունը:

Արտադրության տնտեսական արդյունավետությունն զգալի չափով իջնում է նաև ցածրորակ արտադրանքի թողարկման պատճառով: Անցյալ տարի պետստանդարտության ստուգած արտադրանքից վատ որակի պատճառով խոտանվեցին ու ձեռնարկություններին վերադարձվեցին զգալի քանակությամբ գինի, մակարոնեղեն, պողպա-բանջարային պահածոներ, կահույք, կաշվե կոշիկ, գուլպեղեն, կարի, տրիկոտաժի ապրանքներ ու գործվածքներ: Մեքենաշինական, գործիքաշինական ու էլեկտրատեխնիկական որոշ գործարաններում, ինչպես նաև շինարարական նյութերի արդյունաբերական ձեռնարկություններում ցածր է թողարկվող արտադրանքի որակը: Արտադրության արտապլանային խոտանի ցածրորակ արտադրանքի պատճառով առաջացած կորուստներն ու անարտադրողական ծախսերը 1964 թվականին ռեսպուբլիկայի ժողտնտխորհի գծով կազմեցին 5,4 մլն ռ.:

Անպատասխանատու վերաբերմունք ցույց տալով թողարկվող արտադրանքի որակի նկատմամբ, օգտվելով ժողտնտխորհի ու նրա վարչությունների թույլ պահանջկոտությունից, շատ ձեռնարկություններ թողարկում են բնակչության պահանջարկին չհամապատասխանող արտադրանք:

Հումքը, նյութերը, էներգիան ու աշխատանքը շռայլողները, շրջանառու միջոցները յուրացնողները հազվադեպ են պատասխանատվության ենթարկվում, իսկ ձեռնարկություններին սովորական կարգով ցույց է տրվում անհրա-

ժեշտ ֆինանսական օգնություն, առանց հասցրած նյութական վնասը որոշակի ժամկետում նրանցից գանձելու։

Աշխատանքային ռեսուրսների ճիշտ օգտագործումը արտադրության տընտեսական արդյունավետության բարձրացման հուսալի ռեզերվ է, արդյունաբերության զարգացման տեմպերն արագացնելու վճռական պայման։ Բայց առանձին ձեռնարկություններում աշխատանքի կազմակերպման ու տեխնիկական նորմավորման գործում եղած թերությունները, ինչպես և տեխնիկայի անբավարար օգտագործումը և արտադրության աշխատատար պրոցեսների մեքենայացման ցածր մակարդակը զգալի չափով կասեցնում են աշխատանքի արտադրողականության աճը, առաջացնում աշխատաժամանակի ոչ ռացիոնալ օգտագործում։ Դրա հետևանքով ժողտնտխորհի արդյունաբերությունը, ինչպես հարկն է, չի կատարում աշխատանքի արտադրողականության բարձրացման՝ յոթնամյակի առաջադրանքները, իսկ 1964 թվականին 56 ձեռնարկություն և նույնիսկ արդյունաբերության որոշ ճյուղեր (էլեկտրատեխնիկական, ռադիոէլեկտրոնային, փայտամշակման, մսի-կաթի) չապահովեցին պլանների այդ կարևորագույն ցուցանիշի կատարումը։

Այդպիսի պայմաններում արդյունաբերական արտադրանքն շատ դեպքում աճում է հիմնականում ոչ թե աշխատանքի արտադրողականության բարձրացման, այլ աշխատողների թվի ավելացման միջոցով։

Ցածր է աշխատանքի նորմավորման մակարդակը։ Շատ ձեռնարկություններում տեխնիկապես հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը 15—20 տոկոսից չի անցնում։ Մեքենաշինական, կոշիկի և արդյունաբերական այլ ճյուղերում արտադրանքի գործող նորմաները (որոնք համարվել են տեխնիկապես հիմնավորված), հաշվվել են հնացած նորմաներով, որի հետևանքով, նույնիսկ աշխատաժամանակի մեծ կորուստների դեպքում, դրանք գերակատարվում են երկու և ավելի անգամ։

Ժողտնտխորհում, նրա ճյուղային վարչություններում և շատ ձեռնարկություններում հաշտվել են այն բանի հետ, որ արտադրության հիմնական, ինչպես նաև օժանդակ օպերացիաների մեքենայացված աշխատանքի տոկոսը ցածր է։ Արդյունաբերության մեջ չափազանց դանդաղ են արմատավորվում արտադրության կազմակերպման պրոգրեսիվ ձևերը։ Բավական է ասել, որ մետաղահատ հաստոցների երեք քառորդը և գրեթե բոլոր դարբնոցա-մամլիչային մեքենաները, որոնք օգտագործվում են մեքենաշինական արդյունաբերության մեջ, աշխատում են հոսքային գծերից դուրս, հետևաբար՝ ավելի փոքր արդյունքով։

Արտադրությանը մեծ վնաս են հասցնում պարապուրդները։ Աշխատանքի անբավարար կազմակերպման ու նորմավորման պատճառով ժողտնտխորհի յուրաքանչյուր չորրորդ ձեռնարկություն աշխատանքի արտադրողականության մակարդակով հետ է մնում աշխատողի միջին աշխատավարձի աճից, առաջ բերելով աշխատավարձի ֆոնդի զգալի գերածախս։

«Անհրաժեշտ է ամեն կերպ ուժեղացնել տնտեսական հաշվարկը,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,—հասնել խստիվ տնտեսման ու խնայողության, կրճատել կորուստները, իջեցնել ինքնարժեքը և բարձրացնել արտադրության շահութաբերությունը։ Պետք է շարունակ բարելավել գների սիստեմը, այն համապատասխանեցնելով կոմունիստական շինարարության խնդիրներին, տեխնիկական առաջադիմությանը, արտադրության և սպառման աճին, արտադրական



ծախքերի նվազեցմանը»։ Տնտեսավարական ու պլանավորող օրգանները և ձեռնարկությունների ղեկավարները, մոռացության տալով պարտիայի այս պահանջը՝ պատշաճ նշանակություն չեն տալիս ձեռնարկություններում տնտեսական աշխատանքի բարելավմանն ու տնտեսավարության մակարդակի բարձրացմանը։ Անթույլատրելի է նաև ժողտնտխորհի ու նրա վարչությունների հանդուրժողական վերաբերմունքը ձեռնարկությունների ֆինանսատնտեսական գործունեության լուրջ թերությունների և այնպիսի տնտեսական ղեկավարների նկատմամբ, որոնք չեն ապահովում պետական պլանների ինչպես քանակական, այնպես էլ որակական ցուցանիշների կատարումը։

Տնտեսական կազմակերպությունների ղեկավարները պետք է հաշվի առնեն, որ ձեռնարկությունների ու միավորումների աշխատանքը գնահատվելու է ո՛չ թե նրանով, թե նրանք որքան արտադրանք են թողարկել և ինչպես են կատարել քանակական ցուցանիշները, այլ նրանով, թե ինչպես է իրացվել թողարկված արտադրանքը, որքանով է այն համապատասխանում ժողովրդական տնտեսության ու բնակչության պահանջմունքներին, ինչպես են օգտագործվում հումքը, նյութերը, էներգիան ու աշխատանքը և ինչպես են փոխհատուցվում արտադրության մեջ ներդրված հիմնական ֆոնդերը։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության առջև ծառացած խնդիրները հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է վերացնել արդյունաբերության բնագավառում եղած թերությունները, բարձրացնել ձեռնարկությունների ղեկավարման մակարդակը, օգտագործել արտադրության բոլոր ռեզերվները։ Կարևոր ռեզերվներ են՝ արտադրական կարողությունների առավելագույն օգտագործումը և դրա հիման վրա արդյունաբերական արտադրության աճի տեմպերի բարձրացումը, աշխատանքային ու նյութական ամենափոքր ծախսումներով մեծագույն արդյունք ստանալը, շահութաբեր տնտեսական հաշվարկի զարգացումն ու ամրապնդումը։

Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն է տալիս շահութաբերության (որպես ամբողջ էկոնոմիկայի մեջ ընդլայնված վերարտադրության հիմքի) համար մղվող պայքարին։ Շահույթի մեջ նա տեսնում էր ձեռնարկությունների աշխատանքի արդյունավետության կարևոր չափանիշը։

Անհրաժեշտ է արմատապես բարելավել պլանավորման մեթոդներն ու կազմակերպական ձևերը, կենտրոնացված պլանավորումը ճշտորեն զուգակցել ձեռնարկությունների տնտեսական նախաձեռնության զարգացման ու տնտեսական խթանների ուժեղացման հետ։ Միայն այդ պայմաններում և արտադրական ծրագրի կազմավորման գործում ձեռնարկությունների դերի բարձրացման դեպքում պլանները կդառնան կառավարման հզոր միջոց և կհամապատասխանեն տնտեսական նոր խնդիրներին։

Ձեռնարկությունների, յուրաքանչյուր աշխատողի նյութական շահագըրգռվածության բարձրացման լենինյան սկզբունքը առաջնակարգ նշանակություն ունի սոցիալիստական ու կոմունիստական շինարարության համար։ Մեր երկրում անցկացվող միջոցառումները՝ աշխատավարձի, մրցանակների, խրախուսման ֆոնդերի, շահույթի ու վարկի միջոցով արտադրության զարգացումն ու կատարելագործումը կծառայեն հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը, ժողովրդի բարեկեցության վերելքին, կապահովեն մեր սոցիալիստական սիստեմի առավելությունների լրիվ օգտագործումը։

Հոդվածում շոշափված հարցերը բազմակողմանի և խոր կերպով ուսում-

նասիրվել են արդյունաբերության գործունեությունն ստուգելիս։ Այդ ստուգումը կատարել են ՀԿՊ Կենտկոմի և ՀՍՍՌ Մինիստրների սովետի պարտիականպետական վերահսկողության կոմիտեն՝ մի խումբ գիտական աշխատողների, տնտեսագետների, ինժեներների, պլանային ու ֆինանսական գործերի մասնագետների մասնակցությամբ։

ՀԿՊ Կենտկոմի Նախագահությունը քննարկեց հանրային արտադրության տնտեսական արդյունավետության հարցը և պարտավորեցրեց ռեսպուբլիկայի ժողտնտխորհին ու պետպլանին՝ գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտի և գիտահետազոտական այլ հիմնարկների հետ մեկտեղ մշակել ու կենսագործել անհրաժեշտ միջոցառումներ՝ հիմնական արտադրական կարողությունների ռացիոնալ օգտագործումն ապահովելու, արդյունաբերության տեխնիկա-տնտեսական ցուցանիշները բարելավելու և արդյունաբերության կառավարման բոլոր օղակներում տնտեսական աշխատանքի մակարդակը բարձրացնելու նպատակով։

Առաջարկվեց ռեսպուբլիկայի պետպլանին՝ արմատապես բարելավել արտադրության պլանավորման գործը, ավելի լավ ուսումնասիրել ու հաշվի առնել արտադրության ռեզերվները, այնպես անել, որ արդյունաբերության ճյուղերի ու ձեռնարկությունների արտադրական պլանները բխեն արտադրական կարողություններից, ինչպես նաև ապահովել արդյունաբերության անխափան մատակարարումը հումքով ու նյութերով, ժամանակին լուծել պատրաստի արտադրանքի վաճառահանման հարցերը, վերջ տալ արդյունաբերական ձեռնարկությունների պլանները հաճախակի փոխելու պրակտիկային։

ՀԿՊ Կենտկոմը հանձնարարեց արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններին, պարտիայի շրջանային ու քաղաքային կոմիտեներին՝ կոմունիստների, բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների, տնտեսական ղեկավարների ուշադրությունը բևեռել աշխատանքի արտադրողականության բարձրացման, տեխնիկական նորմավորման բարելավման, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման, նրա որակի բարձրացման, անարտադրողական ծախսերի վերացման, հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործման և յոթնամյակի ավարտական տարվա պլանների կատարման վրա։

Կասկածից վեր է, որ Սովետական Հայաստանի արդյունաբերության աշխատողները հաջողությամբ կկատարեն իրենց առջև դրված խնդիրները և իրենց ավանդը կմուծեն ՍՄԿՊ ծրագրի իրականացման գործում։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԷՆԵՐԳԵՏԻԿԱՅԻ ԱՆՀԵՏԱՁԳԵԼԻ ՀԱՐՑԵՐԸ

Հայաստանում սովետական իշխանության հաստատումից հետո ծավալված շինարարական ստեղծագործ աշխատանքներում առանձնահատուկ տեղ էին գրավում էլեկտրիֆիկացումն ու ոռոգումը։ Հայաստանի կոմունիստական պարտիան, առաջնորդվելով Վ. Ի. Լենինի՝ Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին 1921 թ. ապրիլին հղած հայտնի նամակով, մեծ ուշադրություն էր նվիրում այդ հարցերին։ Ռեսպուբլիկայում անհրաժեշտ էր ո՛չ միայն վերականգնել շարքից դուրս եկած խղճուկ էլեկտրակայանները, այլև ստեղծել էներգետիկ բազա ինչպես ծնունդ առնող արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության համար։ Ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար Հրազդան գետի վրա 1926 թվականին շահագործման հանձնվեց Երևանի հիդրոկայանը, իսկ 1929 թվականին՝ Լենինականի հիդրոկայանը Ախուրյան գետի վրա։ Երևանի երկրորդ հիդրոկայանի հետ մեկտեղ այդ բոլոր կայանների հզորությունը 4 անգամ գերազանցեց 1913 թվականին եղած բոլոր կայանների հզորությունը։

Երևանի հիդրոկայանի դերիվացիայից սկիզբ էին առնում Աբովյան և Շահումյանի իռիգացիոն ջրանցքները, Լենինականի հիդրոկայանը կառուցված էր Շիրակի ջրանցքի, իսկ Երևանի երկրորդ հիդրոկայանը՝ Արտաշատի ջրանցքի վրա։ Երևանի հիդրոկայանի էներգիայի բազայի վրա կառուցվեց Այդրլճի առաջին մեծ ջրհան կայանը։ Հիշյալ էլեկտրակայանների մասշտաբները բացահայտորեն փոքր էին և կարճ ժամանակից հետո նրանք այլևս չէին կարող բավարարել ժողովրդական տնտեսության աճող պահանջները։

1928 թվականին սկսվեց այդ ժամանակների համար առաջին հզոր դերիվացիոն հիդրոկայանի շինարարությունը հյուսիսային Հայաստանում՝ Ձորագետի վրա։ Օգտագործվեց այդ գետի հարմարավետ տեղամասը՝ ընդամենը 2,4 կմ թունել, որն ապահովեց ավելի քան 100 մետր ճնշում։ Առանց գետի հոսքի կարգավորման աշխատող հիդրոկայանների ռեժիմը սերտորեն կապված է տվյալ գետի ամենօրյա հոսքի հետ, իսկ մեր ռեսպուբլիկայի բոլոր գետերի համար բնորոշ են գարնանային վարարումները, որոնց հետևանքով տարեկան հոսքի մոտ 60 տոկոսն ընկնում է 2—3 ամիսներին, իսկ մնացած ինն ամիսներին ընկնում է տարեկան հոսքի միայն 40 տոկոսը։

Հրազդան գետի և Սևանա լճի ջրերի կոմպլեքսային իռիգացիոն-էներգետիկ օգտագործումը Արարատյան հարթավայրի հողամասերի լայն ոռոգման հետ մեկտեղ հնարավորություն տվեց ռեսպուբլիկայի էկոնոմիկայի համար ստեղծելու հուսալի էներգետիկ բազա, որը կարող էր ապահովել նաև բնական հոսքով աշխատող հիդրոկայանների կարգավորումը։ Սևան-Հրազդան կասկադի կայաններից առաջինը կառուցվեց Քանաքեռի հիդրոէլեկտրակայանը։ Կայանը գործարկվեց 1936 թվականին, իսկ արդեն հաջորդ տարում՝ 1937 թվականին,

ռեսպուբլիկայի տերիտորիայում եղած բոլոր կայանները միավորվեցին մեկ միասնական էներգետիկ սիստեմում:

Էժան հիդրոէներգիայի առկայությունը հնարավորություն տվեց արագացնելու արդյունաբերության զարգացումը: Երևան եկան առաջին քիմիական ձեռնարկությունները, զգալիորեն բարելավվեց էներգիայի մատակարարումը գունավոր մետալուրգիային: Հետպատերազմյան տարիներին շարունակվեց էներգետիկ օբյեկտների շինարարությունը, կառուցվեցին Սևան-Հրազդան կասկադի հինգ նոր հիդրոկայաններ:

Էներգետիկայի աճման տեմպերը մշտապես պետք է գերազանցեն արդյունաբերության զարգացման տեմպերին: ՍՄԿՊ XXII համագումարում ընդունված ծրագրում կրկին ընդգծվում է էլեկտրաէներգիայի արտադրության գերազանցող տեմպերն ապահովելու անհրաժեշտությունը: Այդ են պահանջում ժողովրդական տնտեսության զարգացման, տեխնիկական առաջադիմության, առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման խնդիրները: Յոթնամյակի վերջին երկու տարվա համար նախատեսված էր արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացնել 17,5, իսկ էլեկտրաէներգիայինը՝ 23 տոկոսով: 1963 թվականի արդյունքները ցույց են տալիս, թե որքան արագ են գործարկվել նոր մեծ հզորություններ: Ամբողջ Սովետական Միության մեջ գործարկվել են ավելի քան 10 միլիոն կիլովատ նոր հզորություններ: 1964 և 1965 թվականների ընթացքում կգործարկվեն 21 միլիոն կիլովատ նոր հզորություններ: Սակայն այստեղ պետք է ասել, որ ռեսպուբլիկայի ժողտնտխորհը, ինչպես նաև պլանավորող օրգանները ժամանակին ուշադրություն չդարձրին այնպիսի բացահայտ աննորմալ վիճակի վրա, ինչպիսին է էներգետիկայի ասպարեզում կապիտալ ներդրումների նվազ աճը՝ արդյունաբերական շինարարության ընդհանուր կապիտալ ներդրումների աճի համեմատությամբ:

Եթե ընդունենք, որ ամբողջ ռեսպուբլիկայում 1953 թվականից մինչև 1956 թվականն ընկած ժամանակամիջոցում էներգետիկայի կապիտալ ներդրումները եղել են 100 տոկոս, ապա հաջորդ չորս տարիների ընթացքում՝ 1957 թվականից մինչև 1960 թվականը (երբ ժողովրդական տնտեսության ընդհանուր ներդրումներն աճել են 2,5 անգամ) այդ ներդրումները ոչ թե աճել, այլ իջել են՝ հասնելով 81 տոկոսի:

Էներգետիկայի կապիտալ ներդրումները ո՛չ միայն հարաբերական, այլև բացարձակ առումով նվազեցին նաև 1961 թվականին: Դա առավել ևս անհանդուրժելի էր, քանի որ այդ օրգաններին քաջ հայտնի էր, որ 1965 թվականին նախատեսվում է նոր ռեժիմ մտցնել Սևան-Հրազդան կասկադում, 1,2 միլիարդ խորանարդ մետրի փոխարեն լճից բաց է թողնվելու միայն 0,5 միլիարդ խորանարդ մետր: Դրա հետևանքով կասկադի արտադրած 2,5 միլիարդ կիլովատ ժամը կիջնի մինչև 0,9 միլիարդ կիլովատ ժամի: Այդ դեպքում Սևան-Հրազդան կասկադը էժան էներգիայի առատ աղբյուր կհանդիսանա միայն ամառվա ոռոգացիոն ամիսների ընթացքում, իսկ ձմեռվա ամիսներին խիստ կիջնի նրա արտադրած էլեկտրաէներգիայի քանակը:

Այդպիսի մոտալուտ հեռանկարներն անհրաժեշտ է դարձնում Որոտան գետի կասկադի և ջերմային էլեկտրակայանների շինարարության արագացումը: Սակայն ռեսպուբլիկայի ժողտնտխորհը և պլանավորող օրգանները ժամանակին չեն ապահովել էներգետիկան այնպիսի կապիտալ ներդրումներով, որոնք հնարավորություն տան Սևան-Հրազդան կասկադի արտադրության նվազման պայմաններում լիովին բավարարելու ժողովրդական տնտեսության աճող պահանջները:

Էլեկտրաէներգիայի սպառումը ռեսպուբլիկայում տարեկան աճում է միջին հաշվով 10—12 տոկոսով: Սակայն այդ ավելի քան երկու անգամ գերազանցում է 50-ական թվականների սկզբների էլեկտրաէներգիայի սպառման աճի չափը: Ուստի և անհրաժեշտ է մեծ զարկ տալ նոր հզորությունների կառուցմանը:

ՍՄԿՊ XXI համագումարում հաստատված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի համաձայն 1960 թվականին ավարտ-



վեց Անդրկովկասի երեք եղբայրական ռեսպուբլիկաների՝ Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի էլեկտրահաղորդման միջսիստեմային գծերի կառուցումը: Այդ ռեսպուբլիկաների էներգետիկ սիստեմները կազմեցին մեկ ընդհանուր փունջ, ստեղծվեց միացյալ դիսպետչերական ծառայություն: Էներգասիստեմների միավորման շնորհիվ նվազում են նորոգման և անհրաժեշտ այլ աշխատանքների համար պահանջվող ռեզերվները, ավելի ռացիոնալ են օգտագործվում հիդրոկայանների հնարավորությունները և այլն: Հայաստանի էներգետիկայի սիստեմն այդ միավորման շնորհիվ կարողացավ նաև լրացնել իր էներգետիկ բալանսի պահանջի պակասը:

Էներգետիկ շինարարության տեմպերի թուլանալու հետևանքով 1960 թվականից սկսած հայկական էներգասիստեմը տարեցտարի ավելի ու ավելի մեծ քանակությամբ էներգիա է ստանում ադրբեջանական էներգասիստեմից: Փոխանցվող էլեկտրաէներգիայի մեծությունը բնորոշվում է ռեսպուբլիկայի սպառման մեջ նրա կազմած հետևյալ տոկոսներով. եթե 1960 թվականին փոխանցվող էլեկտրաէներգիան կազմել է սպառման միայն 5 տոկոսը, ապա 1961 թվականին այն կազմեց 10,94, 1962 թվականին՝ 20,7, 1963 թվականին՝ 25,3, 1964 թվականին՝ 30,6 տոկոս, իսկ 1965 թվականի համար նախատեսված է 45 տոկոս:

Գետերի գարնանային վարարման և ամառային ոռոգացիոն ամիսների ընթացքում հիդրոկայաններն ավելի շատ էլեկտրաէներգիա են արտադրում: Իսկ այդ եռամսյակների ընթացքում էլեկտրաէներգիայի պահանջը, համեմատած առաջին և չորրորդ եռամսյակների հետ, նվազում է: Ուստի պարզ է, որ փոխանցվող հոսանքը համաչափ չի լինի առանձին եռամսյակների կամ ամիսների ընթացքում: Այսպես, 1964 թվականի չորրորդ եռամսյակում փոխանցվող հոսանքը էլեկտրաէներգիայի բալանսի մեջ կազմեց 47 տոկոս:

Էներգասիստեմների մեջ հոսանքի փոխանցումը կատարվում է էլեկտրահաղորդման միաշղթա գծով, որն անցնում է լեռնային շատ դժվարին ուղիներով, և ձմռան պայմաններում համարյա անհասանելի. դրա պատճառով նվազում է էներգամատակարարման հուսալիությունը: 1964 թվականի օգոստոսին միջսիստեմային էլեկտրահաղորդման գծերը 220 կիլովոլտ լարվածությունից փոխադրվեցին 330 կիլովոլտ լարվածության: Աղստաֆա-Աթարբեկյան էլեկտրահաղորդման գիծը կառուցվել է 400 կիլովոլտ լարվածությամբ, իսկ ինչ վերաբերում է Աղստաֆա—Մինգեչաուր և Աղստաֆա—Թբիլիսի հիդրոէլեկտրահաղորդման գծերին, ապա դրանք կառուցվել էին 220 կիլովոլտ լարվածությամբ, իսկ 1964 թվականին վերակառուցվել և փոխադրվել են 330 կիլովոլտ լարվածության:

Թեպետ այդ լարվածության փոխադրումը բարձրացրեց հզորությունների փոխանցումների հնարավորությունները, այնուամենայնիվ հաճախ ընդհատվում են էլեկտրահաղորդումները, հատկապես Աղստաֆա—Մինգեչաուր գծի վրա: Էլեկտրաէներգիայի արտադրության սիստեմի և փոխանցվող հոսանքի սիստեմի նման հարաբերակցությունը մի շարք լուրջ դժվարություններ է հարուցում կայանների ռեժիմներում: Հոսանքի փոխանցման պլանը կատարելու համար էներգասիստեմը հարկադրված է լինում գիշերային ժամերին աշխատել առավելագույն բեռնվածությամբ:

Չափազանց լարված է ռեսպուբլիկայի էներգետիկ բալանսը նաև այս տարի: Այսպես, բոլոր հիդրոկայաններն արտադրելու են 1110 միլիոն, ջերմային էլեկտրակայանները՝ 1390 միլիոն կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, Ադրբեջանական ՍՍՌ-ից կփոխանցվի 1950 միլիոն, Վրացական ՍՍՌ-ից՝ 90 միլիոն կիլովատ ժամ էլեկտրաէներգիա: Առաջին եռամսյակին փոխանցված էլեկտրաէներգիան կազմում էր էլեկտրաէներգիայի ընդհանուր սպառման կեսից ավելին: Անհանդուրժելի է փոխանցվող հոսանքի այդքան մեծ տեսակարար կշիռը ամբողջ էներգասիստեմում:

Սպառողների էներգամատակարարման նորմալ պայմաններն ապահովելու համար յուրաքանչյուր տնտեսական շրջան պետք է ունենա իր էներգետիկ բազան, որը տեղադրված լինի սպառման կենտրոնին մոտիկ և ապահովի մա-

տակարարման բարձր հուսալիությունը։ Սիստեմների միջև հոսանքի փոխանցումը պետք է կազմի էներգասիստեմի ընդհանուր սպառման 5—10 տոկոսը։

Փոխանցվող հոսանքը կարող է դրանից ավելի մեծ լինել այն դեպքում, երբ տվյալ տնտեսական շրջանների սահմաններից դուրս կան խիստ ձեռնտու հիդրոէներգետիկ հզոր ռեսուրսներ։ Իսկ եթե փոխանցումն իրականացնող կայանը գազ կամ մազութ է գործածում, ապա շատ ավելի ձեռնտու և հուսալի է վառելիքը գործադրել սպառման հիմնական կենտրոններին մոտ տեղադրված էներգասիստեմում։ Ահա այդպիսի եզրակացության են հանգել Հիդրոէներգոնախագիծ համամիութենական նախագծային ինստիտուտի աշխատողները՝ 1961 թվականին Անդրկովկասի վառելիքային-էներգետիկ բալանսը կազմելիս։ Նրանց աշխատության մեջ ասված է. «Անդրկովկասի առանձին շրջաններում կոնդենսացիոն էլեկտրակայանների համար վառելանյութի տեսակն (մազութ կամ գազ) ընտրելու գործում վճռական նշանակություն ունեն վառելանյութի և էներգիայի փոխադրման ցուցանիշները»։ Նպատակահարմար է էլեկտրակայանները տեղադրել էլեկտրաէներգիայի սպառման կենտրոններում և, մասնավորապես, Հայաստանում, Վրաստանում և Արևմտյան Ադրբեջանում։

1961 թվականին նույն այդ նախագծային ինստիտուտը կազմեց Անդրկովկասի և Հյուսիսային Կովկասի էներգասիստեմները միավորելու և դրանք ՍՍՌՄ եվրոպական մասի միացյալ էներգետիկ սիստեմին միացնելու սխեման։ Այդ աշխատության մեջ մանրամասն քննարկված է նաև փոխանցվող հոսանքների հարցը։ Ինստիտուտը եկել էր այն հետևության, որ փոփոխական հոսանքի միջշրջանային փոխանցումները ՍՍՌՄ եվրոպական մասի պայմաններում արդյունավետ չեն կարող լինել։ Այսպիսով, միանգամայն ակնհայտ է, որ նպատակահարմար չէ ջերմային էլեկտրակայաններ ունեցող շրջաններին գազի կամ մազութի փոխարեն մասսայական կերպով էլեկտրաէներգիա փոխանցելը։

Կոնդենսացիոն կայանները սպառման կենտրոններում տեղադրելու նպատակահարմարության վերաբերյալ նույնպիսի հետևության հանգեց նաև ՍՍՌՄ Պետպլանի արտադրողական ուժերի ուսումնասիրության խորհուրդը, որը 1963 թվականին լույս ընծայեց Անդրկովկասի տնտեսական շրջանի էներգետիկայի զարգացման ու տեղադրման հիմնական ուղղությունների մշակումը աշխատությունը։ Այդ աշխատության մեջ ընդգծված էր, որ 500 կիլովոլտ և ավելի ցածր լարվածություն ունեցող հաղորդման գծերը չեն կարող մրցակցել մեծ կալորիականություն ունեցող վառելանյութի՝ նավթի և գազի փոխադրման հետ։

Էլեկտրահաղորդման միջսիստեմային գծերի առկայությունը, առաջին հերթին, պետք է ծառայի սպասարկվող բոլոր սիստեմների էլեկտրամատակարարման հուսալիության բարձրացմանը։ Ընդսմին էներգիայի փոխանցումները պետք է լինեն տարբեր ուղղություններով՝ նայած պայմաններին, և ոչ թե մեկ ուղղությամբ, ինչպես այդ լինում է շառավղաձև ֆիդերներում։

Մեր ռեսպուբլիկայի էներգետիկ բալանսի այդքան լարված լինելու համար ռեսպուբլիկայի ժողտնտխորհի հետ մեկտեղ որոշ մեղք ունեն նաև պլանավորող օրգանները։ Մեր այսօրվա էներգետիկ բալանսը մանրամասն վերլուծելիս, անպայման անհրաժեշտ է նկատի ունենալ էներգետիկայի 1966—1970 թվականների զարգացման հեռանկարները։ Այդ նկատառումները պետք է լինեն միանգամայն օբյեկտիվ և սպառիչ, որպեսզի հաջորդ հնգամյակում չկրկնվի նույն դրությունը։

Իսկ որո՞նք են Հայկական ՍՍՌ էներգետիկայի զարգացման հեռանկարները հաջորդ հնգամյակում։ Վերջին տարիների ընթացքում մեր նախագծային մի շարք ինստիտուտներ, սկզբում Հիդրոէներգանախագիծ ինստիտուտը, ապա՝ Էներգացանցնախագիծ ինստիտուտի բաժանմունքը զգալի աշխատանք կատարեցին էներգիայի՝ հատկապես 1966—1970 թվականների սպառման մակարդակը ճշտելու համար։

Շատ բան արվեց նաև ռեսպուբլիկայի պլանավորող օրգաններում։ 1964 թվականի ապրիլին ՍՍՌՄ էներգետիկայի և էլեկտրիֆիկացման պետական արտադրական կոմիտեի կոլեգիան ընդունեց Հայկական ՍՍՌ-ի էներգետիկայի զարգացման հիմնական ուղղությունների նախագիծը հաջորդ հնգամյակի հա-



մար, հետևյալ չափերով. 1966 թվականին՝ 5,3, 1967 թվականին՝ 5,9, 1968 թվականին՝ 6,7, 1969 թվականին՝ 1,7, 1970 թվականին՝ 9 միլիարդ կիլովատ ժամ։

Իսկ ինչպիսի՞ ռեսուրսներ ունի Հայաստանի էներգետիկ սիստեմը այդ խնդիրները կատարելու համար, եթե նկատի ունենանք, որ լրիվ ավարտվելու է Երևանի, Կիրովականի ու Հրազդանի ջերմաէլեկտրակայանների, Տաթևի հիդրոկայանի և էներգետիկ այլ օբյեկտների շինարարությունը։

Որոտան գետի վրա, ինչպես հայտնի է, Տաթևի հիդրոկայանից բացի, նախագծվում է կառուցել նաև Շամբի ու Սպանդարյանի հիդրոկայանները։ Դեռևս անցյալ տարի Հայհիդրոէներգաշինը առաջարկեց արագացնել նախագծային առաջադրանքի կատարումը, որպեսզի Շամբի հիդրոկայանի կառուցման նախապատրաստական աշխատանքներն սկսվեն 1965 թվականից։

Սակայն մեզ մոտ, դժբախտաբար, ոչ միշտ են ճիշտ պլանավորվում նախագծային աշխատանքները։ Այդ իսկ պատճառով տվյալ նախագծային առաջադրանքը ժամանակին չի կարող ավարտվել։ Շամբի հիդրոկայանի կառուցումը, որն ունենալու է 160 հազար կիլովատ կարողություն, կսկսվի 1966 ու կավարտվի 1969 թվականին և էներգիա կտա միայն 1970 թվականին։ Շամբի հիդրոկայանից հետո կսկսվի Սպանդարյանի հիդրոկայանի կառուցումը 88 հազար կիլովատ կարողությամբ։ Վերջինս էներգիա կտա 1971 թվականից։

1965 թվականից Սևան—Հրազդան կասկադն ունենալու է աշխատանքի նոր ռեժիմ։ Այդ կապակցությամբ հայկական էներգետիկ սիստեմում խիստ մեծ նշանակություն կստանա Որոտան գետի հիդրոկայանների կասկադը, չնայած որ այն տարեկան արտադրելու է միայն 1,1 միլիարդ կիլովատ-ժամ։ Տաթևի հիդրոկայանի և նրա կազմի մեջ մտնող Թոլորսի ջրամբարի շահագործումը ավելի քան 600 միլիոն կիլովատ ժամով կավելացնի ռեսպուբլիկայի էներգետիկ բալանսը, իսկ այդ կհեշտացնի ամբողջ էներգետիկ սիստեմի կարգավորումը։

Այս ամենից հետևում է, որ Որոտան գետի հիդրոկայանների կասկադի կառուցումը պետք է արագացնել, այնպես անել, որ կասկադի վերջին աստիճանը՝ Սպանդարյանի հիդրոկայանն ավարտվի հնգամյակի վերջերին։

1964 թվականի նոյեմբերին Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետը հաստատեց ռեսպուբլիկայի էներգետիկայի համար գործնական նշանակություն ունեցող վերջին ջրային ռեսուրսի՝ Դեբեդի օգտագործման սխեման։ Ըստ այդ սխեմայի, առաջին հերթին պետք է կառուցվեն Արմանիսի, Լոռիբերդի և Շնողի հիդրոկայանները։ Գետի հոսանքը կարգավորելու համար կկառուցվեն երկու ջրամբարներ՝ Արմանիսինը 90 միլիոն և Լոռիբերդինը՝ 50 միլիոն խորանարդ մետր ծավալով։ 850 հազար խորանարդ մետրի կհասնի Շնողի հիդրոկայանի կարգավորման ջրավազանը, որը երեք անգամ մեծ է Գյումուշի հիդրոկայանի ջրավազանից։

Դեբեդի կասկադը իր էներգետիկ և տնտեսական ցուցանիշներով, անշուշտ, զիջում է Որոտանի կասկադին, բայց միայն այդ պատճառով չպետք է ձգձգել նրա շինարարությունը։ Հենց որ հաստատվի նախագծային առաջադրանքը, պետք է անհապաղ ձեռնամուխ լինել Դեբեդի հիդրոկայանների կառուցմանը։ Հայհիդրոնախագիծն ընթացիկ տարում կավարտի առաջնահերթ կայանների նախագծային առաջադրանքը, որպեսզի 1966 թվականից սկսվի դրանց կառուցումը։ Դեբեդի կայանների շինարարության համար կան կլիմայական, տրանսպորտային և շատ այլ ավելի հարմարավետ պայմաններ, քան Հայհիդրոէներգաշինի մյուս օբյեկտներում։

Այս տարի Երևանի ջերմաէլեկտրակայանում շահագործման կհանձնվի № 6 բլոկը՝ 150 հազար և № 5 ագրեգատը՝ 50 հազար կիլովատ կարողությամբ։ Բացի դրանից, նախատեսվում է Կիրովականի ջերմաէլեկտրակայանում գործարկել 25 հազար կիլովատ կարողություն ունեցող № 3 ագրեգատը։ 1966 թվականին կգործարկվի Երևանի ջերմաէլեկտրակայանի № 7 բլոկը՝ 150 հազար կիլովատ կարողությամբ և 50 հազար կիլովատանոց երկու ագրեգատներ՝

Հրազդանի ջերմաէլեկտրակայանում՝ մեկը 1966, իսկ երկրորդը՝ 1967 թվականին։

Եթե հաշվի առնենք ջերմային էլեկտրակայանների այդ կարողությունների գործարկումը, ինչպես նաև Տաթևի ու Շամբի հիդրոկայանների կարողությունը և Սևանա լճի ջրերի հետագա ռեժիմը, ապա մեր ռեսպուբլիկայում էլեկտրական էներգիայի սպառումը կունենա հետևյալ պատկերը.

(միլիոն կիլովատ ժամ)

| | 1966 թ. | 1967 թ. | 1968 թ. | 1969 թ. | 1970 թ. |
|---|---|---|---|---|---|
| էլեկտրաէներգիայի սպառումը | 5300 | 5900 | 6700 | 7780 | 9000 |
| Հիդրոկայանների արտադրած էներգիան | 1047 | 1090 | 1000 | 1650 | 1780 |
| Ջերմաէլեկտրակայանների արտադրած էներգիան | 2450 | 3600 | 3700 | 3700 | 3700 |
| էներգասիստեմի դեֆիցիտը | 1803 | 1210 | 2000 | 2430 | 3520 |

Եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ Ադրբեջանական ՍՍՌ-ի էներգետիկ սիստեմի հնարավորությունները սահմանափակ են և առաջիկայում պետք է հիմնականում բավարարեն սեփական կարիքները, ապա մերձակա տարիներին դժվար է էլեկտրական էներգիայի փոխանցումների ավելացում սպասել (ակնկալել, թե 1968 թվականին փոխանցվող էներգիան կկազմի 2000 միլիոն կիլովատ-ժամ)։ Այդ դեֆիցիտը հնարավորության սահմաններում լրացնելու համար պետք է արագացնել հիդրոէլեկտրակայանների և ջերմաէլեկտրակայանների կառուցումը։

Տաթևի հիդրոկայանի և Երևանի ջերմաէլեկտրակայանի 150 հազար կիլովատ կարողությամբ բլոկի յուրացումը հնարավորություն կտա պակասեցնելու դեֆիցիտը 1966 և 1967 թվականներին։ 1968 թվականին էներգիայի կարողության դեֆիցիտը նվազեցնելու համար հարկ կլինի արագացնել պետական նոր խոշոր շրջանային էլեկտրակայանի կառուցումը։

Պլանավորող օրգաններին չի անհանգստացնում այն հանգամանքը, որ Հայկական էներգասիստեմում փոխանցվող էլեկտրական հոսանքը 1965 թվականին արդեն հասնում է 2040 միլիոն կիլովատ ժամի։

Հայկական ՍՍՌ էներգետիկայի գծով կան նախագծային կազմակերպությունների բազմաթիվ աշխատանքներ, որոնք քննության են առնված ՍՍՌՄ պետպլանի էքսպերտ հանձնաժողովի կողմից և նրա հավանությանն են արժանացել. գոյություն ունի ՍՍՌՄ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի պետական արտադրական կոմիտեի որոշումը, որով հիմնավորված է նոր, հզոր ջերմաէլեկտրակայանի կառուցման անհրաժեշտությունը, բայց, չգիտես ինչու, գործն ընթանում է շատ դանդաղ և մեծ քաշքշուկներով։

Ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացման ասպարեզում չկա հզոր ջերմային էլեկտրակայանի կառուցումից ավելի հրատապ խնդիր։ Այդ կայանի առաջին ագրեգատները պետք է գործարկվեն 1967 թվականին կամ ծայրահեղ դեպքում՝ 1968 թվականի սկզբներին։ Այսօրվանից իսկ անհրաժեշտ է արտակարգ միջոցներ ձեռք առնել այդ կարևոր խնդիրը կատարելու համար։

Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի գլխավոր վարչության պետ

---

## ՀԱՍՏՈՑԱՇԻՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ ՈՒ ՏԵՂԱԲԱՇԽՈՒՄԸ ԱՆԴՐԿՈՎԿԱՍՈՒՄ

Հաստոցաշինական արդյունաբերությունն անդրկովկասյան տնտեսական շրջանի մեքենաշինության երիտասարդ և արագ զարգացող ճյուղերից մեկն է։ Նրա զարգացման արագ տեմպերի շնորհիվ վերջին ժամանակաշրջանում և, հատկապես, վերջին տասնամյակում զգալիորեն մեծացավ շրջանի տեսակարար կշիռը և աչքի ընկնող տեղ գրավեց համամիութենական արտադրության մեջ (7,2 տոկոս)։ 1963 թվականին Անդրկովկասյան տնտեսական շրջանը թողարկել է 13229 հատ մետաղահատ հաստոց, այսինքն՝ մոտ ինն անգամ ավելի, քան ամբողջ ցարական Ռուսաստանը՝ 1913 թվականին։

Աշխատանքի համամիութենական բաժանման մեջ Անդրկովկասյան շրջանի տեսակարար կշռի ավելացմանը նախորդել են հաստոցների արտադրության աճի բարձր տեմպերը՝ շրջանում և նրա ռեսպուբլիկաներում։ Այսպես, եթե Միության մեջ մետաղահատ հաստոցների արտադրության տարեկան աճը 1958—1962 թթ. ընթացքում կազմել է 6 տոկոս, ապա Անդրկովկասյան շրջանում այն եղել է 25, Հայկական ՍՍՌ-ում՝ 33, Վրացական ՍՍՌ-ում՝ 9 տոկոս։

Անդրկովկասյան տնտեսական շրջանի հաստոցաշինական արդյունաբերության սիստեմում գործում են 17 գործարան, որոնցից 11-ը՝ Հայկական, 6-ը՝ Վրացական ՍՍՌ-ում. դրանք մասնագիտացվել են մետաղահատ հաստոցների, դարբնոցա-մամլային ու ձուլվածքային սարքավորման, հաստոցների կոմպլեկտավորող դետալների, հաստոցային ձուլվածքի արտադրության ուղղությամբ։ Արտադրության յուրաքանչյուր ճյուղ ունի իր առանձնահատկությունները, որոնք չպետք է անտեսել նրա զարգացման տեմպերը որոշելիս։ Այս առումով պետք է նկատի ունենալ, որ հաստոցաշինության մեջ կենդանի աշխատանքը մեծ տեսակարար կշիռ ունի և երկրորդ՝ արտադրանքի արտադրության ծախքերում հումքի, նյութերի, վառելանյութի և էներգիայի արժեքը կազմում է բոլոր ծախսերի մոտ կեսը։ Դա կարևոր դեր է խաղում հաստոցաշինական ձեռնարկությունների տեղաբաշխման ու նրանց պրոֆիլի որոշման գործում։

Հաստոցաշինական արդյունաբերության ձեռնարկությունների զարգացման ու տեղաբաշխման վրա մեծ չափով ազդում են ճյուղային տեխնիկա-տնտեսական պայմանները և այլ գործոններ (հաստոցաշինական գործարաններն զգալի քանակությամբ չուգուն ու պողպատ են սպառում)։ Սակայն, քանի որ մետաղի փոխադրումն ավելի էժան է նստում, քան պատրաստի հաստոցներինը, ապա մետաղային հումքի մոտիկությունն էապես չի ազդում հաստոցաշինական գործարանների տեղաբաշխման վրա։ Վառելանյութի և էլեկտրաէներգիայի աղբյուրները նույնպես էական դեր չեն խաղում, քանի որ վառելանյութի

և էլեկտրաէներգիայի ծախսերի տեսակարար կշիռը կազմում է հաստոցների արտադրության ընդհանուր ծախսերի մի քանի տոկոսը միայն։

Հաստոցաշինական ձեռնարկությունների տեղաբաշխման համար մեծ նշանակություն ունի նաև բանվորների և ինժեներա-տեխնիկական որակյալ կադրերի առկայությունը։ Այս ճյուղի գործարանները տեղաբաշխվում են գերազանցապես այն շրջաններում ու արդյունաբերական կենտրոններում, որտեղ կան պահանջված չափով կադրեր։

Հաստոցաշինական արդյունաբերության անհամաչափ տեղաբաշխումը Անդրկովկասի տնտեսական ամբողջ շրջանում և նրա ռեսպուբլիկաներում հետևանք է ոչ այնքան նոր ձեռնարկությունների ստեղծման, որքան եղած գործարանների վերակառուցման ու մասնագիտացման։ Այսպես, նպատակ ունենալով ռեսպուբլիկայի հաստոցաշինական և մետաղամշակման ձեռնարկությունների ապահովել կոմպլեկտավորող դետալներով, տեխնոլոգիական սարքավորմամբ ու գործիքներով, Հայկական ՍՍՌ ժողտնտխորհը, գործող ձեռնարկությունների մասնագիտացման միջոցով, 1959 թվականին Երևանում ստեղծեց հիդրոհաղորդակ և գործիքաշինական գործարանները և այլն։

Վրացական ՍՍՌ-ում, հաստոցների վերանորոգման գործող գործարանի մասնագիտացման միջոցով, 1957 թվականին Թբիլիսիում ստեղծվեց հղկող հաստոցների գործարանը։ Իսկ ավելի ուշ՝ 1961 թ., Ջեմո-Ավճալայի աշխատանքային գաղութի արհեստանոցի բազայի վրա կազմակերպվեց Թբիլիսիի գերճշգրիտ հաստոցների գործարանը։ Այսպիսով, շրջանի հաստոցաշինական արդյունաբերությունը հիմնականում կենտրոնացվեց Թբիլիսիում և Երևանում։

Հայկական ՍՍՌ-ում յոթնամյակի տարիներին (հաստոցաշինական արդյունաբերության արագ զարգացմանը զուգընթաց) որոշակի տեղաշարժեր եղան հաստոցաշինական ձեռնարկությունների տեղաբաշխման բարելավման գործում։ Նոր կառուցված հաստոցաշինարանների գերակշռող մասը տեղաբաշխվել է ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում (Լուսավանում, Լենինականում, Կիրովականում)՝ լրացնելով և ստեղծելով մեքենաշինական կոմպլեքսներ այդ վայրերում։ Սակայն մինչև օրս էլ Երևան քաղաքին բաժին է ընկնում ռեսպուբլիկայի հաստոցաշինական արդյունաբերության համախառն արտադրանքի 50, արտադրական հիմնական ֆոնդերի՝ 47 և արդյունաբերա-արտադրական անձնակազմի՝ 48 տոկոսը։

Անդրկովկասյան տնտեսական շրջանի հաստոցաշինական արդյունաբերությունը ռացիոնալ տեղաբաշխելու նպատակով անհրաժեշտ է՝ սահմանափակել արտադրության հետագա համակենտրոնացումը ձեռնարկություններով արդեն հագեցված քաղաքներում և նոր արտադրական օբյեկտներ կառուցել այնպիսի շրջաններում ու քաղաքներում, որոնք գտնվում են տնտեսական զարգացման համեմատաբար ցածր մակարդակի վրա։

Համեմատաբար բարձր աշխատատարությունը և փոքր մետաղատարությունը Անդրկովկասյան շրջանի հաստոցաշինական արդյունաբերության մասնագիտացման կարևոր առանձնահատկությունն է։ Վերջին տարիներում գերճշգրիտ հաստոցաշինությունն զգալի չափով զարգացել է ինչպես ամբողջ Միությունում, նույնպես և Անդրկովկասյան շրջանում։ Ներկայումս շրջանի տեսակարար կշիռը ճշգրիտ հաստոցների համամիութենական արտադրության մեջ 17 տոկոսից ավելի է։ Յուրացված են գերճշգրիտ հաստոցների 8 տիպա-



չափ, որոնց թողարկումը 1963 թվականին, 1959-ի համեմատությամբ, ավելացել է մոտ 12 անգամ։

Փոքր գաբարիտի գերճշգրիտ հաստոցներն ունեն մեծ աշխատատարություն և փոքր մետաղատարություն։ Բավական է ասել, որ C—155 մոդելի գայլիկոնիչ սեղանի հաստոցի մեկ տոննայի արտադրության աշխատատարությունը կազմում է 2200 նորմա-ժամ, որը 17 անգամ ավելի է «163» մոդելի շրջատաշ-պտուտակահատ հաստոցի պատրաստի արտադրանքի մեկ տոննայի աշխատատարությունից։

Վերջին տարիներս Անդրկովկասում արագ թափով մասնագիտացվում և կոոպերացվում է հաստոցաշինությունը։ Շրջանի հաստոցաշինական արդյունաբերության մասնագիտացումն ընթանում է պատրաստի արտադրանք և կոմպլեկտավորող դետալներ թողարկող մասնագիտացված նոր ձեռնարկությունների կառուցման և գործող գործարանների ընդլայնման ու վերակառուցման ուղիով։

Արտադրության առարկայական մասնագիտացման գծով զարգանում են՝ Վրացական ՍՍՌ-ում՝ Թբիլիսիի Ս. Մ. Կիրովի անվան հաստոցաշինական, հղկող հաստոցների, գերճշգրիտ հաստոցների և Մ. Ի. Կալինինի անվան մեխանիկական գործարանները. Հայկական ՍՍՌ-ում՝ Երևանի Ֆ. Է. Ձերժինսկու անվան հաստոցաշինական և ֆրեզերային հաստոցների գործարանները, Լենինականի հղկող հաստոցների և դարբնոցամամլիչային սարքավորման գործարանը, Հոկտեմբերյանի, Լուսավանի և Կիրովականի հաստոցագործարանները, որոնք թողարկում են մետաղահատ տարբեր տեսակի հաստոցներ և դարբնոցամամլիչ ու ձուլվածքային սարքավորումներ։

Յոթնամյակի տարիներին Անդրկովկասի հաստոցաշինության բնագավառում սկսեցին մեծ ուշադրություն նվիրել դետալային մասնագիտացման զարգացմանը։ Ներկայումս դետալային մասնագիտացման ուղղությամբ զարգանում են Երևանի հիդրոհաղորդակ և հաստոցանորմալ գործարանները, Երևանի և Թբիլիսիի գործիքային գործարանները, որոնք թողարկում են հիդրոապարատուրա և հաստոցային նորմալներ, մետաղահատ գործիքներ և տեխնոլոգիական սարքավորում։ Անդրկովկասում զարգանում է նաև մասնագիտացման տեխնոլոգիական ձևը։ Այսպես, Թբիլիսիի և Լուսավանի ցենտրոլիտները (կենտրոնացված ձուլվածքների գործարաններ) մասնագիտանում են հաստոցային ձուլվածքների թողարկման գծով։ Մասնագիտացված հաստոցաշինական գործարանները թողարկում են տնտեսական շրջանի հաստոցների ընդհանուր թվի 96 տոկոսը։

Անդրկովկասի ռեսպուբլիկաների ժողտնտխորհներն զգալի աշխատանք են տարել շրջանի հաստոցաշինական արդյունաբերության մասնագիտացման և կոոպերացման ուղղությամբ։ 1963 թվականին շրջանի հաստոցաշինական արդյունաբերության ձեռնարկությունների 70 տոկոսում ամբողջապես թողարկվել է հիմնական (պրոֆիլացված) արտադրանք, իսկ մնացած 30 տոկոսում այն չի գերազանցել 20 տոկոսից։

Լենինականի դարբնոցա-մամլիչ սարքավորման գործարանը մինչև 1961 թվականը հիմնական արտադրանքի՝ մամլիչների հետ մեկտեղ թողարկում էր նաև քար մշակող հաստոցներ, սրսկիչներ, ավազ մանրող մեքենաներ, լայն սպառման առարկաներ, իսկ այժմ՝ գլխավորապես դարբնոցա-մամլիչներ։ Երևանի գործիքաշինական գործարանն ըստ նախագծի պետք է արտադրի 10

միլիոն ռուբլու մետաղահատ գործիքներ, տեխնոլոգիական սարքավորում և գայլիկոն փամփուշտներ։ Լուսավանի գործիքաշինական գործարանում ավարտվում է կտրիչ գործիքներ թողարկող գործիքային արտադրության օբյեկտների կոմպլեքսի կառուցումը։ Այդ գործարանի կառուցվածքի մեջ է մտցված և արդեն գործում է «ցենտրոլիտ» չուգունի ձուլման կոմպլեքս արտադրությունը, որը տալիս է տարեկան 20 հազ. տոննա ձուլվածք. մինչդեռ այն ընդհանուր ոչինչ չունի գործիքի արտադրության հետ և չի ապահովում անհրաժեշտ մասնագիտացում չուգունի ձուլման և գործիքային արտադրության մեջ։

Մասնագիտացման մակարդակը բարձրացնելու նպատակով, մեր կարծիքով, լավ կլինի Լուսավանի գործիքաշինական գործարանը մասնագիտացնել մետաղահատ և հատուկ գործիքների արտադրության ուղղությամբ, ընդ որում չուգունաձուլական արտադրությունն առանձնացնել որպես ինքնուրույն ձեռնարկություն, իսկ Երևանի գործիքաշինական գործարանում արտադրել տեխնոլոգիական սարքավորում։

Անդրկովկասյան տնտեսական շրջանում կան հղկող հաստոցների երկու գործարան (Լենինականում և Թբիլիսիում), որոնք գրեթե նույնատիպ հաստոցներ են արտադրում։ Հղկող հաստոցների արտադրության կրկնօրինակման առաջն առնելու համար նպատակահարմար է Լենինականի գործարանում զարգացնել այդ հաստոցների, իսկ Թբիլիսիի գործարանում՝ հատուկ հղկող հաստոցների արտադրությունը, հաշվի առնելով, որ Թբիլիսիում գործում է հատուկ կոնստրուկտորական բյուրո։

Դետալային արտադրության տնտեսական դերի բարձրացումը անքակտելիորեն կապված է տեխնիկական պրոգրեսի հետ. այն արտացոլում է տվյալ ճյուղի տեխնիկական բազայի ընդլայնումը և նրա մասնագիտացման մակարդակի բարձրացումը։ Սակայն Անդրկովկասյան տնտեսական շրջանի հաստոցաշինական արդյունաբերության մեջ անբավարար է զարգացած արտադրության դետալային մասնագիտացումը։ Այսպես՝ առանձին դետալների և հանգույցների թողարկման մեջ մասնագիտացած ձեռնարկությունների արտադրանքը կազմում է շրջանի այդ ճյուղի համախառն արտադրանքի ընդհանուր ծավալի 13 տոկոսը։

Անցած տարիների ընթացքում բավական ինտենսիվ են օգտագործվել Անդրկովկասյան շրջանի հաստոցաշինական ձեռնարկությունների արտադրական կարողությունները, միջին տարեկան արտադրական կարողության օգտագործման գործակիցը 1963 թվականին կազմել է 0,90։

Շրջանի հաստոցաշինական արդյունաբերության մեջ արտադրական կարողությունների ու արտադրական հիմնական ֆոնդերի ռացիոնալ օգտագործումը և տեխնիկական պրոգրեսը երևում է հիմնական արդյունաբերական-արտադրական ֆոնդերի մեկ ռուբլու արժեքի դիմաց թողարկված համախառն արտադրանքի դինամիկայից, որը ցույց է տրված հետևյալ աղյուսակում։

(ռուբ. կոպեկներով)

| | 1961 | 1962 | 1963 |
|---|---|---|---|
| Վրացական ՍՍՌ | 1,05 | 1,00 | 1,05 |
| Հայկական ՍՍՌ | 0,98 | 0,83 | 0,88 |
| Անդրկովկասյան տնտեսական շրջան | 1,01 | 0,90 | 0,94 |

Տվյալները ցույց են տալիս, որ ամբողջ շրջանի և Հայկական ՍՍՌ հաս-



տոցաշինական արդյունաբերության մեջ նկատվում է ֆոնդի փոխհատուցման իջեցում։ Հիմնականում այդ կապված է այն բանի հետ, որ հատկապես նոր ձեռնարկություններում արտադրական նոր կարողությունները կարող են արտադրանք տալ նրանց յուրացման որոշակի ժամանակաշրջանից հետո, որի հետևանքով կապիտալ ներդրումների և նոր տեխնիկայի արտադրական արդյունավետությունը միանգամից չի դրսևորվում։ Ուստի, անհրաժեշտ է ամեն կերպ կրճատել նախագծային կարողությունների և նոր տեխնիկայի յուրացման ժամանակաշրջանը և արագացնել արտադրանքի թողարկումը։

Անդրկովկասի և, հատկապես, Հայկական ՍՍՌ հաստոցաշինական նոր գործարաններում եղած նախագծային կարողությունների յուրացման դանդաղ տեմպերի հիմնական պատճառներն են. նախ՝ ձեռնարկություններում տեխնիկական նախագծերով նախատեսված նոր, բարձր արտադրողական տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման դանդաղ տեմպերը. երկրորդ՝ գործիքների, հարմարանքների, տեխնոլոգիական սարքավորման կենտրոնացած արտադրության օբյեկտների շինարարության ձգձգումը, այդ սարքավորումներով գործարանները ժամանակին չապահովելը. երրորդ՝ կենտրոնացված արտադրության բացակայությունը և գործարանները կանոնավոր կերպով անհրաժեշտ հաստոցային ձուլվածքներով չապահովելը, որի հետևանքով խախտվում է ձեռնարկությունների ռիթմիկ աշխատանքը։

Հաստոցաշինական արդյունաբերության ձեռնարկություններում ֆոնդի պատշաճ փոխհատուցման համար առաջին հերթին պետք է բարձրացնել սարքավորումների օգտագործման գործակիցը։ Մինչդեռ Անդրկովկասյան շրջանի հաստոցաշինական ձեռնարկություններում արտադրական սարքավորման օգտագործման գործակիցը հասնում է 0,6—0,7-ի։ Սարքավորման անբավարար օգտագործումը բացատրվում է նրանով, որ, չնայած հաստոցաշինական գործարանների մեծ մասը հագեցած է արդի սարքավորմամբ, սակայն այն գործարկվում է ոչ լրիվ կարողությամբ։ Բավական է նշել, որ սարքավորման աշխատանքի հերթափոխության գործակիցը չի գերազանցում 1,2—1,3-ից։ Իսկ եթե այն հասցվի մինչև 1,8—2,0-ի, ապա հաստոցաշինական արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա տասնյակ միլիոն ռուբլիներով։

Անդրկովկասի հաստոցաշինության մեջ վերջին տարիներին ստեղծվել է կոոպերացման լայն ցանց։ Հաստոցաշինական գործարաններից յուրաքանչյուրը կոոպերացվում է խոշոր ու մանր բազմապիսի դետալներ մատակարարող տասնյակ ձեռնարկությունների հետ, որոնց մեծ մասը գտնվում է երկրի հեռավոր շրջաններում։ Օրինակ, շրջանի հաստոցագործարաններն իրենց համար անհրաժեշտ հիդրավլիկ և հաստոցային պիտույքներն ստանում են Լենինգրադից, Արխանգելսկից, Մոսկվայից, Խարկովից, իսկ էլեկտրաշարժիչներն ու էլեկտրասպարատուրան՝ Տոմսկից, Նովոսիբիրսկից, Ֆրունզեից, Մեդնոգորսկից, Տալլինից, Լենինգրադից և այլ վայրերից։ Դրա հետևանքով կոոպերացված կապերի մեջ գերակշռում են հեռավոր փոխադրումները և դրանց հետ կապված անհարմարությունները։

Ժողտնտխորհների ջանադիր գործունեության շնորհիվ Անդրկովկասյան տնտեսական շրջանում ծավալվեց ներշրջանային կոոպերացումը, ընդլայնվեց նախաշինվածքների և դետալների թողարկումը։ Կրճատվեցին կոմպլեկտավորող դետալների խիստ հեռավոր մատակարարումները։ Այսպես, անցյալում Անդրկովկասում արտադրվող էլեկտրաշարժիչներն արտահանվում էին երկրի

այլ շրջանները, իսկ Անդրկովկասի արդյունաբերության թողարկած հաստոց-ների և այլ արտադրանքի կոմպլեկտավորման համար անհրաժեշտ նույնպիսի էլեկտրաշարժիչներ բերվում էին երկրի այլ շրջաններից։ Ներկայումս, ներ-շրջանային կոոպերացման կարգով, Անդրկովկասյան շրջանի հաստոցաշինա-կան արդյունաբերության՝ համապատասխան էլեկտրաշարժիչների պահանջի մոտ 65 տոկոսը բավարարվում է շրջանի գործարանների արտադրության հաշ-վին։ Բացի այդ, Անդրկովկասյան շրջանում կազմակերպվել է մի շարք կոմպ-լեկտավորող դետալների (հիդրոապարատուրաներ և հաստոցային նորմալներ), ինչպես նաև գործիքների և տեխնոլոգիական սարքավորման արտադրությունը, որով հնարավորություն ստեղծվեց կրճատելու հեռավոր ու ոչ ռացիոնալ փո-խադրումները, բարձրացնելու կոոպերացման մակարդակը և խնայելու տաս-նյակ հազարավոր ռուբլիներ։

Շրջանի հաստոցաշինարարները ո՛չ միայն մեծ ուշադրություն են դարձ-նում քանակական աճի վրա, այլև ջանում են թողարկել բարձր ճշգրտության, արդիական տեխնիկայի լավագույն նմուշների մակարդակին համապատաս-խան հաստոցներ։

Հաստոցների արտադրության ծավալի աճը և հաստոցաշինության տեխ-նիկական մակարդակի բարձրացումը Անդրկովկասյան տնտեսական շրջանում կպահանջեն արտադրության կազմակերպման ձևերի էական փոփոխություններ։ Շրջանի հաստոցաշինական արդյունաբերության հեռանկարում մեծ չափով կզարգանա դետալային և տեխնոլոգիական մասնագիտացումը, իսկ այդ սեր-տորեն կապված է տեխնիկական պրոգրեսի հետ, արտադրության կազմա-կերպման մակարդակի բարձրացման և ձեռնարկությունների բոլոր տնտեսա-կան ցուցանիշների բարելավման հետ։ Մասնագիտացման այս ձևերի զար-գացման մակարդակը հնարավորություն կտա ստեղծելու առաջավոր մեքենա-հավաք հաստոցագործարաններ, որոնք կթողարկեն հարակից ձեռնարկու-թյուններից ստացված ագրեգատներից, հանգույցներից ու դետալներից կոմպ-լեկտավորվող պատրաստի հաստոցներ։ Այդ կնպաստի կոոպերացիայի ընդ-լայնմանը, զգալի չափով կազատվեն գործող ձեռնարկությունների կարողու-թյունները, որը հնարավորություն կընձեռի արտադրության ավելի լայն կազ-մակերպման, ավելի փոքր կապիտալ ներդրումների պայմաններում ավելաց-նելու հաստոցների թողարկումը։

Այս ամենը հնարավորություն կտա Անդրկովկասյան շրջանում ստեղծելու բարձր շահութաբերություն ունեցող հաստոցաշինական արդյունաբերություն, որը կոչված է դառնալու մեքենաշինության «գլխավոր տեխնոլոգը»։

ՅՈՒ. ՄԱԹԵՎՈՍՈՎ

# Հոբելյանական ՏԱՐԵԹՎԵՐ

## ԴԱՆԹԵՆ ԵՎ ՄԵՐ ԺԱՄԱՆԱԿԸ

Ս. ՍՈՂՈՄՈՆՅԱՆ

Բանասիրական գիտությունների թեկնածու

Գեղարվեստի աշխարհը որոշ առումով կարելի է նմանեցնել անտառին. թփուտները ստվերի տակ մնում են աննկատելի, թույլերը խամրում են, չո-րանում և միայն հաստաբուն ծառերն են մնում կանգուն, դարեր ապրում, որովհետև արմատները խոր են տարածված, երկրի ընդերքից շատ հյութ են վերցնում։ Այդպես է նաև գրական աշխարհում. միջակությունները մոռացվում են, սակավարյուն տաղանդները որոշ ժամանակ լուսավորում, բայց երկար չեն ապրում։ Ժամանակն ամեն ինչ մաշում է։ Միայն հանճարներն են դիմա-նում դարերի քննությանը, որովհետև նրանք բոլոր արմատներով տարածվել են ժողովրդի կյանքում, ապրել ժամանակի առաջատար տենդենցներով, այր-վել ժողովրդի, հայրենիքի, մարդկային անհատի ճակատագրով և գեղարվես-տական չխամրող պատկերներով մարմնավորել իրենց դարաշրջանի ոգին։

Այդպիսի գրողները, իշխելով ժամանակակիցների մտքերի ու զգացմունք-ների վրա, գործուն դեր են խաղում նաև հետագա սերունդների հոգևոր կյան-քում։ Պատռելով պատմական ու դասակարգային սահմանափակության շրջա-նակները, դարերի խորքից նրանք ձեռք են պարզում այսօրվա մարդկանց, հուզում, գեղարվեստական հաճույք պատճառում, մտքեր արթնացնում, մաս-նակցում բնավորության, բարոյական վարքի ձևավորման ընթացքին։ Դրա համար էլ նրանց ժառանգությունը չի կորցնում թարմությունը, նրանց անունը միշտ ապրում է սերունդների մեջ։ Նման հանճարներին սովորաբար անվանում են հավերժական ուղեկիցներ։

Այդպիսի հավերժական ուղեկիցներից է XIII դարավերջի և XIV դարա-սկզբի իտալական մեծ բանաստեղծ Դանթե Ալիգիերին, որի ծննդյան 700-ամ-յակը լրացավ այս տարվա մայիսին։ Մեծ ֆլորենտացի—այսպես է անվանել նրան Ֆ. Էնգելսը։ Ապրելով միջնադարյան ժամանակաշրջանում, նա կարողա-ցավ հասկանալ խմորվող նոր գաղափարներն ու տենդենցները, դուրս եկավ խավարի թագավորության դեմ և իր գրվածքներում գեղարվեստական խոր ընդհանրացումներով արտացոլեց պայքարով ու երկունքով ճանապարհ հար-թող նորի ծնունդը։ Այրվելով հայրենի քաղաքի՝ Ֆլորենցիայի բախտով, գրչով ու զենքով պայքարելով նրա անկախության ու բարօրության համար, նա տե-

ղական շրջանակներից դուրս եկավ լայն ասպարեզ: Բոլոր թելերով կապված լինելով Իտալիայի հետ, նա միաժամանակ ապրում էր համամարդկային, հումանիստական ոգորումներով: Նրա ողջ կյանքի ու գործունեության գլխավոր հոգսը եղել է հայրենի երկրի միասնությունը, անկախությունն ու բարգավաճումը, ժողովրդի ճակատագիրը, մարդու ազատագրումը միջնադարյան կապանքներից, նրա կատարելագործումն ու առաջադիմությունը:

Ինչպիսի՞ կրքով է խոսել նա այդ ամենի մասին: Դանթեագետներից ոմանք նրա գեղարվեստական խառնվածքի առավել բնորոշ գիծը համարել են ուժեղ կիրքը: Դանթեն, իրոք, շիկացած կրքով է խոսել չարի, բռնության, անարդարության դեմ, խավարի թագավորության ու իշխողների չարաշահումների դեմ և, մյուս կողմից, սիրով ու ոգևորությամբ երգել բարին, գեղեցիկը, ազնիվը: Ճիշտ են ասում. այդ ուժեղ կիրքը, այդ այրող սերն է նրան դարձրել մեծ բանաստեղծ: «Աստվածային կատակերգություն» պոեմում Դանթեն ինքը խոստովանում է. «Երբ ես շնչում եմ սիրով, դառնում եմ ուշադիր ու հոգատար. սերը թող միայն խոսքեր շշնջա, և սկսում եմ գրել»:

Այդպես են մեծ գրողները. նրանք գրում են սրտով ու արյունով:

## 1

Դանթեն ապրել ու ստեղծագործել է փոթորկոտ ժամանակ, մի դարաշրջանում, երբ միջնադարյան ավատական կարգը տեղի էր տալիս նոր ուժերի առաջ: Անցումը միջնադարյան հասարակությունից դեպի նորը տեղի էր ունենում դասակարգային արյունահեղ կռիվների միջոցով: Ֆլորենցիան՝ Դանթեի հայրենի քաղաքը, դասակարգային կատաղի ընդհարումների մի մարտադաշտ էր, ուր մի ամբողջ դար խաչաձևվում էին թշնամական կողմերի սրերը, հին ու նոր հասարակական ուժերի մի վճռական գոտեմարտ, որը պատմական անխուսափելի օրենքի թելադրանքով պետք է որոշեր, թե ով պետք է շարժման գլուխ անցնի, ումն է պատկանելու ապագան:

Դասակարգային հակամարտություններ կային երկու ուժեղ կուսակցությունների՝ գիբելինների՝ ազնվական կուսակցության և գվելֆերի՝ բուրժուական կուսակցության միջև: Ամբողջ XIII դարում պայքարը շարունակվում էր փոփոխական հաջողություններով: Ի վերջո, հաղթում են գվելֆերը: Բայց նույն դարավերջին դասակարգային հակամարտությունները նորից սրվում են, կրկին սկսվում են թշնամական բախումները: Նախկին կուսակցությունները վերախմբավորվում են, այս անգամ հանդես գալով նոր անուններով՝ սպիտակների (ազնվական) և սևերի (բուրժուական) կուսակցություն: 1302 թվականին սպիտակները վերջնականապես պարտվում են, Ֆլորենցիայից արտաքսվում: Սևերը նրանց տները հիմնահատակ կործանում են, գույքը բռնագրավում: Սկսվում է բուրժուազիայի միահեծան իշխանությունը:

Այդ միաժամանակ հոգևոր հեղաշրջման ու կուլտուրական հզոր վերելքի դարաշրջան էր: «Այդ փոթորկալից, հուզումներով լի ժամանակը,— գրել է Կ. Մարքսը,— Իտալիայում նոր կրթության ամենաբարձր ծաղկման շրջանն է, որի ապացույց են հանդիսանում Դանթեի անմահ ստեղծագործությունները և Գվիդո Կավալկանտիի փիլիսոփայությունը և այլն»:

Կուլտուրական խոշոր կենտրոններից էր Ֆլորենցիան, որն աշխարհին



տվել է այնպիսի լուսատուներ, ինչպիսիք են՝ Դանթեն, Ֆրանչեսկո Պետրարկան, Ջիովանի Բոկաչիոն, Միքելանջելո Բուանարոտին և ուրիշներ:

Իտալական քաղաքները դառնում են նոր կուլտուրայի օջախներ, հանդես են գալիս նոր գիտնականներ, փիլիսոփաներ, արվեստագետներ, գրողներ, որոնք դարբնում են նոր աշխարհայացք, մտածելակերպ, բարոյականություն, նոր գիտություն, գրականություն, արվեստ, նոր գաղափարախոսություն: Այդ ամենն ուղղված էր միջնադարյան հասարակության և նրա գաղափարական հենարանի՝ եկեղեցու դիկտատուրայի դեմ: Նոր շարժման ներկայացուցիչները ձգտում էին մարդուն ազատագրել եկեղեցու հոգևոր ստրկությունից, քննադատության ատյանի առաջ կանգնեցնելով կրոնա-միստիկական, ճգնակեցական դոգմաները: Նրանք երկրային, իրական, հողեղեն ոլորտներում էին որոնում մարդկայնորեն առողջ բարոյականության օրենքները, հումանիստական, ազատագրական իդեալները: Դա վերածնության դարաշրջանի առաջին փուլն էր, որի սեմին հառնում է մեծ ֆլորենտացու վիթխարի կերպարը՝ հնի զգալի բեռն ուսին, բայց ոտքը հաստատ դրած նոր ճանապարհին՝ համամարդկային, հումանիստական գաղափարներով ծանրաբեռն:

Դանթեն ծնվել է 1265 թվականի մայիսին Ֆլորենցիայում, գվելֆյան ընտանիքում: Ֆլորենցիայում են ձևավորվել նրա հոգեկան աշխարհը, փիլիսոփայական, գեղագիտական հայացքները, այստեղ է ստացել առաջին քաղաքական մկրտությունը: Ֆլորենցիայում տեղի ունեցող քաղաքական մարտերն իրենց խոր կնիքն են դրել նրա հոգևոր կյանքի վրա: Բնավորությամբ ու խառնվածքով գործնական մարդ էր նա և, հասկանալի է, չէր կարող պայքարի դաշտից դուրս մնալ:

Վերածնության դարաշրջանն ստեղծեց նոր տիպի, խառնվածքի, մտածելակերպի գրողներ:

Այդպիսի գրող էր նաև Դանթեն: Նա գործնական պայքարին մասնակցել է թե՛ խոսքով ու գրչով և թե զենքով: Դեռևս երիտասարդ ժամանակ, որպես հասարակ զինվոր նա մասնակցել է արյունահեղ ճակատամարտերին: Ապագա մեծ գրողի քաղաքական եռուն գործունեությունն սկսվում է XIII դարի վերջին տասնամյակում, երբ նա արդեն անցել էր սպիտակների կուսակցության կողմը: Այդ ժամանակ Ֆլորենցիան, ինչպես և իտալական մյուս խոշոր քաղաքները՝ քաղաք-կոմունաները, ինքնուրույն հանրապետություն էր, ուներ պետական ինքնուրույն մարմիններ, սեփական զորք, օրենքներ, սահմանադրություն և այլն: Դանթեն բազմիցս ընտրվել է պետական բարձր մարմինների անդամ, գրավել բարձր պաշտոններ, կատարել է պատասխանատու պետական հանձնարարություններ:

Մեծ, շատ մեծ ծառայություններ է մատուցել Դանթեն հայրենի քաղաքի անկախության և առաջադիմության գործին: Բայց ինչպե՞ս է վարձատրվել... 1302 թվականին, նա ևս ընտանիքով, խոր կսկիծն ու վիշտը սրտում, բռնում է էմիգրացիայի ճանապարհը: Սևերի իշխանությունը նրան դատապարտում է մահապատժի (ողջ-ողջ այրել կրակի վրա) և հիմնահատակ քանդում մեծ ֆլորենտացու տունը: Հետագայում Դանթեն մի քանի անգամ դիմել է ֆլորենտական իշխանություններին՝ հայրենի քաղաք վերադառնալու համար, բայց նրա դիմումները մնացել են անպատասխան: Այդ անանց դառնությամբ է լցրել հայրենասեր բանաստեղծի սիրտը տարագրության բոլոր տարիներին: Այդպես վշտահար էլ նա իջավ գերեզման:

Դանթեի քաղաքական հայացքներն ու քաղաքական գործունեությունը անբիծ չեն եղել: «Միապետություն» աշխատության մեջ նա տալիս է մի կոնցեպցիա, ուր արտացոլվել է միջնադարյան կրոնա-ավատական մտայնությունը: Ընդսմին Դանթեն արտահայտում է նաև այնպիսի մտքեր, որոնք հումանիստական տրամադրությունների արտահայտություն են: Հաստատելով, որ կայսերական իշխանությունն աստծո հաստատածն է, նա, միաժամանակ, մեկայսերական իշխանությունն աստծո հաստատածն է, նա, միաժամանակ, մեծագույն դատավոր համարում է ժողովուրդը. կայսեր գերագույն պարտականությունը մարդասիրությունն է, քաղաքացիությունը և ազատությունը: Սա է Դանթեի քաղաքական հավատքը:

Դանթեի քաղաքական հայացքները վաղուց հնացել են: Բայց մեր ժամանակի հետ նրան կապում են նրա բուռն հայրենասիրությունը, Իտալիան ազատ, անկախ ու միասնական տեսնելու երազանքը: Զուր չէ, որ Դանթեի իդեալը դարձավ XIX դարի ազգային ազատագրական շարժման դրոշը:

## 2

Դանթեի մեծագույն ծառայությունն այն է, որ նախապատվությունը տվեց ժամանակակից իտալերենին: Նա ո՛չ միայն իր գեղարվեստական երկերը գրեց ժամանակակից իտալերենով, այլև տեսականորեն ապացուցեց, որ ժողովրդի համար ստեղծվող գրականությունը պետք է ժողովրդին հասկանալի լինի:

Դանթեի հանճարի ուժը, սակայն, ամբողջ թափով արտահայտվել է նրա գեղարվեստական գործերում:

Առաջին գեղարվեստական երկը Նոր կյանքն է, սիրային երգերի՝ սոնետների ու կանցոնների—մի ժողովածու, որն ընթերցողին հրամցնում է տվայտանքներով ու հուզումներով լի մի սիրո պատմություն: Բանաստեղծական չափածո ձևի հետ մեկտեղ օգտագործվում է նաև արձակ խոսքը. սոնետներն ու կանցոնները ժամանակագրորեն դասավորված են այնպես, որ յուրաքանչյուրին հաջորդում են հեղինակի մեկնաբանությունները: Բանաստեղծը բացատրում է իր սիրային երգերի բնույթը, իմաստը, արձակ խոսքի միջոցով բացահայտում բովանդակությունը, պատմում, թե երբ է տեսել սիրածին, հանդիպումներ ունեցել, ինչ ապրումներ է ունեցել, երբ, ո՛ր դեպքից հետո և ինչ խրախրության մեջ է գրել տվյալ երգը:

Սկզբում պատմում է, որ ինը տարեկան էր, երբ առաջին անգամ հանդիպեց աստվածային մադոննային՝ Բեատրիչեին, իսկ վերջինս ինը տարեկան էր՝ առանց ինն ամսի: Երկրորդ անգամ նրան հանդիպում է ինը տարի հետո: Առաջին հանդիպման ժամանակ ծագած սիրո կայծերը հիմա հրդեհ են առաջացնում: Քնարական հերոսը հիմա միայն նրանով է ապրում, Բեատրիչեի մեջ է որոնում կյանքն ու երջանկությունը: Դա մի իդեալական, անարատ սեր է, որը չի ձգտում տիրելու, գերագույն բավականությունն զգում է բուն իսկ սիրո զգացմունքի մեջ: Սիրածի մի ժպիտը, մի բարեհամբույր հայացքը բավական են նրան երանության աշխարհը փոխադրելու համար: Թո՛ղ որ Բեատրիչեն ամուսնանա ուրիշի հետ, այդ նրան չի վշտացնում, բայց ողջ հոգեկան աշխարհը ցնցվում է, երբ մի օր լսում է սիրած կնոջ մահվան լուրը: Աշխարհը նրա համար մթնում է, կյանքը կորցնում է իր գրավչությունը, ապրելը դառնում անիմաստ: Երեք օր տևող ուշակորույս վիճակից հետո, երբ սթափվում է, մի պահ ինքնասպանության միտք է որոճում, պետք չէ անձնատուր լինել թուլացնող զգացմունքներին, որոշում է նա, պետք է ապրել Բեատրիչեի հիշատակն անմահացնելու համար:



Սրանով վերջանում է Նոր կյանքը:

Դանթեի անդրանիկ գրվածքի առարկան, այսպիսով, սերն է, որը, սակայն, զերծ է նեղ, անձնական բնույթից: Նոր կյանքում երգվող սիրային տվայտանքներում արտացոլված են որոշ պատմական հոգեբանություն, բարոյա-էթիկական կոնկրետ պատկերացումներ: Դա մի նորարարություն էր, որը շուտով վերածնության գրականության մեջ դառնալու էր առաջատար մոտիվ:

Նոր կյանքի նորարարական միտումի մասին ճիշտ պատկերացում կազմելու համար պետք է պատմական մոտեցում ունենալ, պետք է հիշել, որ միջնադարյան հասարակության բարոյական կանոնները մշակել և դարերով սրբագործել է քրիստոնեական եկեղեցին: Դա մի հակաբնական, հակամարդկային բարոյականություն էր, որի գերագույն դոգման ճգնակեցությունն էր, մի վայրենի բարոյականություն, որը բխեցվում էր աստվածաբանական այն ուսմունքից, թե մարդու կյանքը բաղկացած է երկրային՝ մարմնական, անցավոր կեցությունից և երկնային՝ հոգևոր, հավերժական գոյությունից: Առաջինն անցնում է այս երկրային մեղսավոր աշխարհում և այլ բան չէ, քան եթե փորձության շրջան, երկրորդը՝ անդրկողմյան, հավիտենական երջանկության թագավորությունն է, որին արժանանում են միայն խստագույն մարմնական զրկանքների միջոցով: Այստեղից էլ բխում է ճգնակեցական բարոյականության գլխավոր դոգման, սրանցից բխող բոլոր հետևություններով—զրկանք, հրաժարումն աշխարհիկ կյանքից, հնազանդություն, հաշտվել վերուստ սահմանված բախտի հետ, հեռու մնալ երկրային վայելքներից ու բավականություններից՝ վտանգավոր գայթակղությունների, մեղքերի ու ամեն տեսակ սատանայությունների աղբյուրից: Մի խոսքով, հոգևոր ստրկության բարոյականությունն էր այդ, որի նպատակն էր մարդուն ամբողջապես ենթարկել եկեղեցուն:

Դանթեի Նոր կյանքի նորարարական միտումը մարդկային անհատի ինքնագիտակցության արթնացումն է:

Խնդիրն այն է, որ միջնադարյան կրոնա-միստիկական կուլտուրայի և նոր, աշխարհիկ կուլտուրայի պայքարը իտալական գրականության մեջ սկզբում ընդունեց «հոգու» և «մարմնի» բախման ձև և փոխադրվեց սիրո ոլորտը: «Հոգևոր սիրո» և «մարմնական սիրո» վեճի գեղարվեստական արտացոլման առաջին ցայտուն օրինակը տվել է Դանթեն: Նրա անդրանիկ գրվածքը այլ բան չէր, քան ճգնակեցական բարոյականությունից ազատագրվելու, աշխարհիկ կյանքով ապրելու ձգտումների գեղարվեստական արտահայտություն: «Դա հրճվող ու տառապող հոգու առաջին ինքնակենսագրությունն է նոր գրականության մեջ» (Ջիվիլիգով): Սերը ամեն ինչից վեր է, կնշանակե՝ վեր է նաև վերուստ սահմանված օրենքներից: Այդ է Նոր կյանքի հիմնական մտահղացումը:

Սակայն Դանթեն հարցը չլուծեց: Հին մտածողության ազդեցությունը շատ ուժեղ էր, և նա չկարողացավ թոթափել հնի բեռը: Ահա ինչու բնական զգացմունքը զսպվում է Նոր կյանքում, իսկ սերը վերածվում «հոգևոր սուբստանցի», այսինքն՝ բարոյական կատարելագործման, հոգու վեհացման, սրտի ազնվացման, մեղքերի զտման սիմվոլի: Սերը,—բացատրում է Դանթեն,—մարմնական սուբստանց չէ, այլ հոգևոր սուբստանց (վիճակ): «Սիրո տիրապետությունը բանաստեղծ է, քանզի նա իսկական սիրով սիրող մարդկանց կասեցնում է ամեն տեսակ տգեղ բաներից»:

Սրանով պետք է բացատրել Նոր կյանքում հանդիպող գաղափարական և գեղարվեստական-ոճական երկվությունը։ Ելնելով երկրային, իրական կյանքից, ներկայացնելով ֆլորենտական մի սովորական կնոջ կերպար, տալով իր բնական զգացմունքների պատմությունը, Դանթեն շուտով սիրո առարկային փոխադրում է հոգևոր բնագավառ, դուրս մղելով մարմնականը, սերը զրկելով զգայական բովանդակությունից։ Այդպիսին է Բեատրիչեն Նոր կյանքի սոնետներում։

Սակայն «հոգեկանի» և «մարմնականի» վեճի մեջ միայն բարոյական հարցեր չէին լուծվում։ Այդ հակադրությունը շատ որոշակի հասարակական բովանդակություն ուներ։ Ծգնակեցական դոգմաների և երկրային, բնական զգացմունքների բախումը այլ բան չէր, քան եթե մարդկային անհատի ազատագրման գաղափարի արտահայտություն՝ միջնադարյան կապանքներից։ Դանթեի մոտ անհատը փորձում է հաղթահարել այդ կապանքները, բայց դա դեռևս անհամարձակ, անզոր ելույթ էր։ Չպետք է մոռանալ, որ Դանթեն ապրել ու ստեղծագործել է փոխանցման մի շրջանում, երբ նորն այն աստիճան չէր ուժեղացել, որ կարողանար հաղթահարել իշխող մտածողությունն ու բարոյական ըմբռնումները։

## 3

Դանթեի գլուխգործոցը Աստվածային կատակերգություն պոեմն է, գեղարվեստական վիթխարի մի կոթող, որն անմահացրել է հեղինակի անունը։ Այստեղ փայլատակում են գեղարվեստական հանճարի բոլոր ուժեղ կողմերը՝ ստեղծագործական ճոխ երևակայություն, պոետական կիրք, խոր, թանձր ընդհանրացումներ, պատմական հարուստ բովանդակություն, ինքնատիպ կառուցվածք, պատկերների բազմազանություն և այլն։

Աստվածային կատակերգությունը համարել են գեղարվեստական հանրագիտարան։ Իրոք, Դանթեի պոեմի ուժեղ կողմերից մեկը իրականության ընդգրկման լայն շրջանակներն են։ Դա մի մեծ կտավ է, որը տալիս է դարաշրջանի ընդհանրացված պատկերը առավել ցայտուն, տիպական դրսևորումներով, հասարակական, քաղաքական, գաղափարական, էթիկական բախումներով լի մի ամբողջ աշխարհ։ Իտալիա, Ֆլորենցիա, հասարակական, քաղաքական կյանք, կենցաղ, ընտանիք, բարքեր, պատմություն և արդի ժամանակ, երկիր և երկինք, իրականություն և իդեալ, պատմական դեմքեր և մտացածին կերպարներ, ամենատարբեր դիրքի, զբաղմունքի, մասնագիտության, պաշտոնի մարդիկ, թագավորներ, իշխաններ, հոգևորականներ, քաղաքական գործիչներ, ազնվականներ, վաճառականներ, աստվածաբաններ, փաստաբաններ, զորավարներ, գիտության, արվեստի, գրականության ներկայացուցիչներ, հասարակ մարդիկ և այլն. ահա, շատ ընդհանուր կերպով ասած, Դանթեի պոեմի գեղարվեստական ընդգրկման շրջանակները։ Այդպիսի խորությունը, կենսական նյութի այդ հարուստ բազմազանությունը պատկերացնելու համար հարկավոր է ընդհանուր գծերով, շատ համառոտ նկարագրել գրվածքի կառուցվածքը։

Ինչպես Նոր կյանքում, այնպես էլ Աստվածային կատակերգություն պոեմում որոշ թվեր, հատկապես 3 և 9 թվերը սիմվոլիկ նշանակություն ունեն, ավելի ճիշտ՝ կոմպոզիցիոն կառուցման յուրահատուկ եղանակ է այդ. պոեմը բաղկացած է երեք մասից՝ «Դժոխք», «Քավարան», «Դրախտ» և նախերգից։



Յուրաքանչյուր մաս բաղկացած է 33 երգից։ Բոլորը միասին կազմում են 100 երգ։ Պոեմը գրված է տերցիններով, այսինքն՝ եռատող տներով, որտեղ առաջին տողը հանգավորվում է երրորդ տողի հետ, իսկ երկրորդ տողը՝ հաջորդ տան առաջին և երրորդ տողերի հետ։ Պոեմում պատկերված երեք երկնային թագավորությունները բաժանվում են առանձին մասերի. դժոխքը բաղկացած է ինը, քավարանը՝ յոթ շրջաններից, դրախտը՝ ինը երկնային ոլորտներից։ Պոեմը պատմողական ձև ունի, պատմողը բանաստեղծն ինքն է՝ Դանթեն։ Սյուժետային հենքը բանաստեղծի ֆանտաստիկական ճանապարհորդությունն է անդրկողմյան աշխարհում՝ դժոխքում, քավարանում և դրախտում։ Այդ առանցքի վրա է խարսխված գրվածքի ողջ կոմպոզիցիոն շենքը։

Առաջին երգ նախերգում նախանշված են պոեմի գեղարվեստական ընդհանուր պլանն ու մտահղացումը։ Բանաստեղծն այստեղ պատմում է. իր կյանքի կես ճանապարհին մոլորվել է թավուտ անտառում։ Նրա վրա հարձակվում են երեք գազաններ՝ հովազը, առյուծը և էգ գայլը։ Բանաստեղծը չգիտե ինչ անել, անտառի խորքում նկատում է լույսի շողք, վազում է դեպի այդ լույսը, գազանները՝ նրա ետևից։ Օրհասական պահին նրան ընդառաջ է գալիս Վերգիլիոսը՝ հին հռոմեական նշանավոր բանաստեղծը, Էնեականի հեղինակը, որը Դանթեին փրկում է գազաններից և հայտնում, որ ինքն ուղարկված է Բեատրիչեի կողմից՝ Դանթեին փրկելու մոլորությունից ու վտանգից և առաջնորդելու մինչև դրախտ։ Դժոխքում ու քավարանում Դանթեին ուղեկցում է Վերգիլիոսը, դրախտում՝ Բեատրիչեն։

Աստվածային կատակերգությունն ամբողջությամբ վերցրած և առանձին մասերում այլաբանական ձև ունի. անտառը երկրային կյանքի սիմվոլն է, որտեղ մարդկային անհատը տիրող մոլությունների հետևանքով մոլորվել է, հովազը՝ զգայապաշտության, առյուծը՝ իշխանության, էգ գայլը՝ ագահության, անտառի լույսը՝ իդեալական աշխարհի ուղեցույցն է, Վերգիլիոսը՝ բանականության սիմվոլը, որը մարդուն տանելու է դեպի երազած ափը։

Սիմվոլիկ բնույթ ունի ամբողջ երկնային թագավորության նկարագրությունը։ Բայց այդ այլաբանական ձևի մեջ ամփոփված է շատ հարուստ, միանգամայն իրական, զուտ մարդկային բովանդակություն։ Դանթեն ընտրել է մի այնպիսի ինքնատիպ ձև, որում երևում են գաղափարական սրությունն ու հեղինակի վերաբերմունքը. մարդկանց մեղքերին, հանցագործ արարքներին համապատասխան նրանց տեղավորում է դժոխքի զանազան շրջաններում, ավելի մեծ հանցագործները դժոխքի խորքում պատժվում են առավել ահավոր կերպով, նվազ մեղավորները տեղավորված են քավարանում, իսկ իդեալական, առաքինի գործերով, վարք ու բարքով հայտնի անձնավորությունները դրախտում են։ Այսպիսով, դժոխքն՝ իր դժոխային պատիժներով, քավարանը, դրախտը այլ բան չեն—քան եթե մոտեցման ու գնահատման չափանիշներ, հասարակական, քաղաքական, էթիկական երևույթների խարազանման կամ արդարացման գեղարվեստական ցայտուն, արտահայտիչ ձև։ Սա է Աստվածային կատակերգության կառուցվածքի ինքնատիպությունը։

Բավական է միայն ծանոթանալ պոեմի առաջին մասի՝ «Դժոխքի» հետ, որպեսզի պարզ երևա, թե պատմական ինչպիսի հարուստ բովանդակություն ունի Դանթեի գրվածքը, ինչպիսի կրակոտ կիրք ու անհանգիստ մտորումներ են հանդիպում, ինչպիսի գաղափարական սրություն կա։

Վերգիլիոսի հետ մտնելով դժոխքին, կարդում է մուտքի նախադռան

վրա գրած սարսռազդեցիկ խոսքերը. «Ով այստեղից ներս է մտնում, թող հույսը կտրի»: Դժոխքի նախադռանը կուտակված է մի մարդկային խառնիճաղանջ, հոծ բազմություն, որոնց դժոխքը չի ընդունում: Դրանք անսկզբունք, իդեալներից, համոզմունքներից, դավանանքից զուրկ մարդիկ են, ոչ մեղավոր են, ոչ անմեղ, կյանքում ոչ մի հետք չեն թողել, ոչ հավատարիմ են եղել բարեկամներին, ոչ թշնամիներին, մի խոսքով՝ քսու, ստորահաճ, քամու բոլոր շարժումներից հեշտությամբ բեկվող, ամեն ինչին համակերպվող, բոլոր տեսակետներին համամիտ, անդեմ, անողնաշար, անառագաստ—ահա դրանց նկարագիրը: Անգամ դժոխքը հրաժարվում է այդպիսի դատարկամոլներից: «Նայիր ու անցիր»—արհամարհանքով բացատրում է Վերգիլիոսը:

Ապա սկսվում են դժոխքի ահասարսուռ շրջանները: Այդտեղ տեղավորված են շատակերներ, ցոփ ու հեշտասեր կյանքով ապրողներ, նախանձներ, ծույլեր, որոնց առաքինության ոգին ու փորձելու եռանդը թմրել են, կեղծավորներ, շողոքորթներ, գայթակղիչներ, ընկերոջը դավաճանողներ և այլն: Բարոյական, էթիկական, կենցաղային ոլորտի մեղսագործներն են սրանք: Դժոխքի առավել սարսափելի շրջաններում պատժվում են գվելֆների և գիբելինների կամ սևերի ու սպիտակների ներկայացուցիչները, դավաճաններ, ուրացողներ, դիրքն ու պաշտոնը չարաշահողներ, քաղաքական գործն անձնական փառքի համար օգտագործողներ, բռնակալներ, արյունածարավ իշխանավորներ, թագավորներ, բարձրատոհմիկ ազնվականներ, բնական ու մարդկային օրենքները ոտնահարողներ, նենգ խորհրդատուներ, խառնակիչներ, քաղաքական ինտրիգների վարպետներ, հայրենիքի դավաճաններ և այլն: Քաղաքական կյանքի ոլորտից պատժվողներն են սրանք: Ավելի անողոք պատժի են ենթարկվում անառակ կյանքով ապրող, եկեղեցական պաշտոններն առ ու ծախի առարկա դարձրած, ժլատ, վատնող, ցոփ կյանքում հղփացած, հայրենիքի ճակատագիրն անձնական կրքերին ստորադասող, ինտրիգներում, դավաճանություններում, խաբեություններում վարպետացած պապեր, կարդինալներ, եկեղեցական զանազան մեծ ու փոքր, նշանավոր ու աննշան պաշտոնյաներ, նաև հերետիկոսներ: Սա եկեղեցական ոլորտն է: Հասարակական նշանակություն ունեցող պատժվողների մյուս խմբի մեջ մտնում են բուրժուական կյանքի ոլորտից սերած ժլատները, վաշխառուները, գողերը, սիրտն ու հոգին մամոնային զոհաբերած անկուշտ ագահները և այլն:

Այսպիսով Աստվածային կատակերգության գաղափարական բովանդակությունը նկարագրվում է հետևյալ կերպ: Առաջին, Դանթեն պոետական շիկացած խոսքով դատապարտում է ժամանակակից հասարակական և քաղաքական կարգը. թագավորական իշխանությունը՝ բռնության, անօրինության, ուժի ու դիրքի չարաշահության, մարդկային իրավունքների ոտնահարման համար. ազնվականությանը՝ գոռոզության, մեծ գործերի անկարողության, մեծ իդեալների բացակայության համար. քաղաքական կուսակցություններին՝ խառնակչության, պառակտումների, անձնական փառքը հայրենիքի բախտին գերադասելու համար: Սա որոշակի հակաֆեոդալական տրամադրություն է:

Իհարկե, Դանթեն հիմնովին չէր ժխտում ժամանակակից հասարակական, քաղաքական սիստեմը: Ժխտման ոգին, այսինքն՝ հակաֆեոդալական հեղափոխությունների շրջանը, մի քանի հարյուրամյակ հետո է գալու: Հասարակական գաղափարները բյուրեղանում են այն ժամանակ, երբ հանդես են գալիս դրանց լուծման օբյեկտիվ պայմանները: Ոչ մի մտածող, ասում է Ֆ. Էնգելսը,



չի կարող դուրս գալ այն շրջանակներից, որոնց մեջ նրան դրել է դարաշրջանը: Դանթեի ժամանակ դեռևս չկային, չէին հասունացել այն ուժերը, որ պիտի սրբեին ֆեոդալական հասարակական, քաղաքական, բարոյական հաստատությունները: Դանթեն որքան էլ մեծ բանաստեղծ էր, այնուամենայնիվ չէր կարող շատ հեռուները տեսնել, այսինքն՝ չէր կարող միջնադարյան կարգի վերացման խնդիր դնել, բայց և ամենևին չէր արդարացնում գոյություն ունեցող պայմանները, ձաղկում էր, դատապարտում, քննադատում: Այդ է կարևորը, այդ է նրան կապում հետագա ժամանակների հետ:

Երկրորդ, Աստվածային կատակերգությունում քննադատության կրակի տակ է առնվում հոգևորական դասը՝ պապերը, կարդինալները, եկեղեցական վերնախավի ներկայացուցիչները, նրանց բարոյական անկումը, հակահայրենական ինտրիգները, կենցաղային այլանդակությունները և այլն:

Այս խնդրում ևս Դանթեն հեռու չգնաց, չհանգեց կրոնական հաստատությունների ժխտման: Նա քրիստոնեական եկեղեցու պաշտպանն էր, և նրա քննադատությունը սուբյեկտիվորեն եկեղեցու հիմքերը ամրապնդելու նպատակ ուներ: «Դժոխք»-ում նաև պատժվում են աղանդավորները, հերետիկոսները, քրիստոնեական վարդապետության դեմ մեղանչած մարդիկ: Այնուամենայնիվ Դանթեն իր ժամանակից վեր կանգնած, հումանիստորեն տրամադրված, արդարամիտ բանաստեղծ էր և չէր կարող եկեղեցում բույն դրած ախտերի կողքով անցնել: Աստվածային կատակերգության մեջ մերկացումներն այնքան ազդակող պատկերներ են դնում ընթերցողի առաջ, որ վերջինս համակվում է հակաեկեղեցական տրամադրություններով, անկախ Դանթեի սուբյեկտիվ մտադրությունից: Սա է Դանթեի պոեմի առաջադիմական կողմերից մեկը:

Երրորդ, մերկացվում են բուրժուական կյանքի մի քանի տիպական խոցերը՝ անձնապաշտությունը, ագահությունը, մասնավորապես կուտակման կիրքը, որը Դանթեն համարում է ժամանակի մեծագույն չարիքներից մեկը, մի ահավոր վարակ, որը եղծում է սիրտը, հոգին, զգացմունքները, փշրում մարդկանց իրար հետ կապող գեղեցիկ կապերը: Աստվածային կատակերգությունը աչքի է ընկնում նաև շեշտված հակաբուրժուական տրամադրությամբ:

Չորրորդ, Դանթեն մի առանձին տագնապով ու ներքին անհանգստությամբ է պատկերում ժամանակի բարոյական ախտերը, կենցաղի, ընտանիքի քայքայման, բնական կապերի կործանման, մարդկային կերպարի աղճատման երևույթները: Աստվածային կատակերգության մեջ հանդիպող բարոյական անկման նկարագրություններն ընթերցողին բերում են մի եզրակացության, որը կարելի է բնորոշել Համլետի բառերով՝ ժամանակն իր շավղից դուրս է սայթաքել: Այդպես է մտածել Դանթեն և դրանով պետք է բացատրել այն թախծալի գույներն ու տագնապալից շեշտերը, որոնցով երանգավորված է նրա գլուխգործոցը:

Այս մոտիվներով չի սպառվում Աստվածային կատակերգության բովանդակությունը: Շոշափված են նաև ուրիշ շատ կարևոր պրոբլեմներ՝ գիտական, փիլիսոփայական, գաղափարական: Պոեմում արտացոլված են նոր կյանքի ձևերը, նոր մարդիկ, նոր տրամադրություններ ու հույզեր: Կան բնության գունեղ նկարագրություններ, մարդկային անհատի ճակատագիր, հումանիստական դրսևորումներ: Մենք կանգ առանք գլխավորապես այն մոտիվների վրա, որ կարմիր թելի նման անցնում են պոեմի գեղարվեստական ամբողջ հյուսվածքի միջով և կազմում պոեմի գաղափարական առանցքը:

Աստվածային կատակերգության մասին ճիշտ են նկատել: Դանթեն դա-
տավճիռներ է կարդում Ֆլորենցիային, Իտալիային, աշխարհին, քաղաքական
ու բարոյական գնահատականներ է տալիս, ծաղրում է վատը, անարդարը, հա-
կահասարակականը, պոետականացնում գեղեցիկը, բարին, մարդկայինը: Այդ
ամենը ներթափանցված են գեղարվեստական հյուսվածքի, պատկերների սիս-
տեմի, բախումների, կերպարների գնահատման ու իմաստավորման մեջ:

Պոեմի ընդհանուր կոնցեպցիան կարելի է ձևակերպել այսպես. ժամանա-
կը մարդկային անհատին բերել-հասցրել է մի այնպիսի դրության, որ հասա-
րակական, քաղաքական, բարոյական մոլությունները սպառնում են նրան կոր-
ծանել (մոլորվելը թավուտ անտառում, երեք գազանների վտանգը): Տիրող ախ-
տերի խտացած պատկերը տալիս է առաջին մասը («Դժոխք»): Դա իրական
վիճակն է: Ցույց է տրվում նաև ելքը՝ հաղթահարել տիրող ախտերը, քավել
մեղքերը («Քավարան»), բանականության (Վերգիլիոս) միջոցով վերացնել մո-
լությունները և մարդկությանը տանել դեպի իսկական թագավորություն
(«Դրախտ»), դեպի մարդկային անհատի իդեալական կատարելություն (Բեա-
տրիչե): Սա է ընդհանուր այլաբանական ձևում թաքնված հիմնական գաղա-
փարական գիծը:

Իհարկե, Աստվածային կատակերգության մեջ բավականին տեղ են
գտել նաև միջնադարյան մտածողության ձևերը: Դանթեի աշխարհայացքի ու
գեղարվեստական ստեղծագործության բնորոշ հակասությունները պարզ երե-
վում են նաև նրա գլուխգործոցում: Զուր չէ, որ Ֆ. Էնգելսը նրան համարել է
«միջնադարի վերջին բանաստեղծը և դրա հետ միասին նոր ժամանակի առա-
ջին բանաստեղծը»: Այո՛, Դանթեի ստեղծագործությամբ եզրափակվում է միջ-
նադարյան գեղարվեստական մշակույթը և նրանով է սկսվում նոր ժամանակի
գեղարվեստական մշակույթը: Հաստատելով Ֆ. Էնգելսի միտքը՝ Ա. Ջիվիլի-
գովը գրում է. Դանթեն «կանգնած է երկու դարաշրջանների սահմանագլխին՝
տալով մեկի համադրությունը և լուսավորելով մյուսի ճանապարհը»: Միջնա-
դարյան մտածելակերպի ազդեցության արտահայտությունն են Աստվածային
կատակերգության էջերում, հատկապես «Դրախտ»-ում սփռված փիլիսոփայա-
կան, աստվածաբանական, սխոլաստիկական դատողությունները, դժվար վեր-
ծանելի սիմվոլները, կրոնա-միստիկական տարրերը, որոշ արիստոկրատական
նախապաշարումներ և այլն:

Սակայն նորի հզոր դրսևորումները՝ քննադատական ոգին, բանականու-
թյան գովքը, լավի հաղթանակի հավատը, հետաքրքրասիրությունը ռեալ իրա-
կանության, մարդու, նրա ներաշխարհի, բնության հանդեպ, ապագային սե-
վեռած հայացքը, մարդու կատարելագործման, առաջադիմության, հասարա-
կական պայմանների բարեփոխման իդեալները և այլն,— այդ բոլորը մեծ ուժով
պատռում են միջնադարյան մտածողության կեղևը և ճանապարհ հարթում
աշխարհիկ, ռեալիստական, հումանիստական գրականության համար:

Հնի դրսևորումները մնացել են անցյալում, միջնադարն իր հետ տարել է
այդ ամենը. նորը, մնայունը ապրել է, ապրում է, դարերի հեռավորությունից
գալով՝ կապվել է մեր ժամանակի հետ և իր տեղը գրավել ժամանակակից սե-
րունդների հոգևոր կյանքում:

Այս է Դանթեի անմահության գաղտնիքը:

# Գիտության աշխարհում

Լ. ՄԻՐԶՈՅԱՆ

## ՆՅՈՒԹԻ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԳՈՅԱՁԵՎԵՐԻ ԷՎՈԼՅՈՒՑԻԱՆ

### (ՆԱԽԱՍՏՂԱՅԻՆ ՆՅՈՒԹԻ ՈՐՈՆՈՒՄՆԵՐԸ)

«Տիեզերական տարածության մեջ տեղի ունեցող երևույթներում կարող են հանդիպել բնության այնպիսի օրենքների դրսևորումներ, որոնց դեռ չի հաջողվել բացահայտել փորձի միջոցով»:

Վ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

ՆԵՐԱԾԱԿԱՆԻ ՓՈԽԱՐԵՆ. Նյութի կառուցվածքի և նրա պարգացման օրինաչափությունների ուսումնասիրությունը ժամանակակից գիտության ամենակարևոր պրոբլեմն է: Այդ ուղղությամբ արդեն ստացված բազմաթիվ արդյունքներ գիտական ու գործնական հսկայական նշանակություն ունեն: Գիտության ու տեխնիկայի աննախընթաց ծաղկումը և դրա հիման վրա արդյունաբերության բուռն զարգացումը մեր օրերում այդ բանի փայլուն վկայությունն են:

Ներկայումս գիտության ամենաբազմազան բնագավառներում հետազոտություններ են կատարվում նյութի խոր, առայժմ անհայտ հատկությունների, տարբեր պայմաններում նրա հետ տեղի ունեցող ամենաբազմազան երևույթների և այդ երևույթները կառավարող օրինաչափությունների ուսումնասիրության նպատակով:

Հետազոտությունների այդ շարքում առանձնահատուկ տեղ են գրավում նյութի տիեզերական գոյաձևերի ուսումնասիրությանը նվիրված աշխատանքները, հատկապես այն գոյաձևերի, որոնք հաճախ անհասանելի են մեր երկրային լաբորատորիաներում:

Ստորև փորձ է արվում շարադրելու նյութի տիեզերական գոյաձևերի ու նրանց էվոլյուցիայի վերաբերյալ այն նոր պատկերացումները, որոնք առաջադրվել ու մշակվել են Բյուրականի աստղադիտարանում, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանի ղեկավարությամբ, վերջին շուրջ քսան տարվա ընթացքում, և կարևոր ներդրում են համաշխարհային գիտության մեջ:

ՈՐՈՇ ՏՎՅԱԼՆԵՐ ՆՅՈՒԹԻ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԳՈՅԱՁԵՎԵՐԻ ՄԱՍԻՆ. Մեկ շրջապատող տարածության մեջ դիտվում է նյութի գոյաձևերի հսկայական առատություն: Սակայն նյութի բոլոր գոյաձևերը կարելի է բաժանել երեք հիմնական խմբի՝ աստղային, մոլորակային և դիֆուզ (ցրված):

Տիեզերքի՝ մեր դիտումների համար մատչելի մասում, նյութի հիմնական մասը խտացված է աստղերում՝ ճառագայթող շիկացած գազային գնդերում: Չնայած նրանց կանգվածների, չափերի և ճառագայթման հզորության աներևակայելի բազմազանությանը, աստղերի քիմիական բաղադրությունը գրեթե նույնն է (ըստ քաշի 70% ջրածին, 28% հելիում և մնացած բոլոր քիմիական էլեմենտները՝ 2%):

Աշնան և ամռան պարզ գիշերներին երկնակամարի վրա դիտվող Ծիր Կաթնի պայծառ շերտը մեծ հեռավորությունների վրա գտնվող տասնյակ միլիարդավոր աստղերի լույսի ձուլման արդյունք է: Այդ աստղերն անզեն աչքով կամ աստղադիտակներով առանձին դիտվող աստղերի հետ միասին կազմում են մի հսկայական համակարգություն՝ Գալակտիկան (մեծատառով): Արեգակը՝ մեկ ամենամոտ աստղը, իր ընտանիքի՝ մոլորակային համակարգության հետ մտնում է Գալակտիկայի կազմի մեջ, որպես մի շարքային անդամ:

Գալակտիկայում հաշվվում է մոտ 100 միլիարդ աստղ: Համաձայն ժամանակակից տվյալների, Արեգակի նման, նրանցից շատերի

շուրջը գոյություն ունեն սառը, պինդ արբանյակներ՝ մոլորակներ:

Մոլորակային նյութը Գալակտիկայում շատ աննշան տեղ է գրավում: Նրա ընդհանուր զանգվածը չնչին է: Բավական է հիշեցնել, օրինակ, որ Արեգակնային համակարգության բոլոր մոլորակների ընդհանուր զանգվածը կազմում է համակարգության ամբողջ զանգվածի 0,14‰-ը:

Բացի միայնակ աստղերից, ինչպիսին Արեգակն է, Գալակտիկայում հաճախ են հանդիպում ձգողական ուժերով իրար հետ կապված աստղերի խմբեր՝ կրկնակի, եռակի և բազմակի աստղեր, աստղակույտեր ու աստղասփյուռներ:

Գալակտիկայում շատ կան նաև նոսր, դիֆուզ նյութից՝ գազից ու փոշուց կազմված գոյացումներ: Նրանց մեծ մասը իրենցից ներկայացնում են դիֆուզ նյութի առանձին կուտակումներ՝ տարբեր դասերի միգամածություններ: Դիֆուզ նյութը միջաստղային տարածության մեջ հանդիպում է ամպաձև կառուցվածք ունեցող գազափոշային միջավայրի ձևով: Գազային նյութի քանակը Գալակտիկայում մոտ տասն անգամ ավելի է փոշայինից: Նրա քիմիական բաղադրության մեջ գերիշխող քիմիական էլեմենտը ջրածինն է:

Տիեզերքի դիտվող մասում մեր Գալակտիկան իր տեսակի մեջ միակը չէ: Ժամանակակից խոշորագույն աստղադիտակներով հնարավոր է դիտել շուրջ 100 միլիոն գալակտիկաներ (փոքրատառով): Այդ կարևոր հայտնագործությունը կատարվեց ընդամենը մի քանի տասնամյակ առաջ, աշխարհի խոշորագույն աստղադիտակների կառուցումից հետո միայն, երբ հաջողվեց մոտակա գալակտիկաները բաժանել առանձին աստղերի: Մինչ այդ, նրանք բոլորը ընդունվում էին միգամածությունների տեղ:

Գալակտիկաներն իրարից տարբերվում են ինչպես իրենց ձևով, այնպես էլ նյութի աստղային և դիֆուզ ձևերի հարաբերական պարունակությամբ: Կան գալակտիկաներ, մեծ մասամբ անկանոն ձևի, որոնք խիստ մեծ քանակությամբ դիֆուզ նյութ են պարունակում: Օրինակ, մեր Գալակտիկայի արբանյակ-գալակտիկաների՝ Մագելանի Մեծ և Փոքր Ամպերի զանգվածի կեսից ավելին կազմում է նյութի դիֆուզ ձևը: Կան նաև այնպիսի գալակտիկաներ, որոնք գրեթե զուրկ են դիֆուզ նյութից: Այդպիսին են, օրինակ, մեզ ամենամոտ գալակտիկաներից մեկի՝ նշանավոր Անդրոմեդայի միգամածության (M 31) արբանյակ-գալակտիկաները NGC 205-ը և M 32-ը *, որոնք պատկանում են, այսպես կոչված, էլիպսաձև գալակտիկաների դասին: Մեր Գալակտիկան և Անդրոմեդայի միգամածությունը պատկանում են սպիրալաձև գալակտիկաների դասին և դիֆուզ նյութի պարունակությամբ միջանկյալ դիրք են գրավում. վերջինս կազմում է նրանց ընդհանուր զանգվածի մի քանի տոկոսը միայն:

Գալակտիկաների ճնշող մեծամասնությունը մտնում է ֆիզիկական խմբերի՝ գալակտիկաների բազմակի սիստեմների ու կույտերի մեջ:

Այնպես, ինչպես տիեզերական նյութի մեծ մասը խտացված է աստղերում, աստղերի մեծամասնությունը հավաքված է գալակտիկաներում:

Դիտողական աստղագիտության բոլոր տվյալները վկայում են այն մասին, որ նյութի տիեզերական հիմնական գոյաձևերից Գալակտիկայում նյութի զարգացման մեջ հատուկ դեր է խաղում աստղային ձևը: Այդ իմաստով աստղերի առաջացման ու զարգացման հարցերի հաջող լուծումը սկզբունքային նշանակություն ունի նյութի մյուս գոյաձևերի կոսմոգոնիայի համար: Այդ հարցերի լուծմանը իրենց մոտեցման տեսակետից կոսմոգոնիայում կան երկու հիմնական ուղղություններ՝ հին կամ տեսական և՝ նոր կամ դիտողական:

ԱՍՏՂԱՌԱՋԱՑՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ՝ ՀԻՆ ԴԻՐՔԵՐԻՑ. Հին կամ տեսական ուղղությունը կոսմոգոնիայում իր հետազոտությունների հիմքում դնում է աստղերի և նրանց սիստեմների ձևավորման ու զարգացման մտահայեցողական սխեմաները:

Այդ ուղղության կողմնակիցները պաշտպանում են դեռևս Կանտի ու Լապլասի կողմից առաջ քաշված և հետագայում անգլիացի աստղագետ Ջինսի մշակած այն տեսակետը, որի համաձայն երկնային մարմինների առաջացումը տիեզերական դիֆուզ նյութի՝ փոշու կամ գազի խտացման արդյունք է:

Մասնավորապես, նշանավոր սովետական գիտնական, ակադեմիկոս Օ. Յու. Շմիդը՝ իր աշակերտների հետ միասին, երկար տարիներ զարգացնում էր մի հիպոթեզ, որի համաձայն Արեգակնային համակարգության մոլորակները ձևավորվել են Գալակտիկայում Արեգակի շարժման ժամանակ, նրա ձգողական դաշտի կողմից բռնագրավված փոշային նյութի խտացման միջոցով:

Աստղային կոսմոգոնիայում դիֆուզ նյութի խտացման տեսակետը ներկայումս զարգացնում են ակադեմիկոս Վ. Գ. Ֆեսենկովը և ուրիշներ՝ մեր երկրում, և շատ գիտնականներ արտասահմանում (Ֆ. Հոյլի խումբը Անգլիայում, Կ. Վեյցզեկերը՝ ԳՖՌ-ում, Յա. Օորտը՝ Հոլանդիայում, Ջ. Հերբիգը և ուրիշներ՝ ԱՄՆ-ում և ուրիշներ):

Նրանց բոլորի համար ելման կետը Ջինսի կողմից մշակված գրավիտացիոն անկայունության տեսությունն է: Վերջինիս համաձայն, մեծ զանգված ու չափեր ունեցող համասեռ դիֆուզ միջավայրում ժամանակի ընթացքում առաջանում են խտության անհամասեռություններ, որոնք հանգեցնում են նրա տրոհմանը: Դիֆուզ նյութի այդ ձևով առաջացած առանձին զանգվածներ այնուհետև աստիճանաբար սեղմվում են սեփական ձգողական դաշտի ազդեցության տակ և վերածվում աստղերի:

Այդ ուղղության ներկայացուցիչների մեծամասնության համար բնորոշ է կտրվածությունը դիտողական տվյալներից և խնդրի մաթեմատիկական կողմով հրապուրվելը: Այդ է պատճառը, որ նրանց հետազոտությունները հաճախ հանգեցրել են դիտումների հետ հակասության մեջ գտնվող արդյունքների: Ավելին, որոշ դեպքում նրանք հակասում են բնության հիմնական օրենքներին: Այսպես, օրինակ, գերմանացի ֆիզիկոս Պ. Յորդանը մշակել է մի «տեսություն», որի համաձայն աստղերն առանց որևէ պատճառի առաջանում են ոչնչից, իսկ անգլիացի աստղագետներ Ֆ. Հոյլը, Գ. Բոնդին և Տ. Գոլդը առաջ են քաշել մի հիպոթեզ՝ Տիեզերքում նյութի մշտական ծննդի վերաբերյալ: Իդեալիստական փիլիսոփայական կոնցեպցիաների վրա հիմնված այդ հիպոթեզները շատ հեռու են իսկական գիտական տրամաբանությունից: Հետևաբար, նրանք չեն կարող լուրջ քննարկման առարկա դառնալ:

Դիֆուզ նյութի խտացման կոնցեպցիայի մշակմանը նվիրված հետազոտություններում, բնականաբար, կան նաև այնպիսիները, որոնց ելակետը նյութի տիեզերական գոյաձևերի վերաբերյալ որոշ դիտողական տվյալներն են:

Այդ հետազոտություններից հիշատակության արժանի են ակադեմիկոս Վ. Գ. Ֆեսենկովի և Դ. Ա. Ռոժկովսկու հիպոթեզը՝ թելիկաձև միգամածություններում դիֆուզ նյութի խտացման միջոցով աստղերի առաջացման վերաբերյալ և Օորտ-Սպիտցերի հիպոթեզը՝ ջերմ աստղերի ճառագայթման ազդեցության տակ շարժվող միգամածությունների և միջաստղային դիֆուզ նյութի հանդիպման ժամանակ դիֆուզ նյութի խտացման հետևանքով աստղերի ձևավորվելու մասին:

Պետք է, սակայն, խոստովանել, որ նույնիսկ այս վերջին հիպոթեզները, որոնք փորձում են իրենց եզրակացությունները համաձայնեցնել դիտողական փաստերի հետ, ի վիճակի չեն բացատրելու աստղառաջացման մի շարք երևույթներ:

Հենց այդ տեսակետից շատ ավելի կենսունակ են կոսմոգոնիայի նոր ուղղության հետազոտությունները, որը զարգացվում է Բյուրականի աստղադիտարանում: Նրանց մեջ աստղառաջացման երևույթների, աստղերի զարգացման հնարավոր ուղիների վերաբերյալ եզրակացությունները հիմնվում են աստղերում և նրանց ֆիզիկական սիստեմներում տեղի ունեցող երևույթների վերաբերյալ դիտողական տվյալների բազմակողմանի վերլուծության և ընդհանրացման վրա:

Բանն այն է, որ առանց խոր կերպով հասկանալու աստղերի առաջացումն ու զարգացումն արտացոլող և այդ երևույթների հետևանք հանդիսացող դիտողական փաստերը, առանց հասկանալու զարգացման երևույթների բազմազանությունն ու առանձնահատկությունները, անհնարին է վերստեղծել զարգացման պատկերը:

ԱՍՏՂԱՌԱՋԱՑՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ ԵՎ ԱՍՏՂԱՍՓՅՈՒՌՆԵՐԸ. Աստղերի առաջացման ու զարգացման հարցերով զբաղվող աստղագետն իր տրամադրության տակ ունի Գալակտիկայի ակնթարթային պատկերը միայն: Մինչդեռ աստղերի վիճակի էական փոփոխությունների համար անհրաժեշտ ժամանակամիջոցները բազմաթիվ անգամ գերազանցում են ո՛չ միայն աստղագիտության ողջ պատմության, այլև Երկրի վրա մարդկության գոյության ժամանակամիջոցը:

Ամերիկյան աստղագետ Օտտո Ստրուվեի պատկերավոր արտահայտությամբ, հետազոտողն այդ դեպքում գտնվում է նույն վիճակում, ինչ վիճակում կլիներ մի հեռավոր մոլորակից Երկիր ժամանած դիտողը, եթե իր առջև խնդիր դներ նկարագրել մարդկության զարգացումը, դիտելով մարդկանց կյանքը Երկրի վրա՝ ընդամենը մեկ վայրկյանի ընթացքում: Տեսնելով տարբեր հասակի մարդիկ՝ մանուկներ, երեխաներ, երիտասարդներ, միջահասակներ, տարիքավորներ ու ծերունիներ, նա կարող էր հանգել այն եզրակացության, որ մարդու զարգացումն ընթանում է մանուկներից դեպի ծերունիները: Սակայն նույն դիտողը ելնելով այն փաստից, որ մարդու զարգացումը կապված է չափերի աճի հետ, ոչ պակաս հիմք կունենար եզրակացնելու, որ մարդը վերջիվերջո դառնալու է փիղ: Նման զավեշտական սխալից խուսափելու համար դիտողը պետք է կարողանար որոշակիորեն տարբերել մարդու զարգացման տարբեր փուլերն այլ կենդանիների (տվյալ դեպքում՝ փղի) զարգացման փուլերից: Այլ կերպ ասած՝ նա պետք է ունենար մարդուն (անկախ տարիքից) այլ կենդանիներից տարբերող որևէ հայտանիշ:

Վերադառնալով աստղագետին՝ կարելի է ասել, որ նույնանման վիճակի մեջ չընկնելու համար չափազանց կարևոր է, որ նա կարողանա զանազանել զարգացման տարբեր ուղիներ ունեցող աստղերն իրարից և գտնել այն աստղերը, որոնք կազմում են տվյալ զարգացման շղթայի առանձին օղակները:

Հարց է ծագում. իսկ ի՞նչ հիմքեր կան կարծելու, որ Գալակտիկայում դիտվող աստղերը գտնվում են զարգացման տարբեր փուլերում:

* NGC և M—*միգամածությունների, աստղակույտերի և գալակտիկաների ցուցակների կրճատ նշանակումներն են, իսկ կողքին գրված թվերը՝ այդ սիստեմներին համապատասխանող համարները:*

Որոշակի ապացույցներ այդ պատկերացման օգտին ստացվեցին միայն 1947 թվականին, երբ աստղագիտական դիտումների հիման վրա առաջին անգամ գիտականորեն հիմնավորվեց նյութական աշխարհի փոփոխելիության և կարգացման վերաբերյալ մատերիալիստական դրույթը՝ աստղերի և նրանց ֆիզիկական խմբերի մասին:

Այդ կարևորագույն արդյունքին հանգեց Վ. Հ. Համբարձումյանը՝ Գալակտիկայում աստղերի ֆիզիկական խմբավորումների մի նոր դասի հայտնագործման հիման վրա, որոնց նա տվեց աստղասփյուռներ անունը:

Աստղասփյուռները միատեսակ ֆիզիկական հատկություններ ունեցող աստղերի խմբեր են, որոնց մեջ աստղերի խտությունը (քանակը միավոր ծավալում) զգալիորեն ավելի փոքր է, քան Գալակտիկայի ընդհանուր աստղային դաշտում: Այդ է պատճառը, որ մինչև վերջերս նրանք չէին հայտնաբերվել: Սակայն աստղասփյուռներում շատ մեծ է որոշակի ֆիզիկական դասերի աստղերի խտությունը, աստղեր, որոնք գրեթե բացակայում են շրջակա աստղային դաշտում *: Հենց այդ փաստը հիմք հանդիսացավ աստղասփյուռների հայտնագործման համար:

Մի շարք փաստեր վկայում են այն մասին, որ աստղասփյուռները չափազանց անկայուն սիստեմներ են և գտնվում են քայքայման վիճակում: Աստղասփյուռների հասակը՝ նրանց գոյության ժամանակամիջոցը, չի անցնում մի քանի տասնյակ միլիոն տարուց, իսկ մի շարք դեպքերում շատ ավելի փոքր է: Այսպես, օրինակ, Պերսեյ I աստղասփյուռի հասակը (նրա կազմի մեջ է մտնում h և $\chi$ Պերսեյի կրկնակի աստղակույտը) 10—15 միլիոն տարի է, իսկ Օրիոնի միգամածության հետ կապված աստղասփյուռի հասակը փոքր է 10 միլիոն տարուց:

Այդ նշանակում է, որ աստղասփյուռները շատ երիտասարդ (ժամանակի տիեզերական մասշտաբով) սիստեմներ են: Բանն այն է, որ Գալակտիկայի աստղերի մեծամասնության, ինչպես և Արեգակի հասակը հաշվվում է միլիարդավոր տարիներով: Մյուս կողմից, հետազոտությունները ցույց են տվել, որ յուրաքանչյուր ֆիզիկական խմբավորման մեջ մտնող աստղերն ունեն համատեղ ծագում: Ուստի, աստղասփյուռների երիտասարդությունից բխում է, որ աստղասփյուռների կազմի մեջ մտնող աստղերն էլ երիտասարդ են և ձևավորվել են համեմատաբար վերջերս:

Այստեղից անմիջականորեն հետևում է, որ Գալակտիկայում աստղերի ձևավորման երևույթները, որոնք սկսվել են միլիարդավոր տարիներ առաջ, ներկայումս շարունակվում են: Այս չափազանց կարևոր կոսմոգոնիական եզրակացությունը ջախջախիչ հարված հասցրեց մինչ այդ գիտության մեջ իշխող իդեալիստական այն պատկերացմանը, որի համաձայն Գալակտիկայում բոլոր աստղերն առաջացել են միաժամանակ, շատ հեռավոր անցյալում:

Այսպիսով, իրոք, աստղասփյուռների գոյության փաստից բխում է, որ Գալակտիկան կարգացման տարբեր փուլերում գտնվող աստղերի մի համակարգ է, իսկ աստղասփյուռները՝ աստղառաջացման օջախներն են նրա ներսում:

Աստղասփյուռների «հայրենիքում»՝ Բյուրականի աստղադիտարանում կատարված մանրամասն ուսումնասիրությունը ցույց տվեց, որ աստղերն աստղասփյուռներում ձևավորվում են խմբերով՝ կրկնակի, եռակի, բազմակի աստղերի և աստղակույտերի ձևով:

Սովետական Միության, Հոլանդիայի, Մեքսիկայի, ԱՄՆ-ի և այլ երկրների գիտնականների հետազոտությունները լրիվ հաստատեցին արմատական նշանակություն ունեցող այս եզրակացությունները:

Աստղասփյուռների հայտնագործումը և ուսումնասիրությունը կարևոր նշանակություն ունեցան նաև նախաստղային նյութի բնույթի տեսանկյունից:

ԱՐԴՅՈՔ ԴԻՖՈՒԶ ՆՅՈՒԹԻ՞Ց ԵՆ ՁԵՎԱՎՈՐՎՈՒՄ ԱՍՏՂԵՐԸ. Ներկայումս արդեն գիտական աշխարհում իշխում է միասնական կարծիք՝ աստղերի առաջացման շարունակվող և խմբական բնույթի, աստղասփյուռների՝ որպես աստղառաջացման օջախների վերաբերյալ: Սակայն նախաստղային նյութի բնույթի հարցը լուրջ վիճաբանությունների առարկա է:

Վերևում արդեն նշվեց, որ սովետական և արտասահմանյան շատ գիտնականներ կարգացնում են դիֆուզ նյութի խտացման միջոցով աստղերի ձևավորման կոնցեպցիան: Այդ կոնցեպցիան ելնում է այն լավ հայտնի դիտողական փաստից, որ Գալակտիկայի այն տիրույթներում, ուր ներկայումս շարունակվում են աստղառաջացման երևույթները, սովորաբար կա մեծ քանակությամբ դիֆուզ նյութ: Այսպես, օրինակ, O—աստղասփյուռները կապված են հսկայական դիֆուզ միգամածությունների հետ (օրինակ, Օրիոնի, NGC 2244, NGC 2264 և այլն): Որպես կանոն դիֆուզ միգամածությունների հետ են կապված նաև T—աստղասփյուռները:

Սակայն այդ հանգամանքը չի կարող դիտվել որպես դիֆուզ նյութից աստղերի ձևավորման կոնցեպցիայի ապացույց: Ավելին, սովետական աստղագետ Բ. Ա. Վորոնցով-Վելյամինովը դեռևս 1930 թվականին, հիմնվելով մի շարք ֆիզիկական դասերի աստղերի կողմից (Վոլֆ-Ռայե, P Կարապի տիպի, էմիսիոն գծերով աստղեր, Նոր և Գերնոր աստղեր) նյութի արտավիժման և արտահոսքի դիտվող երևույթների վրա, կարգացրեց մի հիպոթեզ, որի համաձայն դիֆուզ միգամածությունները ձևավորվում են հիշյալ աստղերի նյութից: Ուսումնասիրությունը որոշակիորեն վկայում է այն մասին, որ կապը դիֆուզ միգամածությունների և երիտասարդ աստղերի միջև պատահական չէ. նրանք իրար հետ կապված են իրենց ձևավորման պահից:

Ակադեմիկոս Գ. Ա. Շայնը և Վ. Ֆ. Գազեն, հանրագումարի բերելով դիֆուզ միգամածությունների և երիտասարդ աստղերի հետ նրանց ունեցած կապի ուսումնասիրությանը նվիրված իրենց բազմաթիվ հետազոտությունների արդյունքները, հանգել են այն եզրակացության, որ «Տարածության այն տիրույթներում, որտեղ եղել են ջերմ աստղերի մեծ խմբավորումների (աստղասփյուռների) կամ աստղերի փոքր խմբավորումների, կամ նույնիսկ առանձին ջերմ աստղերի ձևավորման պայմաններ, ըստ երևույթին, եղել են նաև գազային միգամածությունների ձևավորման պայմաններ, հնարավոր է միևնույն աղբյուրից: Սակայն ջերմ աստղերի ձևավորումը կամ ոչ միշտ է ուղեկցվել միգամածությունների ձևավորմամբ, կամ միգամածությունների գոյության ժամանակամիջոցը կազմում է ջերմ աստղերի գոյության ժամանակամիջոցի փոքր մասը»:

Գ. Ա. Շայնի, ինչպես նաև Բ. Ե. Մարգարյանի կողմից հարցի մանրամասն վերլուծությունը վկայում է երկրորդ հնարավորության օգտին: Երիտասարդ աստղերի և դիֆուզ միգամածությունների գոյակցության ժամանակամիջոցը շատ կարճ է աստղերի կյանքի տևողության համեմատ:

Դիֆուզ նյութի խտացման հետևանքով աստղերի ձևավորման՝ իր պարզությամբ հրապուրիչ կոնցեպցիան անհաղթահարելի դժվարությունների է հանդիպում մի շարք դիտողական փաստերի հետ շփվելիս: Մասնավորապես, այն ի վիճակի չէ բացատրելու աստղասփյուռներում դիտվող շատ երևույթներ: Որպես օրինակ կարելի է բերել աստղասփյուռների լայնացման երևույթը: Այն տեսականորեն կանխագուշակվել է դեռևս 1949 թվականին, Բյուրականի աստղադիտարանում և հաստատվել առանձին աստղասփյուռների աստղերի շարժումների՝ մեկ մոտ և արտասահմանում (Հոլանդիա, ԱՄՆ) կատարված ուսումնասիրությունների հիման վրա:

Հիշատակության արժանի է նաև Պերսեյ I աստղասփյուռի օրինակը: Չափազանց երիտասարդ աստղերի մեծ առատությունն այդ աստղասփյուռում վկայում է այն մասին, որ աստղերի ձևավորումն այնտեղ ներկայումս շարունակվում է: Մինչդեռ Պերսեյ I աստղասփյուռը հատկապես աղքատ է դիֆուզ նյութից: Այդ աստղասփյուռում դիֆուզ նյութի գրեթե լրիվ բացակայությունը և աստղերի շարունակվող ձևավորումը միանգամայն անհամատեղելի են դիֆուզ նյութից աստղերի խտացման կոնցեպցիայի հետ:



Նկ. 1. Z Պերսայի շուրջը գտնվող O—աստղասփյուռի աստղերի շարժումները, որոնք հաստատում են նրա լայնացումը: Սլաքները ցույց են տալիս շարժման ուղղությունը, իսկ նրանց երկարությունը՝ համեմատական է շարժման արագությանը (ըստ հոլանդացի աստղագետ Ա. Բլաաուի):

Քննարկվող հարցի տեսակետից լուրջ հետաքրքրություն է ներկայացնում մեքսիկացի աստղագետ Գ. Հարոյի կարծիքը, որը երիտասարդ անկայուն աստղերի ուսումնասիրության գծով ճանաչված հեղինակություն է: Անկայուն, բռնկվող աստղերի բազմաթիվ, մեծ մասամբ Տոնանցինտլայի (Մեքսիկա) աստղադիտարանում իր աշակերտների հետ միասին կատարած դիտումների հիման վրա նա վերջերս հանգել է այն եզրակացության, որ այդ աստղերի առնվազն մի մասը չէր կարող ձևավորվել գազային նյութի խտացման հետևանքով:

Վերը բերված, ինչպես նաև մի շարք այլ դիտողական փաստեր, որոնք հայտնի դարձան աստղասփյուռների հայտնագործումից հետո, ստիպում են հրաժարվել մինչ այդ գիտության մեջ անվերապահորեն իշխող դիֆուզ նյութի խտացման կոնցեպցիայից: Այդ փաստերը միաժամանակ անխուսափելիորեն բերում են այն միակ հնարավոր եզրակացության, որ աստղերը և միգամածությունները ձևավորվում են համատեղ, ոչ աստղային բնույթի մարմիններից: Հենց այդ նոր պատ-

---

* Կան երկու տիպի աստղասփյուռներ՝ ջերմ հսկա և գերհսկա աստղերի (O—աստղասփյուռներ) և սպեկտրներում էմիսիոն գծեր ունեցող թզուկ անկայուն աստղերի (T—աստղասփյուռներ):

կերացումն է ընկած նախաստղերի հիպոթեզի հիմքում:

ՆԱԽԱՍՏՂԵՐԻ ՀԻՊՈԹԵԶԸ. Աստղասփյուռների տեսության մեջ առաջին անգամ առաջ քաշվեց այն տեսակետը, որ Տիեզերքում, մասնավորապես Գալակտիկայում, գոյություն ունեն առայժմ անհայտ բնույթի մարմիններ, որոնցից ձևավորվում են թե՛ աստղերը և թե՛ դիֆուզ նյութը: Այդ մարմիններին տրվեց նախաստղեր անունը: Դիֆուզ նյութի խտացման հիպոթեզին տրամագծորեն հակառակ այս նոր պատկերացման համաձայն նյութի տիեզերական գոյաձևերի զարգացումն ընթանում է մեծ խտություններից դեպի փոքր խտությունները: Այդ հիպոթեզը ելնում է այն հիմնական փաստից, որ ներկայումս լայնացող աստղասփյուռները կամ նրանց կազմի մեջ մտնող քայքայվող բազմակի աստղերը, աստղաշղթաները նախկինում պետք է որ ունենային համեմատաբար փոքր չափեր, հետևաբար՝ մեծ խտություն: Ուստի, պետք է ենթադրել, որ աստղերն աստղասփյուռներում ձևավորվում են գերխիտ մարմինների՝ նախաստղերի տրոհման հետևանքով:

Այս նոր, առաջին հայացքից շատ անսպասելի տեսակետը հենց սկզբից հանդիպեց սովետական և արտասահմանյան շատ գիտնականների սկեպտիկ վերաբերմունքին: Բանը ո՛չ միայն այն է, որ նա խիստ հակադրվում է մինչ այդ գիտության մեջ իշխող դիֆուզ նյութի խտացման կոնցեպցիային: Գործն ավելի բարդանում է նրանով, որ գիտությանը հայտնի չեն մեծ զանգված ունեցող գերխիտ տիեզերական այնպիսի մարմիններ, որոնք իրենց բնույթով մոտ լինեին ենթադրվող նախաստղերին:

Այսպիսով, արդեն, նախաստղերի հիպոթեզի առաջադրումից անմիջապես հետո, նրա դեմ առաջ քաշվեց այն լուրջ առարկությունը, որ գիտությանը ոչինչ հայտնի չէ գերխիտ մարմինների հնարավոր գոյության մասին: Սակայն, այդ հարցի մանրամասն ուսումնասիրության հիման վրա, վերջին տարիներս Վ. Հ. Համբարձումյանին և Գ. Ս. Սահակյանին հաջողվեց ապացուցել, որ սկզբունքորեն կարող են գոյություն ունենալ նյութի այնպիսի գոյաձևեր, որոնց խտությունը հավասար է կամ նույնիսկ գերազանցում է ատոմների միջուկներում եղած խտությանը: Նրանց հետազոտություններով մշակվեց, այսպես կոչված, բարիոնային աստղերի տեսությունը, որոնց զանգվածի զգալի մասը կազմված է երկրային պայմաններում չափազանց անկայուն տարրական մասնիկներից՝ հիպերոններից *:

Սակայն նախաստղերի հիպոթեզի զարգացման համար այդքանը միայն բավական չէր: Անհրաժեշտ էր հետազոտություններ կատարել Տիեզերքում գերխիտ նյութի գոյության հնարավոր դրսևորումների հայտնաբերման ուղղությամբ:

ՆԱԽԱՍՏՂԱՅԻՆ ՆՅՈՒԹԻ ՈՐՈՆՈՒՄՆԵՐԸ. Նախաստղերի անմիջական դիտումները ներկայումս հայտնի մեթոդներով, այդ մարմինների փոքր չափերի և ցածր լուսատվության պատճառով հնարավոր չէ: Ուստի, նրանց գոյությունը կարելի է հայտնաբերել միայն անուղղակի ճանապարհով՝ նրանց հետ կապված կամ նրանց ներկայությամբ պայմանավորված երևույթների ուսումնասիրության միջոցով:

Այդ տեսակետից առաջին լուրջ տվյալներն ստացվեցին երիտասարդ անկայուն աստղերի ուսումնասիրությունից: Բնական էր սպասել, որ միայն վերջերս ծնված և դեռևս անկայուն վիճակում գտնվող այդ աստղերը կարող են ներկայումս պարունակել նախաստղային նյութի մնացորդներ:

T — աստղասփյուռների կազմի մեջ մտնող երիտասարդ աստղերի մոտ իրոք հայտնաբերվեցին այդ մասին վկայող որոշ փաստեր: Պարզվեց, որ նրանց պայծառության (ճառագայթման հզորության) դիտվող անկանոն, երբեմն շատ կարճատև և խիստ զգալի փոփոխությունները հնարավոր չէ բացատրել այդ աստղերի ջերմաստիճանի կամ չափերի փոփոխություններով: Այդ մասին են խոսում, մասնավորապես, պայծառության խիստ կարճատև բռնկումները՝ մի շարք անկայուն աստղերի մոտ, որոնց ժամանակ մի քանի րոպեում, երբեմն նույնիսկ մի րոպեից էլ կարճ ժամանակամիջոցում աստղի արտաքին շերտերում ազատագրվում է միլիարդավոր ջրածնային ռումբերի ընդհանուր էներգիային հավասար էներգիա:

Կան լուրջ հիմքեր կարծելու, որ այդ երևույթը պայմանավորված է աստղի արտաքին շերտերում ժամանակ առ ժամանակ ծնվող ճառագայթման անհայտ բնույթի աղբյուրներով: Դիտվող փոփոխությունների մանրամասն վերլուծությունը բերել է այն եզրակացության, որ էներգիայի աղբյուրները դուրս են գալիս աստղի ներքին շերտերից:

Չափազանց կարևոր է այն փաստը, որ աստղի արտաքին շերտերում, համեմատաբար ցածր ջերմաստիճանի պայմաններում, չեն կարող ընթանալ ջերմամիջուկային ռեակցիաներ, որոնք ժամանակակից պատկերացումների համաձայն հանդիսանում են աստղային էներգիայի աղբյուրները: Հետևաբար, պետք է ընդունել, որ այն երևույթները, որոնք պատճառ են դառնում անկայուն աստղերի բռնկումների, ջերմամիջուկային բնույթ չունեն:

Համաձայն Բյուրականում մշակված պատկերացման, այդ երևույթներն արդյունք են այն բա-

** Այդ մասին տե՛ս «Լենինյան ուղիով», № 8, 1964 թ., էջ 91:*



նի, որ աստղի արտաքին շերտերն են դուրս գալիս նախաստղային նյութի թանձրուկներ, որոնց անցումը աստղային վիճակի ուղեկցվում է էներգիայի մեծ քանակների ազատագրմամբ: Ճառագայթվող էներգիան այդ դեպքում հաճախ հատկապես ուժեղ է կապույտ և մանուշակագույն ճառագայթներում:

Հարկ է նշել, որ որոշ դիտողական փաստեր, օրինակ, խիստ անկայուն միջուկների առատությունը որոշ անկայուն աստղերի մթնոլորտներում, վկայում են այն մասին, որ անկայուն աստղերի արտաքին շերտերում էներգիայի անջատման երևույթը կապված է ատոմների տրոհման հետ, որի ժամանակ ձևավորվում են նոր միջուկներ, երբեմն՝ անկայուն:

Տիեզերքում նյութի գերխիտ գոյաձևերի ներկայության մասին շատ հետաքրքրական վկայություններ ստացվեցին գալակտիկաների բազմակողմանի հետազոտություններից:

ԳԵՐԽԻՏ ՆՅՈՒԹԻ ԴՐՍԵՎՈՐՈՒՄՆԵՐ՝ ԳԱԼԱԿՏԻԿԱՆԵՐՈՒՄ. Վերջին տասը տարում գալակտիկաների ուսումնասիրությանը նվիրված բյուրականյան հետազոտությունները համոզիչ կերպով վկայում են այն մասին, որ գալակտիկաների աշխարհում ներկայումս դիտվում են դինամիկական և ֆիզիկական անկայունության հսկայական մասշտաբների երևույթներ:

Պարզվել է, որ գալակտիկաների բազմակի սիստեմների և կույտերի զգալի մասը դինամիկական տեսակետից անկայուն է, և գտնվում է լայնացման պրոցեսում: Դիտումները ցույց են տալիս, որ նրանց կազմում կան զգալի թվով այնպիսի գալակտիկաներ, որոնք օժտված են այդ սիստեմներից հեռանալու համար անհրաժեշտ արագություններով, որի շնորհիվ հիշյալ սիստեմները համեմատաբար կարճ ժամանակամիջոցում պետք է քայքայվեն:

Մյուս կողմից, կասկածից դուրս է, որ գալակտիկաների սիստեմներում բաղադրիչ-գալակտիկաներն ունեն համատեղ ծագում: Այստեղից անմիջականորեն հետևում է, որ լայնացող, քայքայվող սիստեմները նախկինում ունեցել են շատ ավելի փոքր չափեր և ձևավորվել են ոչ աստղային բնույթի մեծ զանգված ունեցող գերխիտ մարմիններից:

Գալակտիկաների վերաբերյալ փաստական նյութի խոր վերլուծությունը բերել է այն եզրակացության, որ այդ մարմինները գտնվում են գալակտիկաների միջուկներում, որոնք կարևոր դեր են խաղում նրանց ձևավորման ու զարգացման մեջ:

Գալակտիկաների միջուկների կոսմոգոնիական ակտիվության այդ գաղափարը առաջադրվել է Վ. Հ. Համբարձումյանի կողմից 1954 թ. այն բանից հետո, երբ աշխարհի խոշորագույն՝ 5 մետր տրամագիծ ունեցող աստղադիտակով կատարված դիտումների միջոցով ամերիկացի աստղագետներ Բաադեն և Մինկովսկին ապացուցեցին, որ կոսմիկական ռադիոճառագայթման մի շարք հզոր աղբյուրներ համընկնում են հեռավոր գալակտիկաների հետ: Ռադիոճառագայթող այդ գալակտիկաներից՝ ռադիոգալակտիկաներից, մի քանիսի կրկնակի կառուցվածքը հիմք ծառայեց Բաադեի և Մինկովսկու համար՝ առաջ քաշելու մի հիպոթեզ, որի համաձայն ռադիոճառագայթման երևույթը հիշյալ դեպքերում հետևանք է երկու գալակտիկաների բախման ժամանակ առաջացող ֆիզիկական պրոցեսների: Այդ հիպոթեզը լայն ընդունելություն գտավ գիտական աշխարհում:

Սակայն Վ. Հ. Համբարձումյանը շուտով ցույց տվեց, որ գալակտիկաների ընդհարումները հազվագյուտ երևույթներ են և չեն կարող բացատրել ռադիոգալակտիկաների դիտվող առատությունը: Դրա հետ միասին ռադիոգալակտիկաների վերաբերյալ մի շարք փաստեր հիմք են տալիս կարծելու, որ ընդհակառակը, ռադիոգալակտիկաներում տեղի են ունենում բաժանման և նոր գալակտիկաների ձևավորման երևույթներ, որոնց հետևանք է նրանց ուժեղ ռադիոճառագայթումը:

Այդ պատկերացման օգտին են մասնավորապես խոսում երկու միջուկ ունեցող Կարապ A ռադիոգալակտիկայի միջուկների մի քանի հազար կիլոմետր վայրկյան արագությամբ իրարից հեռանալը, Կույս A ռադիոգալակտիկայի միջուկից ավելի քան 1000 կմ/վրկ արագությամբ դուրս նետված շիթի, ինչպես նաև մի շարք էլիպսաձև գալակտիկաների շուրջը արտասովոր կապույտ գույնի արբանյակների՝ կապույտ գալակտիկաների գոյությունը, որոնք, հավանաբար, նույնպես դուրս են նետվել համապատասխան գալակտիկաների միջուկներից և մի շարք այլ դիտողական փաստեր:

Նրանք միաժամանակ ցույց են տալիս, որ գալակտիկաների միջուկները ո՛չ միայն կարող են բաժանվել, առաջ բերելով կրկնակի գալակտիկաներ (Կարապ A, Պերսեյ A), այլ նաև դուրս շպրտել նյութի մեծ զանգվածներ՝ շիթերի (Կույս A), սպիրալաձև թևերի և արբանյակ-գալակտիկաների (M 51, կապույտ գալակտիկաներ) ու վիժվածքների ձևով:

Սակայն, եթե գալակտիկաների միջուկները կազմված լինեին միայն աստղերից, ապա նրանց բաժանումը, կամ նրանց կողմից նյութի մեծ զանգվածների արտավիժումը կլիներ անհնարին՝ դինամիկական տեսակետից:

Մյուս կողմից՝ հայտնի են դեպքեր, երբ գալակտիկաների միջուկներից տեղի է ունենում գազանյութի անընդհատ արտահոսք: Օրինակ, ռադիոաստղագիտական դիտումները վկայում են

որ մեր գալակտիկայի միջուկից ջրածինը անընդհատ արտահոսում է տարեկան մեկ արեգակնային պանգված հզորությամբ: Նույն հզորությամբ նյութի արտահոսք դիտվել է նաև $M$ 31 գալակտիկայի միջուկից: Մինչդեռ գազի խտությունը մեր Գալակտիկայի կենտրոնական ծավալում շատ փոքր է այդպիսի հզորությամբ արտահոսք ապահովելու համար:

Այդ հակասության, ինչպես նաև արտավիժումների հետ կապված, դինամիկական · բնույթի դժվարությունների հաղթահարման համար հարկ է ընդունել, որ գալակտիկաների միջուկներում գոյություն ունեն ոչ աստղային նյութի մեծ պանգվածներ: Վերը շարադրված և մի շարք այլ տվյալների հիման վրա Վ. Հ. Համբարձումյանը հանգել է այն եզրակացության, որ «...գալակտիկաների կենտրոններում, նրանց միջուկներում կան այնպիսի մարմիններ, որոնք իրենց պանգվածով բազմաթիվ անգամ գերազանցում են սովորական աստղերը, և ոչ դիֆուզ միգամածություններ են, ոչ էլ աստղեր: Որոշ գալակտիկաների կենտրոնում անսովոր մեծ պանգված ունեցող խիտ մարմինների գոյության վերաբերյալ այս եզրակացությունը մեզ թվում է դիտողական տվյալների անխուսափելի հետևանք»:



Նկ. 2. $M$ 51 գալակտիկան, որի արբանյակ գալակտիկան (վերևում) գտնվում է արտաքին սպիրալաձև թևի շարունակության վրա: Ենթադրվում է, որ արբանյակ գալակտիկան ձևավորվել է գալակտիկայի միջուկի կողմից դուրս նետված նյութից:

Այսպիսով, դիտողական տվյալների վերլուծությունից հետևում է, որ գալակտիկաների միջուկներում գոյություն ունեն ոչ աստղային վիճակներում գտնվող գերխիտ նյութի մեծ պանգվածներ, որոնց նյութից ձևավորվում են նոր գալակտիկաներ և նրանց կառուցվածքի առանձին մասեր (սպիրալաձև թևեր, ռադիոճառագայթող ամպեր և այլն):

Այս պատկերացման նոր հաստատումներ էին $M$ 82 գալակտիկայի միջուկից մոտ մեկ ու կես միլիոն տարի առաջ տեղի ունեցած ժայթքման հետևանքով նրանից մեծ արագությամբ ներկայումս հեռացող, շուրջ հինգ միլիոն արեգակնային պանգված ունեցող գազային ամպի լուսանկարման 1963 թվականին կատարված դիտումները՝ ամերիկացի աստղագետներ Լինդսի և Սանդեյջի կողմից, և աստղանման ռադիոգալակտիկաների հայտնագործումը՝ Գրինշտեյնի, Մետյուզի և Շմիդի (ԱՄՆ) կողմից:

Եթե առաջին հայտնագործումը անմիջականորեն հաստատում է միջուկներից գազային նյութի մեծ պանգվածների արտավիժման կանխատեսված հնարավորությունը, ապա աստղանման ռադիոգալակտիկաների՝ փոքր չափեր ունեցող և, ինչպես ռադիո, այնպես էլ օպտիկական շատ հզոր ճառագայթում* արձակող գալակտիկաների գոյությունը վկայում է նրանց մոտ նյութի արտասովոր վիճակների մասին:

Իրոք, աստղանման ռադիոգալակտիկաների օպտիկական դիտումները շուտով ցույց տվեցին, որ նրանց մի մասի պայծառությունը ենթակա է անընդհատ և արագ փոփոխությունների: Այդ փաստը անբացատրելի է, եթե ենթադրենք, որ աստղանման գալակտիկաները կազմված են միայն աստղերից: Միլիարդավոր աստղերից կազմված գալակտիկայում աստղերը չէին կարող բոլորը միաժամանակ մեծացնել կամ փոքրացնել իրենց պայծառությունը: Ուստի պետք է ընդունել, որ աստղանման ռադիոգալակտիկաների դիտվող ճառագայթումը հիմնականում պայմանավորված է ոչ թե նրանց կազմում գտնվող աստղերի, այլ ոչ աստղային բնույթի գերխիտ մարմինների կողմից առաջ բերվող ճառագայթմամբ, ճառագայթում, որի հզորությունը միլիոնավոր անգամ գերազանցում է ամենապայծառ գերհսկա աստղերի ճառագայթման հզորությունը*:

* *Աստղանման ռադիոգալակտիկաների օպտիկական լուսատվությունը մի քանի տասնյակ, երբեմն նույնիսկ ավելի քան հարյուր անգամ գերազանցում է մեր Գալակտիկայի լուսատվությունը:*



Մեր խնդիրը չէ լուսաբանել գալակտիկաների միջուկների և նրանց էվոլյուցիայի հարցերը, սակայն քննարկվող պրոբլեմի տեսակետից հետաքրքրական է նշել, որ գալակտիկաների միջուկների ակտիվությունը պետք է որ կախված լինի նրանց մեջ պարունակվող ոչ աստղային բնույթի գերխիտ մարմինների ընդհանուր պանգվածից, որը, բնականաբար, նվազում է գալակտիկայի զարգացման հետ: Հետևաբար միջուկների ամենամեծ ակտիվությունը կարող է դիտվել ամենաերիտասարդ գալակտիկաների մոտ և այն աստիճանաբար պետք է մարի գալակտիկայի ծերացման հետ:

* *Հարկ է նշել, որ այդ մարմինների զանգվածը ևս պետք է շատ մեծ լինի՝ միլիոնավոր, տասնյակ միլիոնավոր անգամ մեծ Արեգակի զանգվածից:*

ԵԶՐԱՓԱԿՈՒՄ. Դիտողական փաստերի և նրանց վերլուծության՝ վերևում բերված համառոտ շարադրանքը պարունակում է կզալի թվով լուրջ փաստարկներ այն մասին, որ մեր շրջակա տիեզերական տարածության մեջ դիտվում են տարբեր մասշտաբների և հզորության երևույթներ՝ կապված աստղերի ու նրանց ֆիզիկական խմբավորումների ֆիզիկական և դինամիկական անկայունության հետ:

Աստղասփյուռների և գալակտիկաների սիստեմների դինամիկական անկայունության հետ կապված լայնացման և քայքայման երևույթները, անկայուն աստղերի և ռադիոգալակտիկաների ֆիզիկական անկայունության պանապան դրսևորումները (պայծառության բռնկումներ, ռադիոճառագայթում և ոչ ջերմային բնույթի ճառագայթում, նյութի անընդհատ արտահոսք, պայթյուններ՝ գալակտիկաների միջուկներում ու նյութի մեծ պանգվածների արտավիժումներ և այլն) վկայում են այն մասին, որ աստղերը և գալակտիկաները



Նկ. 3. $M$ 83 գալակտիկան, որի միջուկից մոտ 1,5 միլիոն տարի առաջ դուրս է շպրտվել շուրջ 5 միլիոն արեգակնային զանգված ունեցող գազանյութ, որը միջուկից ներկայումս հեռանում է ավելի քան հազար կիլոմետր մեկ վայրկյանում արագությամբ (նկարում այդ նյութը երևում է կենտրոնից դեպի վերև և ներքև ուղղված ելուստների ձևով):

ձևավորվում են մեծ խտություն և կանգված ունեցող ոչ աստղային բնույթի մարմիններից *:

Դժբախտաբար, առայժմ շատ քիչ բան է հայտնի նյութի նախաստղային գոյաձևերի կոնկրետ հատկությունների մասին, ինչպես նաև նրանց հետ կապված էներգիայի նոր աղբյուրների մասին:

Այդ կարևոր պրոբլեմի լուծումը չափազանց բարդանում է նախաստղային մարմինների անմիջական դիտումների անհնարինության պատճառով: Մյուս կողմից, եղած դիտողական փաստերը վկայում են այն մասին, որ հիշյալ երևույթներում ըզգալի դեր են խաղում նյութի կառուցվածքի նոր, գիտությանն առայժմ անհայտ օրինաչափություններ:

Իհարկե, միանգամայն բնական է փնտրել դիտվող երևույթների մեկնաբանությունը, որքան էլ նրանք անսպասելի և անհասկանալի թվան, գիտությանը հայտնի պատկերացումների շրջանակներում: Սակայն գիտության պատմությանը հայտնի են շատ դեպքեր, երբ նման մոտեցումը եղել է անպտուղ, քանի որ նոր երևույթների բացատրության համար պահանջվել են սկզբունքային տեսակետից նոր պատկերացումներ, երբեմն մինչև այդ իշխող պատկերացումներին տրամագծորեն հակառակ, երբ դիտվող երևույթների ճիշտ մեկնաբանությունն ստացվել է բնության նոր, մինչև այդ անհայտ օրենքների բացահայտումից հետո միայն:

Որպես այդ բանի փայլուն օրինակ կարելի է բերել Էյնշտեյնի հարաբերականության տեսության ծնունդը, առանց որի անհնար է հասկանալ նյութի վարքը լույսի արագության մոտ արագությունների դեպքում: Ինչպես հայտնի է, ներկայումս այդ տեսությունը հիմք է ծառայում միկրո և մակրո աշխարհում ընթացող շատ երևույթների բացատրության համար:

Հենց այդպիսի վիճակ է ստեղծվել ներկայումս նախաստղային մարմինների և նրանց էներգիայի աղբյուրների բնույթի պրոբլեմում: Ինչպես նշում է Վ. Հ. Համբարձումյանը, «Արդեն եղած աղքատիկ փաստերը (գալակտիկաների և նրանց սիստեմների վերաբերյալ—Լ. Մ.) խոսում են այն մասին, որ այդ տվյալները կարող են բերել հակասության էներգիայի (և նյութի) պահպանության օրենքի հետ՝ նրա ժամանակակից տեսքով, որը սահմանափակված է էներգիայի մեզ հայտնի ձևերով, և պահանջել այդ օրենքի ընդհանրացում»:

Հակառակ մոտեցումը, որը ժխտում է նյութի կառուցվածքի և կարգացման նոր օրինաչափությունների հնարավորությունը, չի կարող քիչ թե շատ հիմնավորված լինել: Հենց այդ բանն է նկատի ունեցել սովետական նշանավոր Ֆիզիկոս Լ. Ա. Արցիմովիչը, երբ գրել է. «...ծայրահեղ ինքնապաստանություն կլիներ ենթադրել, որ ֆիզիկական գաղափարների կարգացման կարճատև պատմությունը տվել է մեզ բոլոր անհրաժեշտ բանալիները Տիեզերքում կարգացման պրոցեսները կառավարող օրինաչափությունների բացահայտման համար: Ուստի հենց այստեղ պետք է փնտրել ֆիզիկայի նոր օրենքներ»: Այս հետևությունն ուշագրավ է այն տեսակետից, որ պատկանում է ոչ թե աստրոֆիզիկոսի, որն իր աշխատանքում անմիջականորեն շփվում է աստղերում և գալակտիկաներում տեղի ունեցող երևույթների վերաբերյալ դիտողական փաստերի հետ, այլ էքսպերիմենտալ ֆիզիկայի ներկայացուցչի:

Փոքրիկ հոդվածի սահմաններում անհնար է շարադրել այն բոլոր բազմազան պատկերացումները, որոնք վերաբերում են քննարկվող պրոբլեմին: Մի բան պարզ է, որ այնպիսի մի բարդ պրոբլեմի վերջնական լուծումը, ինչպիսին նյութի տիեզերական գոյաձևերի կարգացման, մասնավորապես նախաստղային նյութի պրոբլեմն է, պահանջում է երկար տարիների աշխատանք: Այդ իսկ տեսակետից, վերևում շարադրված պատկերացումների մի մասը ժամանակի ընթացքում կարող է կրել էական փոփոխություններ կամ նույնիսկ մերժվել դիտողական նոր փաստերի ճնշման տակ: Սակայն, մեզ թվում է, որ արմատական այն հարցը, թե ինչ ուղղությամբ է ընթանում տիեզերական նյութի կարգացումը, արդեն մինչև օրս եղած լուրջ փաստարկների հիման վրա ստացել է իր որոշակի պատասխանը՝ խիտ վիճակներից դեպի նոսր վիճակները: Այդ պատկերացումը մի ուղեցույց է հետագա հետազոտությունների համար:

* Դիֆուզ նյութի խտացման կոնցեպցիայի կողմնակիցները, ներկայումս արդեն անկարող լինելով ժխտել տարբեր մասշտաբների անկայուն սիստեմների գոյության, նրանց լայնացման ու քայքայման, գալակտիկաների միջուկներում պարունակվող մեծ խտություն և զանգված ունեցող մարմինների գոյության, նրանց ճեղքման ու բաժանման մասին վկայող բազմաթիվ փաստերը, փորձում են նախաստղային մարմինների ձևավորումը բացատրել որպես սեփական ձգողական դաշտի ազդեցության տակ դիֆուզ նյութի ուժեղ խտացման արդյունք: Այդ տեսակետն է մասնավորապես զարգացվում «գերաստղերի» Հոյլ-Ֆաուլերի հիպոթեզում:

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*ՍՄԿՊ XXII համագումարը և ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումը նշեցին, որ մեր երկրում կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանում կարևոր նշանակություն է ստանում պարտիայի գաղափարական աշխատանքը և, առանձնապես, նրա վճռական բնագավառը՝ պարտիական պրոպագանդան:*

*Մարդկանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը, մարքսիզմ-լենինիզմի հիմունքներին տիրապետելը, պարտիայի քաղաքականության խոր ըմբռնումը կենսական անհրաժեշտություն են մեր քաղաքացիների համար: Այդ առումով խոշոր են պարտիական լուսավորության սիստեմի դերն ու նշանակությունը: Նախորդ տարիներին բազմազան էին ուսումնասիրվող նյութերը, թեմաներն ու ուսումնական պլանները: Այս ուսումնական տարում քաղաքական լուսավորության սիստեմի բոլոր օղակներում ուսումնասիրեցին մեր երկրում կոմունիզմի կառուցման, համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման, արդի էտապում կոմունիստական և բանվորական պարտիաների ստրատեգիայի ու տակտիկայի պրոբլեմները: Այդ նշանակում է, որ այժմ ավելի, քան երբևէ, կոմունիստների, և ոչ միայն կոմունիստների մարքս-լենինյան դաստիարակության հարցերը մղվել են առաջին պլանի վրա:*

*Պարտիայի Նոյեմբերյանի շրջանային կոմիտեն, սկզբնական պարտկազմակերպությունները որոշ հաջողության հասան քաղաքական լուսավորության սիստեմի շրջանակներն ընդլայնելու, ավելի շատ մարդ ընդգրկելու ասպարեզում: Մեզ մոտ այս տարի գործում էին 105 քաղխմբակ ու սեմինար, որոնցում ընդգրկված էին 2100 մարդ: Դրանցից ավելի քան 1200-ը կոմունիստներ են:*

*Քաղաքական կրթության ասպարեզում մեծ տեղ տրվեց ինքնուրույն ուսուցման կոլեկտիվ-սեմինարային ձևին: Ավելի քան 1100 մարդ ընդգրկված էին այդ սեմինարներում, ուր ուսումնասիրում էին մարքս-լենինյան տեսությունը: Պարտիական լուսավորության սիստեմի այս ուսումնական տարին մեր սկզբնական պարտկազմակերպություններն սկսեցին անհամեմատ ավելի կազմակերպված: Դրան մեծապես օգնեց այն, որ ըստ ենթաշրջանների յուրաքանչյուր ամսում առանձին օրեր հատկացվեցին քաղաքական ուսուցման խմբակների և սեմինարների պարապմունքներին. այդ օրերին պարտիական կազմակերպություններում քաղուսուցման պարապմունքներից բացի ոչ մի միջոցառում չի անցկացվում: Ըստ ենթաշրջանների միասնական օրերի սահմանումը հնարավորություն է ընձեռել պարտիական ապարատի, շրջկո-*

մի անդամների և ակտիվի միջոցով ստուգելու քաղխմբակների ու սեմինարների գործունեությունը, կոնկրետ միջոցառումներով վերացնելու նկատված թերությունները: Ավելին, դա մեզ միաժամանակ հնարավորություն է տալիս ավելի մոտիկից ծանոթանալու պարտիական լուսավորության ցանցի տարբեր խմբակների ու սեմինարների գործունեությանը, որի ընթացքում պրոպագանդիստներին ու կոնսուլտանտներին որոշակի օգնություն է արվում պարապմունքները հետաքրքիր ու գաղափարական բարձր մակարդակով անցկացնելու համար:

Բարելավել ենք նաև պրոպագանդիստների կազմը՝ ընդգրկելով այնպիսիներին, որոնք ունեն հարուստ գիտելիքներ և պրոպագանդիստական աշխատանքի փորձ ու հմտություն: Այժմ մեր պրոպագանդիստների 95 տոկոսից ավելին ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն:

Առավել դրականն այն է, որ պրոպագանդիստները բարձր պատասխանատվությամբ են մոտենում իրենց հանձնարարված պատվավոր գործին: Կապված լինելով գրականության, ամսագրերի և թերթերի հետ, նրանք ոչ միայն բարձրացնում են իրենց տեսական մակարդակը, այլև քաղաքական անհրաժեշտ գիտելիքներ են տալիս ունկնդիրներին, նրանց հանգամանորեն պարզաբանում են Սովետական Միության կոմունիստական պարտիայի քաղաքականությունը, միջազգային կոմունիստական շարժման ժամանակակից ակտուալ հարցերը:

Նոյեմբերյանի կաթնասնապահական, Լալվարի, Շավարշավանի սովխոզային, Արճիսի կոլտնտեսային, Դեբեդաշենի № 1 և Ղալաչայի դպրոցական ու շատ այլ սկզբնական պարտկազմակերպություններում պատշաճ ուշադրություն ցուցաբերվեց քաղխմբակների ու սեմինարների պարապմունքների գաղափարական բարձր մակարդակով անցկացմանը: Մեր պրոպագանդիստներից Մկրտիչ Մագուլյանը, Մերուժան Գասպարյանը, Նիկոլայ Կալիֆադիտին, Աշոտ Զուրաբյանը և շատ ուրիշներ իրենց աշխատանքը համարում են ստեղծագործական և ամեն ինչ անում են այն հետաքրքրական ու բովանդակալից դարձնելու համար:

Պարտիական պրոպագանդան կյանքի հետ կապելու, պրոպագանդիստներին օգնելու նպատակով շրջկոմի քաղլուս կաբինետը շրջանի կյանքն արտացոլող նյութեր և փաստեր է տրամադրում պրոպագանդիստներին ու սեմինարավարներին: Պրոպագանդիստներին շրջանի կյանքին և զարգացման հեռանկարներին ծանոթացնելու նպատակով, հերթական սեմինար պարապմունքներից մեկը մենք անց ենք կացրել Նոյեմբերյան ջրհան կայանի շինարարությունում և Դեբեդ (Ձորագետ) գետի հովտի սովխոզներում: Այցեգործական սովխոզներում մեր պրոպագանդիստները տեսան, թե երբեմնի կիսանապատը ինչպես է դարձել այգեստան: Լինելով ջրհան կայանի շինարարությունում, պրոպագանդիստները համոզվեցին, որ շինարարների ժրաջան աշխատանքով 2—3 տարում Դեբեդի ջրերը կբարձրանան լեռներն ի վեր: Նախատեսված է քառաստիճան կայանի միջոցով ջուրը բարձրացնել 400 մետր. թունելով անցնելով այն կոռոգի Ղալաչայի, Նոյեմբերյանի, Դովեղի կոլտնտեսությունների, Հաղթանակի ու Կողբի սովխոզի դաշտերը: Շրջանում ջրովի հողերի և այգիների տարածությունները կընդարձակվեն 4—5 հազար հեկտարով:

Այդ նույն սեմինար պարապմունքի մասնակիցները լսեցին նաև **Նոյեմբերյանը 1965—66 թվականներին** թեմայով զեկուցումը և ամբողջական պատկերացում կազմեցին շրջանի էկոնոմիկայի հետագա զարգացման մասին:



Շրջկոմը և նրա համապատասխան բաժինը պլանավորված աշխատանք են կատարում պրոպագանդիստական կադրերի հետ. այս տարի անց են կացվել պրոպագանդիստների, սեմինարավարների և սկզբնական պարտիական կազմակերպությունների երկու սեմինար պարապմունքներ, կազմակերպվել են դասախոսություններ՝ քաղլուսցանցի ուսումնական թեմաների վերաբերյալ: Բացի այդ, շրջկոմի քաղլուս կաբինետը և նրա մեթոդական խորհուրդը առաջավոր պրոպագանդիստների ու սեմինարավարների փորձի մասսայականացման նպատակով կազմակերպել է պրոպագանդիստների ենթաշրջանային 11 սեմինար պարապմունք, ուր քննարկվել են սեմինարավարներ Ռուբեն Մուսայելյանի, Մկրտիչ Մագուլյանի, Լևոն Բարսեղյանի, Աշոտ Զուրաբյանի, պրոպագանդիստներ Գևորգ Միսկարյանի, Դաթիկ Սահակյանի և այլոց ղեկավարած քաղխմբակների ու սեմինարների պարապմունքները: Պրոպագանդիստական աշխատանքի փորձի փոխանակման նպատակով ձեռնարկված նման միջոցները մեծ չափով նպաստում են պրոպագանդիստների պատասխանատվության բարձրացմանը, առաջավոր փորձի ուսումնասիրմանն ու արմատավորմանը:

Ունկնդրելով և ուսումնասիրելով պրոպագանդիստների ու սեմինարավարների պարապմունքները, պարտիական ապարատի աշխատողները, շրջկոմի անդամները օգնող խորհուրդներ են տալիս, նշում նկատված թերությունները:

Այս ուսումնական տարում շրջկոմի բյուրոն 3 անգամ անդրադարձել է կոմունիստների մարքս-լենինյան դաստիարակության հարցերին, քննարկել քաղաքական լուսավորության ցանցի վիճակը Ղալաչայի կոլտնտեսային, Հաղթանակի, Ջեյթունի, Կողբի սովխոզային սկզբնական պարտկազմակերպություններում: Շրջկոմի բյուրոյում պարզվեց, որ Ջեյթունի սովխոզային սկզբնական պարտկազմակերպության անդամներ Արտավազդ Բոզոյանը, Հովսեփ Հովհաննիսյանը, Սանատրուկ Պողոսյանը այնքան են մեծամտացել, որ կարծում են, թե իրենք ամեն ինչ գիտեն ու սեմինարի պարապմունքներին կարող են և չմասնակցել: Նրանց նման վերաբերմունքը արդյունք է այն բանի, որ սովխոզի պարտիական կազմակերպությունը (քարտուղար Նինա Մոսինյան) և սեմինարավարը (սովխոզի գլխավոր ագրոնոմ Ջավեն Սահակյան) հաշտվել էին այդ վիճակի հետ: Շրջկոմի բյուրոն պարտիական պատասխանատվության ենթարկեց մեծամտացած կոմունիստներին, ինչպես և Կողբի սովխոզային ու Ղալաչայի կոլտնտեսային սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարներ՝ Գուրգեն Ազատյանին ու Հրաչիկ Աբովյանին այն բանի համար, որ նրանք քար անտարբերություն են ցուցաբերել կոմերիտական քաղաքական լուսավորության սիստեմի աշխատանքներում եղած թերությունների նկատմամբ: Այդ միջոցառումների շնորհիվ մեր պարտիական կազմակերպություններում գրեթե այլևս չեն ձախողվում պարապմունքները, նվազագույնի են հասել բացակայությունները:

Վերջին մի քանի տարում մեզ մոտ անցկացված տեսական կոնֆերանսները հիմնականում վերաբերում էին գյուղատնտեսության և արդյունաբերության էկոնոմիկային: Իսկ վերջերս կայացավ տեսական կոնֆերանս, ուր քննարկվեց նոր տիպի պարտիայի գաղափարական հիմքերի մշակումը Վ. Ի. Լենինի կողմից և նրա հետագա զարգացումը ՍՄԿՊ ծրագրում: Կոնֆերանսին մասնակցեցին 100-ից ավելի կոմունիստներ:

Ինչ խոսք՝ կադրերի մարքս-լենինյան դաստիարակության հարցերը մեկ կամ մի քանի տեսական կոնֆերանսներով

չեն սպառվում. ղեկավար կադրերի գաղափարական դաստիարակությունը երկարատև և սիստեմատիկ գործունեություն է պահանջում, որպիսին մենք կամենում ենք ծավալել։ Նախատեսված է առաջիկա տեսական կոնֆերանսում քննարկել պարտիական կյանքի լենինյան նորմերը և դրանց կիրառման նշանակությունը կոմունիստական հասարակարգի կառուցման գործում։

Քաղխմբակների ու սեմինարների պարապմունքների ժամանակ մեծ տեղ է հատկացվում նոր մարդու դաստիարակության բարդ ու հրատապ հարցերին։ Այդ ուղղությամբ ուսանելի փորձ է կուտակվել Նոյեմբերյանի կաթնաանասնապահական սովխոզի Բաղանիսի տեղամասային պարտկազմակերպության քաղխմբակում, որի պրոպագանդիստն է ընկ. Սարգիս Հարությունյանը։ Ավելի քան 20 տարվա պրոպագանդիստական աշխատանքի փորձ ունի նա, երեք տարի ղեկավարում է նույն քաղխմբակը, որում ընդգրկված են 23 ունկնդիրներ. նրանք բոլորն էլ անմիջապես աշխատում են արտադրության վճռական տեղամասերում՝ որպես շարքային դաշտավարներ ու այգեգործներ, բրիգադավարներ ու ֆերմաների վարիչներ։ Հմուտ պրոպագանդիստը կարողացել է հասնել այն բանին, որ խիստ ջերմ հարաբերություններ են ստեղծվել քաղխմբակում. ասես թե մեկ համերաշխ ընտանիքի անդամներն են նրանք, բարձրացել է յուրաքանչյուրի պատասխանատվությունը կոլեկտիվի առաջ, կոլեկտիվի պատասխանատվությունը՝ յուրաքանչյուրի արարքի համար։ Դրան մեծ չափով օգնել է նաև այն, որ հիմնական թեմաների ուսումնասիրությանը զուգընթաց պրոպագանդիստը մեծ տեղ է հատկացնում նաև նոր մարդու դաստիարակության հարցերին։ Պարապմունքների ժամանակ այստեղ քննարկել են Նոր մարդը կոփվում է աշխատանքում, Կոլեկտիվիզմը և մարդասիրությունը, Կոմունիստական բարոյականությունը և կենցաղը, Մեկը բոլորի, բոլորը մեկի համար և այլ թեմաներ։

Նոր մարդու դաստիարակության գործում մեզ մոտ դեռևս լուրջ թերություններ կան, սակայն միշտ չէ, որ մեր բոլոր պրոպագանդիստները հասարակությանը ոտքի են հանում պորտաբուծության, անազնվության, գողության, սոցիալիստական օրինականության խախտումների և մեր հասարակարգին խորթ այլ երևույթների դեմ։

Պարտիայի շրջանային կոմիտեն և սկզբնական պարտկազմակերպությունները շատ բան են արել տնային տնտեսուհի ու թոշակառու կոմունիստների ինքնուրույն ուսուցման գործը պաշտաճ հունի մեջ դնելու ուղղությամբ։ Այս ուսումնական տարում կազմակերպվել են խմբային 17 կոնսուլտացիաներ, քննարկվել են 7 ռեֆերատներ։ Այժմ անհատական և խմբային կոնսուլտացիաների և զրույցների միջոցով մենք հետևում ենք մարքս-լենինյան թեորիայի ուսումնասիրությանը, օգնում, խորհուրդներ տալիս նրանց։ Ընդ որում մեծ ուշադրություն ենք նվիրում այն բանին, որ յուրաքանչյուր տնտեսական ղեկավար միաժամանակ լինի դաստիարակ, աշխատավորության ամենալայն խավերի շրջանում պարտիայի քաղաքականության կիրառողը։

Շրջկոմը և սկզբնական պարտիական կազմակերպություններն ավելի մեծ ուշադրություն են հատկացնում կոմունիստների և անպարտականների մարքս-լենինյան դաստիարակության այնպիսի կարևոր բնագավառներին, ինչպիսիք են՝ ժողովրդական համալսարանները, հարց ու պատասխանի երեկոները, բանավոր ամսագրերը, լեկտորիումները և այլն։ Մեզ մոտ, Նոյեմբերյանում և Կողբում, գործում են ժողովրդական երեք համալսարան՝ գրականության և արվեստի ֆակուլտետներով, իսկ Դեբեդաշենում՝ ժողովուրդների բարեկամության համալսարանը։

Ուսումնական տարվա ընթացքում մի քանի անգամ մեզ մոտ են եկել ՀԿՊ Կենտկոմի գաղափարական բաժնի բրիգադաները։ Նրանց և շրջանի պարտիական ու սովետական ղեկավար աշխատողների ուժերով շրջկենտրոնում, Ղոշղոթանում, Դեբեդաշենում, Կողբում և Այրումի պահածոների գործարանում կազմակերպեցինք հարց ու պատասխանի երեկոներ, որոնց մասնակցեցին մի քանի հազար ընկերներ։

Այդ երեկոները ցույց տվին, որ ընդլայնվել են կոմունիստների և անպարտականների մտահորիզոնի շրջանակները, նրանց հետաքրքրում են կոմունիստական ու բանվորական պարտիաների տակտիկայի ու ստրատեգիայի, արդի միջազգային դրության, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման կենսական բազում հարցերը։

Աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում մեծ է նաև դասախոսական պրոպագանդայի դերը։ Շրջկոմի դասախոսական խմբի 35 և Գիտելիք ընկերության շրջանային կազմակերպության ավելի քան 100 անդամները անցյալ տարի կարդացել են մոտ 1600 դասախոսություն կարևորագույն թեմաներով։ Ուշագրավ դասախոսություններով հանդես են գալիս դասախոսական խմբի անդամներ՝ Սամսոն Թամազյանը, Շահնազար Շահնազարյանը, Սամվել Զիլինգարյանը, Սերյոժա Սահակյանը և ուրիշներ։

Քաղկոմ-շրջկոմների քաղլուսկաբինետների գործունեության մասին ՀԿՊ Կենտկոմի որոշումից հետո նկատելիորեն աշխուժացել է նաև մեր քաղլուս կաբինետի գործունեությունը։ Սակայն դեռևս լուրջ թերություններ կան առանձին խմբակներում։ Պրոպագանդիստներից, սեմինարավարներից, դասախոսներից ոմանք մարքսիզմ-լենինիզմի դրույթները շարադրելիս չեն հրաժարվում շաբլոնից ու ցիտատամոլությունից, նյութը մատչելի չեն շարադրում։ Նրանց պարապմունքները հաճախ ընթանում են անհրապույր և ձանձրալի, զուրկ օրվա տապից։

Մի շարք պարտիական կազմակերպություններում (Ջեյթուն, Կողբ, Ղաչա, Դեբեդաշենի անտառարդյունտեսություն), քիչ մարդիկ (հատկապես կանայք և երիտասարդներ) են ընդգրկված քաղցանցում։ Առանձին պարտիական կազմակերպություններ անտեսում են մարքս-լենինյան թեորիան ինքնուրույն ուսումնասիրողների հետ տարվող աշխատանքը, այդ պատճառով էլ որոշ ընկերներ ինքնուրույն ուսումնասիրության անվան տակ ծուլություն են անում և առաջադիմելու փոխարեն ետ են գնում։

Աշխատավորների մարքս-լենինյան դաստիարակության հարցին անդրադարձավ պարտիայի շրջկոմն իր պլենումում։ Պլենումը կոնկրետ միջոցառումներ մշակեց այդ բնագավառի թերությունները վերացնելու, պարտիական լուսավորության ցանցի բոլոր խմբակների և սեմինարների պարապմունքները կազմակերպված ու գաղափարական բարձր մակարդակով անցկացնելու համար։

Գ. ՆԱԽՇՔԱՐՅԱՆ
ՀԿՊ Նոյեմբերյանի շրջկոմի
առաջին քարտուղար

# ԱՌԱՋԻՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

ՍՄԿՊ Կենտկոմը վերջին շրջանում մշակեց և իրականացնում է միջոցառումների մի ամբողջ սիստեմ, որի նպատակն է ուժեղացնել պարտիական ղեկավարությունը ժողովրդական տնտեսության նկատմամբ, բարձրացնել սկզբնական պարտիական կազմակերպությունների և պարտիական օրգանների դերն ու պատասխանատվությունը էկոնոմիկայում տիրող վիճակի համար, ապահովել կոմունիստական շինարարության խնդիրների հաջող կենսագործումը։ Այդ տեսակետից առանձնապես կարևոր նշանակություն ունեն պարտիայի Կենտկոմի մարտյան պլենումի մշակած միջոցառումները, որոնք ջերմորեն ընդունվեցին բոլոր աշխատավորների կողմից։

Այդ միջոցառումների նշանակությունը կարելի է ցույց տալ Ստեփանավանի շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում կատարված մի քանի հաշվարկներով։ Շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները միայն գյուղատնտեսական մթերքների գների բարձրացումից այս տարի կստանան մոտ 600 հազար ռուբլու լրացուցիչ եկամուտ։ Կոլտնտեսություններին պետությունը զիջել է 450 հազար ռուբլու երկարատև վարկեր։ Եթե հաշվելու լինենք, որ շրջանի կոլտնտեսությունների դրամական եկամուտներն անցյալ տարի կազմել են 2,3 միլիոն ռուբլի, ապա հասկանալի կլինի, թե գյուղի աշխատավորությունն ինչպիսի մեծ օգնություն է ստացել։ Ինչ խոսք, որ այդ մեզ պարտավորեցնում է ավելի լավ աշխատել և ապահովել պարտիայի Կենտկոմի որոշումների անշեղ կենսագործումը։

Պարտիայի շրջկոմը և սկզբնական պարտիական կազմակերպությունները ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումների կենսագործումը համարում են իրենց ամենագլխավոր ու անհետաձգելի խնդիրը։ Նրանք ձգտում են, որ գյուղատնտեսության բնագավառի ամեն մի աշխատող իմանա, թե ինչի համար է պայքարում և այդ պայքարում ինչպես պետք է լուծվեն նյութական շահագրգռվածության հարցերը։ Հենց այդ նպատակով էլ ավելի քան 500 ագիտատորներ, պրոպագանդիստներ, դասախոսներ, պարտիական ու սովետական ակտիվիստներ հանդես եկան զեկուցումներով ու դասախոսություններով և աշխատավորությանը հանգամանորեն պարզաբանեցին պլենումի որոշումների նշանակությունը։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների դռնբաց ժողովներում՝ կոլտնտեսային ու սովխոզային լայն ակտիվի մասնակցությամբ, քննարկվեցին պլենումի որոշումները. դրանք քննարկվեցին նաև շրջանային պարտիական ակտիվի ժողովում։

Պլենումի որոշումների լույսի տակ կոլտնտեսությունների ու սովխոզների



պարտիական կազմակերպություններն ու ողջ աշխատավորությունը նշեցին իրենց կոնկրետ անելիքները և, միաժամանակ, մեծագույն խանդավառությամբ պատրաստակամություն հայտնեցին՝ հաջողությամբ կատարելու այս տարվա արտադրական առաջադրանքները և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորները, ելնելով պարտիայի առաջադրած խնդիրներից, վերանայեցին այդ պարտավորությունները և որոշեցին այս տարի ստանալ 1100 տոննա միս, 10380 տոննա կաթ, 58 տոննա բուրդ, մեկ կովի կաթնատվությունը հասցնել 2000 կիլոգրամի։ Լուրջ քայլերի են դիմում նաև դաշտավարները։ Նրանք պարտավորվել են հացահատիկի մեկ հեկտարի բերքատվությունը հասցնել մոտ 15,3 ցենտների, կարտոֆիլինը՝ 120 ցենտների, լիովին ապահովելով անասնապահության կերի պահանջը։ Արտադրության այդպիսի մակարդակը հնարավորություն կտա հաջողությամբ կատարելու պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառքի ու հանձնումների այս տարվա պլանները, ինչպես նաև բավարար քանակությամբ մթերքներ առանձնացնելու՝ կոլտնտեսականների աշխօրերին բաշխելու համար։

Քանի որ մեր շրջանի էկոնոմիկայի համար հիմնականը անասնապահական մթերքների և, մասնավորապես, կաթի արտադրությունն է, ուստի այդ ուղղությամբ բերենք միայն մեկ օրինակ. այս տարի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները գրեթե այնքան կաթ կվաճառեն պետությանը, որքան նրանք ստացել են 1961 թվականին, ընդ որում այդ տարվա համեմատությամբ, մեկ կովի կաթնատվությունը կավելանա ավելի քան 400 կիլոգրամով։ Այս տնտեսական տարվանից անցել է ավելի քան 4 ամիս. մենք հնարավորություն ունենք ամփոփելու մեր աշխատանքի առաջին արդյունքները, անելով որոշ կանխատեսումներ։

Ավարտվել է անասունների ձմեռման պատասխանատու շրջանը։ Անասնապահների լավագույն աշխատանքի շնորհիվ այս տարի, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, 2—3 անգամ պակասել են անասունների անկումները, ավելացել է մթերքների արտադրությունը։ Կաթի համախառն արտադրությունը անցած չորս ամսում ավելացել է 15 տոկոսով. կոլտնտեսություններն ու սովխոզները 4500 ցենտներով ավելի կաթ են ստացել. մեկ կովի կաթնատվությունը ավելացել է 82 կիլոգրամով և չորս ամսում կազմում է 663 կիլոգրամ։ Այժմ ֆուրաժային մեկ կովից օրական ստացվում է 7 կիլոգրամից ավելի կաթ։

Անասնապահները լուրջ նախապատրաստական աշխատանք են տանում արոտային շրջանում յուրաքանչյուր կովի օրական կաթնատվությունը միջին հաշվով 10 կիլոգրամի հասցնելու համար։ Անասնապահական մթերքների արտադրության ավելացման համար ծավալված մրցության առաջավորների շարքերում են և այդ մրցությունը գլխավորում են կոմունիստները. այսպես, Գյուլագարակի կոլտնտեսային պարտիական կազմակերպության 45 անդամ-թեկնածուներից 13-ն աշխատում են կովաբուծական ֆերմայում։ Պարտիական կազմակերպության բյուրոն և պարտիական ժողովը ամեն ամիս քննարկում, վերլուծում են անասնապահության զարգացման ուղղությամբ կատարված աշխատանքի արդյունքները, մրցության ընթացքը. առաջավոր անասնապահներին և կթվորներին հանձնվում են փոխանցիկ վիմպելներ, արժեքավոր նվերներ։ Այդ և ձեռնարկված մյուս միջոցառումները տվել են իրենց ցանկալի ար-

դյունքը. անցած չորս ամսում կաթի համախառն արտադրությունն այստեղ ավելացել է 70 տոկոսով կամ ավելի է արտադրվել մոտ 100 տոննա կաթ։

Անասնապահական բոլոր մթերքների և, մասնավորապես, կաթի արտադրության ավելացման ուղղությամբ լավագույն ցուցանիշների է հասել Կույբիշևի սովխոզի կոլեկտիվը, որին ղեկավարում է փորձված տնտեսավար Ավագ Մկրտչյանը։ Անցած չորս ամսում, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կաթի արտադրությունն այստեղ ավելացել է ավելի քան 40 տոկոսով, իսկ մի կովի կաթնատվությունը՝ 100 կիլոգրամով։ Անասնապահական մթերքների արտադրության ավելացման գործում որոշակի հաջողությունների են հասել նաև շրջանի մյուս կոլտնտեսություններն ու սովխոզները։ Այդ նրանց հնարավորություն տվեց մսի վաճառքի 1965 թվականի առաջին եռամսյակի պլանը կատարել 136, կաթինը՝ 131,4 և ձվինը՝ 125,6 տոկոսով։

Հաշվառքները ցույց են տալիս, որ ստեփանավանցիներն առաջիկա շաբաթներում ևս կկատարեն անասնապահական մթերքների վաճառքի առաջին կիսամյակի պլանները։

Չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, մեծ ոգևորությամբ են աշխատում մեր դաշտավարները։ Նրանք ժամանակին ավարտեցին հացահատիկային, կերային կուլտուրաների, կարտոֆիլի և եգիպտացորենի ցանքը։ Գարնանացանի ընթացքում նշանակալի չափով բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, ավելացավ դաշտային աշխատանքների մեքենայացման ծավալը։ Շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները գործնական քայլեր են կատարում հողագործության ինտենսիվացումն ապահովելու ուղղությամբ։ Նրանք հողին տալիս են ավելի շատ հանքային ու տեղական պարարտանյութեր։ Առանձնապես մեծ ուշադրություն է նվիրվում կարտոֆիլի ցանքատարածությունների պարարտացմանը։ Կոլտնտեսություններն անցյալ տարվա փորձից համոզվել են, որ հանքային և տեղական պարարտանյութերի խառնուրդով պարարտացված հողերում ցանված կարտոֆիլից մեկ ու կես անգամ ավելի բերք է ստացվում։ Նկատի ունենալով այդ, նրանք այս տարի ավելի լայն մասշտաբներով պարարտացրին կարտոֆիլի դաշտերը։

Գարնանացանի հաջող ավարտումից հետո նախապատրաստական աշխատանքներ են տարվում ցանքատարածությունների մշակումը կազմակերպված սկսելու և բարձր որակով կատարելու համար։

Շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզներն այս տարի մասսայականորեն կկատարեն քիմիական քաղհան, որի համար արդեն ձեռք են բերել համապատասխան մեխանիզմներ և անհրաժեշտ քանակությամբ հերբիցիդներ։

Մշակելով սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման արմատական միջոցառումները, ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումը անհրաժեշտ համարեց մեկ անգամ ևս նշելու, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման խնդիրները հաջողությամբ չեն կարող լուծվել, եթե անհրաժեշտ չափով չբարձրացվեն գյուղական պարտիական բոլոր կազմակերպությունների և, մասնավորապես, գյուղատնտեսական մթերքների արտադրության առաջավոր բնագծերում գտնվող կոլտնտեսային ու սովխոզային սկզբնական պարտիական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը։

Նկատի ունենալով այդ, պարտիական շրջանային կոմիտեն մի շարք գործնական միջոցառումներ է իրականացնում կադրերի պատասխանատվությունը, պարտիական ու պետական կարգապահությունը, սկզբնական պարտիական



կազմակերպությունների դերը բարձրացնելու ուղղությամբ։ Ամենից առաջ լուրջ ու հետևողական աշխատանք է կատարվում տնտեսական կադրերին ու սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներին տնտեսության ու պարտիական ղեկավարության անհրաժեշտ գիտելիքներով զինելու ուղղությամբ։ Այդ աշխատանքը տարվում է սեմինարների, մշտական գործող դպրոցների, զանազան հրահանգչական խորհրդակցությունների միջոցով։

Սկզբնական պարտիական կազմակերպություններին սիստեմատիկ օգնություն է ցույց տրվում կոլտնտեսային ու սովխոզային գործերի վրա ակտիվորեն ներազդելու, արտադրության մեջ գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը արմատավորելու համար։ Մենք ձգտում ենք այն բանին, որպեսզի պարտիական կազմակերպությունները ոչ թե փոխարինեն կոլտնտեսությունների վարչություններին ու սովխոզների տնտեսական ղեկավարներին, այլև օգնեն նրանց, ճիշտ դասավորեն ուժերը, քաղաքական-մասսայական ու կազմակերպական աշխատանքի միջոցով բոլոր կոլտնտեսականներին, սովխոզների բանվորներին, ծառայողներին ու գյուղատնտեսության մասնագետներին մոբիլիզացնեն՝ բարձրացնելու բերքատվությունն ու անասնաբուծության մթերատվությունը։

Պարտիայի շրջանային կոմիտեն իր աշխատանքները պլանավորում է այնպես, որ շրջկոմի քարտուղարները, բաժնի վարիչները և հրահանգիչները ավելի շատ լինեն տեղական կազմակերպություններում, օգնեն նրանց ճիշտ ընտրելու կադրերին, արդյունավետ տեղաբաշխելու կոմունիստների ուժերը, պարտիական կազմակերպություններում ծավալելու սկզբունքային պայքար թերությունների ու սխալների նկատմամբ, անհաշտվողականության մթնոլորտ ստեղծելու այն կոմունիստների նկատմամբ, որոնք վատ են կատարում իրենց կանոնադրական պարտականությունները։

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումների իրականացման գրավականը մեր բոլոր կադրերի արդյունավետ ու նպատակասլաց աշխատանքն է։ Առանց աշխատավորության շրջանում անհրաժեշտ կազմակերպական ու քաղաքական աշխատանք ծավալելու, առանց անհրաժեշտ հաշվառքներ կատարելու, առանց նորը տեսնելու ու արմատավորելու, հնարավոր չէ մինչև վերջ գործի վերածել կոլտնտեսությունների ու սովխոզների առջև դրված խնդիրները։

Առավել արդյունավետ աշխատանքի համար պարտիան ստեղծել է բոլոր պայմանները։ Մեր կադրերը այժմ, քան երբևէ, առավել մեծ հավատով են լծված գործին, վստահ են դժվարությունները հաղթահարելու նկատմամբ։ Եվ կասկած չկա, որ ստեփանավանցիները կանեն ամեն ինչ ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումները մինչև վերջ կենսագործելու համար։

ՕՆ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ
ՀԿՊ Ստեփանավանի շրջկոմի առաջին
քարտուղար

# Նոր մարդու ԵՐԿՈՒՆՔԸ

## ԱՅՍՊԻՍԻՆ ՊԵՏՔ Է ԼԻՆԻ ՄԱՆԿԱՎԱՐԺԸ

Ուսուցիչ: Այսպես են կոչվել աշխարհի մեծագույն մարդիկ: Այդպես են կոչում մեծ Լենինին: Պատվավոր է ուսուցչի կոչումը, միաժամանակ պարտավորեցնող, պատասխանատու: Թեև դժվար է ուսուցչի աշխատանքը, սակայն ապրեցնող է՝ սերմնացանի աշխատանքի նման. գիտության ու ճշմարտության լույս է ցանում նա և սերունդներ է լուսավորում ու նվիրում աշխարհին: Եվ որքան լուսամիտ է ուսուցիչը, այնքան լուսամիտ կլինի աշակերտը:

Լուսամիտ է բազմակողմանի զարգացած ուսուցիչը, այն ուսուցիչը, որ ամեն օր մտածում է իր գիտելիքների պակասը լրացնելու մասին, որն ունի մանկավարժական բարձր կուլտուրա, վարպետություն և ստեղծագործական եռանդ: Չէ որ միայն այդպիսի ուսուցիչը կկարողանա բազմակողմանիորեն զարգացնել իր սաներին: Դրա համար, ինչպես ասել է Մ. Ի. Կալինինը, մարդ պետք է ուսուցիչ ծնվի, և ոչ թե միայն դառնա ուսուցիչ: Որքան էլ կրթված լինի ուսուցիչը, դարձյալ նա իր գիտելիքների վրա օր-ավուր պիտի նորն ավելացնի: «Դժբախտ համարիր այն օրը,— գրում է հայտնի մանկավարժ Յան Կամենսկին,— երբ դու չես յուրացրել որևէ նոր բան և ոչինչ չես ավելացրել քո գիտելիքներին»:

Դասը վարելիս, ասենք, գրականության ուսուցչին անհրաժեշտ է տվյալ թեման զուգակցել պատմության, փիլիսոփայության, բարոյագիտության և այլ գիտությունների հետ. ի՞նչ կլինի այն ուսուցչի վիճակը, եթե նա քաջատեղյակ չէ գիտության ու կուլտուրայի բոլոր բնագավառներում ձեռք բերված նորանոր նվաճումներին, իր պետության ու պարտիայի ներքին և արտաքին քաղաքականությանը, եթե նա չունի ձևավորված, կայուն գիտական աշխարհայացք, քաղաքական անխախտ համոզմունք ու դավանանք. այդպիսի ուսուցիչը չի կարողանա հասնել իր նպատակին, և աշակերտները չեն դառնա իրենց հայրենիքին նվիրված և հայրենիքի իդեալները կրող քաղաքացիներ: Ուրեմն, ուսուցիչը իր բարեխղճության, գիտա-առարկայական ու մեթոդա-մանկավարժական պատրաստակաnության հետ միաժամանակ պետք է անդուլ ընդլայնի իր քաղաքական-գաղափարական մտահորիզոնը, իր գիտելիքները հարստացնի գրականության ու արվեստի, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումներով:

Որքան բարեխիղճ է ուսուցիչը, նույնքան բարեխիղճ է նաև նրա աշակերտը, եթե, իհարկե, ուսուցիչը կարողացել է տիրապետել իր սանի սրտին ու մտքին: Դրա համար, ինչպես իրավացիորեն նշում է Ն. Կ. Կրուպսկայան, «...անհրաժեշտ է, որ ուսուցիչն ուսումնասիրի երեխային, ուսումնասիրի, թե... ինչպես են նրա վրա ազդում այն աշխատանքային պայմանները, հասարակական իրադրությունը, որոնց մեջ նա ապրում է»:

Եզրակացությունը պարզ է. յուրաքանչյուր ուսուցիչ պարտավոր է հաշվի առնել աշակերտների տարիքային ու անհատական առանձնահատկությունները, նրանց ունակությունները, շրջապատող իրականությունը, պայմանները, որոնց մեջ ձևավորվում է նրանց հոգեկան աշխարհը:

Մեր դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ Ա. Գ.-ն լավ էր սովորում, ուշիմ էր, կարգապահ: Անսպասելիորեն նա սկսեց հետադիմել. հաճախակի դասերը չէր պատրաստում, ցրված էր, անուշադիր: Ուսուցիչ Մ. Ա.-ն զայրանում ու կոպտում էր նրան: Աշակերտը մոլորված վիճակում էր: Դասղեկից պահանջեցինք իմանալ աշակերտի ետ մնալու պատճառը: Մի օր հետո իմացանք, որ մեր սանի ծնողների միջև վեճ է առաջացել, մայրը լքել է ընտանիքը, և տղան ապրում է մոր կորստի ծանր վիշտը: Հետագայում, երբ բարեկամների և ուսուցիչների միջամտությամբ վերականգնվեց նրանց ընտանիքը, մեր սանը սկսեց լավ սովորել:

Մի այլ օրինակ՝ ուսուցչի կողմից աշակերտի հուզաշխարհի անտեսման վերաբերյալ:

6-րդ դասարանի աշակերտ էի, գերազանցիկ, բայց բոլոր առարկաներից շատ մայրենի լեզուն էի սիրում: Փոքրիկ ոտանավորներ էի գրում մեր դպրոցի պատի թերթի համար: Մի անգամ էլ մի ոտանավոր ուղարկեցի «Պիոներ կանչ»-ին: Տպագրվեց: Երբ ոտանավորիս տակ կարդացի ազգանուն-անունս, ուրախությունից կորցրի ինձ: Գիշերը չկարողացա հանգիստ քնել: «Ե՞րբ պիտի լույսը բացվի, դպրոց գնամ, որ բանաստեղծությունս ցույց տամ բոլորին»: Դասն սկսվել է, բայց կողքիս նստող աշակերտուհին չկա: Անհամբերությունից այրվում եմ: Նա եկավ. գլուխս խոնարհած, գրքերս եմ քրքրում, որպեսզի ոտանավորս գտնեմ ու ընկերուհուս տամ, երբ ուսուցչի ուժգին ապտակն այրեց երեսս: Դրան հետևեց երկրորդը: Քթիցս արյուն հոսեց: Ես դուրս եկա դասարանից: Այդ դեպքի մասին եղբայրս իմացել էր: Դպրոց եկավ և վիճեց մաթեմատիկայի ուսուցչի հետ, որն ավելի անզուսպ գտնվեց և հայհոյանքի տարափ տեղաց: Մաթեմատիկայի ուսուցիչս ցած գլորվեց իր բարձրությունից, իսկ այնուհետև սկսեց ինձ հետ վատ վարվել: Ես ատեցի և՛ նրան, և՛ մաթեմատիկան:

Ի՞նչ պիտի աներ ուսուցիչը, որ չարեց: Նա կարող էր, եթե ոչ ջերմությամբ, գոնե նուրբ զգուշությամբ հարցնել. «Ինչո՞վ ես զբաղված, ինչո՞ւ դասը չես լսում»: Ես չէի կարող ստել, հպարտությամբ կպատասխանեի նրա հարցին: Նա որևէ կերպ կարտահայտեր իր ուրախությունը, կոգևորեր ինձ, հետո խորհուրդ կտար մաթեմատիկայով ևս զբաղվել, որովհետև շատ կարևոր առարկա է:

Ասելիքս այն է, որ ուսուցիչը պետք է իմանա, թե ինչն է շահագրգռում աշակերտին, ինչպես նշում է Ա. Վ. Լունաչարսկին, «...պետք է թափանցի աշակերտների շահերի մեջ: Նա նրանց պետք է երևա որպես առանձնահատուկ տեսակի մարդ, տխուր և անընդհատ դատողություններ անող, զեռահասի հոգուն ամեն ինչով խորթ: Նա պետք է լինի ավագ երեխա և ավագ եղբայր...»:

Բոլոր աշակերտները բնավորության միատեսակ գծեր, ձգտումներ, ցանկություններ ու նախասիրություններ չունեն: Ուսուցիչը պարտավոր է ի հայտ բերել ամեն մի աշակերտի մեջ եղած լավը, դրականը, ընդգծել դա, իմանալ, թե ինչի է ընդունակ, ինչի է ձգտում աշակերտը, որպեսզի ուղղություն տա, նպաստի նրա ստեղծագործական կարողությունների զարգացմանը: Երեխաների ինքնաստեղծագործության թռիչքները պիտի ուրախացնեն ուսուցչին և ոչ թե արհամարհանքի առիթ ծառայեն:

Անցյալ ուսումնական տարում հայոց լեզվի դաս էի լսում 4-րդ դասարանում: Ուսուցիչ Ռ. Նավոյանը դասը կարդալ է տալիս մի աշակերտի, մնացածները լսում ու հետևում են ընկերոջը: Ետևի շարքում նստած աշակերտներից մեկի անսպասելի երգի ձայնը խզում է անդորրը: Բռնկվում է անզուսպ ծիծաղ: Մի քանի րոպե հետո դարձյալ լռություն է: Երևում է, որ երգողը անհարմար վիճակի մեջ է: Վախենում եմ, թե ուսուցիչը անմեղ «երգչի» արարքը դիտավորություն կհամարի: Հակառակ սպասածին, ուսուցիչը բարյացակամ ժպիտը դեմքին դիմեց Ավետիքին.

— Հապա, Ավի՛կ, ինչպե՞ս եղավ, որ երգեցիր:

— Ես... ես մի պահ մոռացա, որ դպրոցում եմ,— մի կերպ պատասխանեց Ավիկը:

— Շա՞տ ես սիրում երգել, այդ ե՞րգն էլ շատ ես սիրում:

— Այս երգի եղանակը երեկ չկարողացա հիշել: Ռադիոյից եմ լսել... Այսօր... հանկարծ...

— Հիշեցի՞ր: Ոչինչ: Երգել իմանալը գովելի է: Կուզե՞ս մասնակցել մեր դպրոցի երգի-պարի արտադասարանային խմբակին:

Ավիկը հուզվեց: Մի քանի օր հետո երգերաժշտության ուսուցչուհին զարմանքով ու հիացմունքով էր խոսում նրա ընդունակության մասին:

Կասկած լինել չի կարող, որ մեր դպրոցներում այսպիսի ուսուցիչները, որոնք կարողանում են իրենց և աշակերտի փոխհարաբերությունները հիմնել փոխըմբռնման, հումանիզմի սկզբունքի վրա, դաստիարակության պրոցեսում ստեղծում են հաճելի մթնոլորտ: Իրենց գործով ապրող ուսուցիչները, դաստիարակչական աշխատանքը չեն պարփակում դպրոցի չորս պատերի մեջ: Նրանք արտադասարանային ու արտադպրոցական աշխատանքները դարձնում են իրենց հիմնական աշխատանքի շարունակությունը: Այս հարցի վերաբերյալ Ն. Կ. Կրուպսկայան այն կարծիքն է հայտնում, որ իսկական ու հոգատար ուսուցիչը նա է, ով երեխաների հետ կարող է աշխատել նաև դպրոցի պատերից դուրս, ով իր դրական վերաբերմունքով կարողանում է նվաճել նրանց վստահությունը, կարողանում է օգնել նրանց՝ կազմակերպվելու, նրանց մեջ նոր հետաքրքրասիրություններ արթնացնելու և մտահորիզոնն ընդլայնելու համար:

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը (1963 թ.) նշեց, որ ուսուցման ու դաստիարակության միջև խզում գոյություն ունի: Չի կարելի թաքցնել, որ այդ խզումը վերացնելու ուղղությամբ

դեռևս քիչ գործ է արված։ Մենք ավելի շատ մտահոգված ենք ուսուցանելու, քան դաստիարակության հարցով։ Եվ, հավանաբար, այդ է պատճառը, որ կրթված մարդկանցից ոմանք կուլտուրական ու դաստիարակված չեն։

Մեզանից շատերը լրջորեն չեն մտածում, որ ուսուցիչ լինելու հետ միաժամանակ, դաստիարակներ են նաև, որ ուսուցումն ու դաստիարակությունը պետք է լինեն սերտորեն կապված։

Այն ուսուցչի խոսքը կարող է ներգործուն լինել, երբ նա ուսուցող լինելուց բացի, լավ դաստիարակ է և, Լ. Ն. Տոլստոյի արտահայտությամբ, ամենուրեք և հատկապես դաստիարակության մեջ իր աշխատանքի գլխավոր պայմանը համարում է ճշմարտացիությունը և ազնվությունը։ Պետք է նկատի ունենալ, որ այսօրվա աշակերտը առաջվանը չէ։ Հեռուստատեսության, ռադիոյի միջոցով դեռ մանկուց հաղորդակից է դառնում կյանքին, ապրում է մտավոր վաղահաս զարգացում, ուստի շրջապատից, իրականությունից ավելի շուտ է ազդեցություն կրում, քան մի շարք վայ-ուսուցիչների փքուն քարոզներից։ Աշակերտը ուսուցչի խոսքը լսելիս հիմա արդեն մտածում է՝ իսկ իմ ուսուցիչը ինչպե՞ս է պայքարում չարիքի դեմ, ինչպե՞ս է իրեն դրսևորում հասարակության մեջ, դպրոցում և անձնական կյանքում։ Տարբերությու՞ն կա՞ արդյոք նրա գործի ու խոսքի մեջ։ Այս հարցերին դրական պատասխան ստանալիս՝ աշակերտը կհետևի իր ուսուցչին, նրա խորհուրդները կընդունի որպես գործողության ծրագիր։ Հակառակ դեպքում ուսուցչի խոսքը ոչ մի արժեք չի ունենա և նա էլ իր քարոզներով կընկնի ծիծաղելի վիճակի մեջ։

Ուսուցչի պարզ և հասարակ կեցվածքը, բարյացակամ ժպիտը, շոյող ու քաջալերող հայացքը, լեզուն, համոզիչ փաստարկները, խոսելու տոնը նրա լավագույն օգնականներն են։

Դասի ժամանակ, ասենք, հարց ենք տալիս մեկին, սակայն մի այլ «անզուսպ» աշակերտ, առանց թույլտվության, առաջ է ընկնում։ Փորձված ուսուցիչը ներքուստ կուրախանա «անզուսպ» աշակերտի ճիշտ պատասխանի համար և նուրբ դիտողությամբ կհասկացնի նրան, որ կարգ է խանգարել. մյուս անգամ այդպես չպետք է վարվի։

Աշակերտ Գ. Ս.-ն հաճախակի դասի էր գալիս անպատրաստ։ Ուսուցիչ Պ. Պողոսյանը այսպիսի դիտողություն էր անում. «Այսպես չեղավ, Գագիկ, ես քո մասին լավ կարծիք ունեմ և, թվում է, չեմ սխալվում։ Հույս ունեմ, որ նման դեպք չի կրկնվի»։ Կամ մի այլ աշակերտի՝ «Դու ընդունակություններ ունես, եթե մի քիչ շատ զբաղվես, ավելի լավ կլինի։ Քեզնից գոհ եմ»։ Ուսուցչի խոսելու տոնը, ձայնը, դեմքի արտահայտությունն այնպիսին է, որ թվում է, թե նա տխրել է աշակերտի համար։ Աշակերտի դեմքին կարդում ես ինքնադատապարտման և լռելյայն խոստումի չգրված խոսքեր։

Կան նաև ուսուցիչներ, որոնք կոպտում են աշակերտին, վիրավորում նրան, անգամ ապտակում, երբ դասը չգիտե։ Հապա այդպիսիների արած դիտողություննե՞րը. «Վե՛ր ընկիր տեղդ, ապո՛ւշ, մեկ է, դու մարդ չես դառնա», կամ՝ «Պա՞հ, այդ ո՞նց է պատահել, որ այսօր դասդ գիտես, շատ զարմանալի է»։ Ուսուցչի այսպիսի վարմունքը լուրջ խոչընդոտ է աշակերտի առաջընթացի ճանապարհին, որը դուռ է բացում մաղումների համար։ Ի՞նչ ուսուցիչ, երբ մեռցնում է աշակերտի հավատը իր սեփական ուժերի նկատմամբ։ Այսպիսի ուսուցիչներ են իրենց առարկան չսիրող, առարկան վատ իմացող անճարակները, որոնք անհարկի խստությունը դարձնում են զենք՝ աշակերտներին «խեղճացնելու» և հնազանդ պահելու համար։ Ուսուցչի խստապահանջությունը չպետք է հիմնված լինի աշակերտի արժանապատվությունը նսեմացնող սպառնալիքների վրա։ Խստապահանջությունը պետք է զուգակցվի համոզման մեթոդի հետ, աշակերտի նկատմամբ լավատեսական վերաբերմունքի հետ։ Բոլոր դեպքերում բռնությունը, պատիժը աշակերտի մեջ պատվաստում են ստրկամտություն։ Վախի ազդեցության տակ դասարանը կլռի, անգամ աշակերտներն ակնապիշ կնայեն ուսուցչին, սակայն չեն լսի նրան և չեն հավատա նրա խոսքին։ Ուրեմն, ուսուցչի և աշակերտի փոխհարաբերությունը պետք է կառուցվի փոխադարձ հարգանքի և արժանապատվության գնահատման վրա։

Ուսուցչի և աշակերտի միջև որոշ դեպքերում բախումը տեղի է ունենում գնահատականների ֆետիշացման պատճառով։ Ստեղծվել է այնպիսի դրություն, որ աշակերտին հետաքրքրում է ոչ այնքան լավ սովորելը, որքան բարձր գնահատականը։ Որոշ ուսուցիչներ աշակերտից պահանջում են ուշադիր լսել իրենց, իսկ իրենք անուշադիր լսելով աշակերտի պատմածը, սխալ են գնահատում նրան՝ տեղիք տալով անախորժությունների։ Աշակերտին սովորեցնում ենք, որ իր կատարած սխալի համար ներողություն պետք է խնդրի ուսուցչից, ընկերոջից։ Ուսուցիչն էլ, եթե սխալվում է աշակերտի նկատմամբ, պետք է ներողություն խնդրի աշակերտից։ Այսպիսին պետք է լինի մանկավարժը։

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Մարտունու շրջանի Ալիշալուի 8-ամյա դպրոցի ուսմասվար

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԱՌԱՆՑ ՋԵՂՋԻ

Հանրության ուշադրությանն արժանացնել բարձրագույն ուսումնական հաստատություններում մշակված առավել արժեքավոր գիտական աշխատությունները՝ լուրջ և պատվավոր գործ է։ Խոսք չկա, Հայկական գյուղատնտեսական ինստիտուտը շնորհակալ գործ է կատարել, հրատարակելով Գիտական աշխատությունների ժողովածուի հերթական 14-րդ հատորը, որին և անհրաժեշտ ենք համարում անդրադառնալ։ Այս գրախոսականում քննության են առնվում միայն հինգ հոդված [1]։

Գիտական պատշաճ մակարդակով է գրված Կ. Վարդանյանի Պետական կապիտալիստական սեփականության հարցի շուրջը հոդվածը։ Թեև հեղինակի մի քանի ձևակերպումները (էջ 81 և 82) այնքան էլ հստակ չեն և կարող են ընթերցողի մոտ տարակուսանք հարուցել՝ թե որքանով է պետական մոնոպոլիստական կապիտալը նպաստում զբաղվածության պրոբլեմի մասնակի լուծմանը, թե ինչպե՞ս և ինչպիսի՞ եղանակներով է այն «...նախապատրաստում և հեշտացնում... սոցիալիստական սեփականության առաջացումը»։

Կ. Վարդանյանն այսուհանդերձ փաստերի գիտական վերլուծությամբ ապացուցում է պետական մոնոպոլիստական «...սեփականության «զտարյուն» կապիտալիստական բնույթը, մոնոպոլիաների սպասարկուի նրա դերը» (էջ 71)։

Այդ հիման վրա էլ լուրջ կռվաններ է տալիս ընթերցողներին ճիշտ ըմբռնելու պետական մոնոպոլիստական սեփականությանը համաժողովրդական բովանդակություն վերագրելու հարցում բուրժուական գրչակների կեղծիքը։

Բավականին համոզիչ է նաև Ս. Քոչարյանի Սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ գոյակցությունը պատմական անհրաժեշտություն է հոդվածը։ Արծարծվող թեման վերլուծվել է իր ամբողջության մեջ և մի քանի ասպեկտներով։ Սակայն պահանջկոտության դեպքում հեղինակը կարող կլիներ խույս տալ գիտական տերմինների ու ֆրազների անհարկի օգտագործումից և տանջահարված որոշ ձևակերպումներից։ Ընթերցողի համար դժվար է ըմբռնել հեղինակին, երբ հոդվածում հանդիպում է այսպիսի դարձվածքների— «...էտապը ծավալվեց... ընթացքում», «...մարդկային կեցության երկու հակադիր սխտեմներ...» (34), «Սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ գոյակցության սկզբունքը ժամանակի բռիչքով հարթեց իր ճանապարհը, մտնելով իր իրավունքների մեջ» (37), «Այս ֆորմուլան ոչ թե արդարացնում է պատերազմի անխուսափելիությունը, այլ սահմանում է դրա բնույթն ու պատճառները» (42) և այլն։

Որքան էլ ցավալի է, բայց փաստ է գիտական աշխատությունների ժողովածուում Պ. Ոսկերչյանի՝ գիտության հետ առնչություն չունեցող երկու հոդվածների հրապարակումը։

Սկսենք նրա գրած էկոնոմիկայի և քաղաքականության փոխհարաբերակցության հարցի շուրջը սոցիալիզմի և կապիտալիզմի ժամանակ հոդվածից։ Ինչ խոսք, որ էկոնոմիկայի և քաղաքականության փոխհարաբերության հարցը արդիական է և գտնվում է սոցիոլոգների ու տնտեսագետների ուշադրության կենտրոնում։ Ուստի, այդ իմաստով ուշագրավ է Պ. Ոսկերչյանի տվյալ մտահղացումը։ Սակայն նա չի կարողացել խորանալ պրոբլեմի էության մեջ, այդ

[1] Ս.Մ. Պետրոսյան՝ Սովետական Ռեսպուբլիկաների Պետական Ֆեդերատիվ Միավորումը կարևորագույն էտապ է ժողովուրդների ազգային վերածննդի համար, Ս. Ա. Քոչարյան՝ Սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ գոյակցությունը պատմական անհրաժեշտություն է, Պ. Տ. Ոսկերչյան՝ էկոնոմիկայի և քաղաքականության փոխհարաբերակցության հարցի շուրջը սոցիալիզմի և կապիտալիզմի ժամանակ, նույն հեղինակի՝ Քիմիական արդյունաբերության զարգացումը սովետական Հայաստանում և Կ. Ա. Վարդանյանի՝ Պետական կապիտալիստական սեփականության հարցի շուրջը։

նում է կապիտալիստական սիստեմի արդի էտապի էկոնոմիկայի և քաղաքականության մեջ եղած հատկությունները (գուցե հակասությունները?—Մ.Գ.) և կյանքում իրագործվում է կազմակերպված կապիտալիզմի թեորիան։ Նման հարցադրումները բուրժուական թեորիական զինանոցից եկած կեղծիքներ են, որոնք հակադիր են կապիտալիստական իրականությանը» (63)։ Ինչպե՞ս հասկանալ՝ «կյանքում իրագործվում է կազմակերպված կապիտալիզմի թեորիան», «բուրժուական թեորիական զինանոցից եկած կեղծիքները... հակադիր են կապիտալիստական իրականությանը» արտահայտությունները։ Ըստ որում Պ. Ոսկերչյանին թվում է, թե «Արդի բուրժուական պետությունների տնտեսական կյանքի մեջ ակտիվ գործունեությունը առաջ է բերում ու սրում նոր հակասություններ պետության և մոնոպոլիստների միջև» (63)։ Բայց արդյո՞ք այդպես է։

Դիմենք պարտիայի ծրագրին. «Իմպերիալիզմի ստադիայում լայն զարգացում է ստանում պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը։ Մոնոպոլիաների գոյացումն ու աճը հանգեցնում են այն բանին, որ պետությունն անմիջականորեն միջամտում է կապիտալիստական վերարտադրության պրոցեսին՝ հօգուտ ֆինանսական օլիգարխիայի։ Հանուն նրա շահերի բուրժուական պետությունը կիրառում է զանազան տեսակի կարգավորիչ միջոցառումներ, օգտագործում է էկոնոմիկայի առանձին ճյուղերի պետականացումը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, Հայպետհրատ, 1962, էջ 446)։ «Պետությունը դարձել է մոնոպոլիստական բուրժուազիայի գործերի կառավարման կոմիտե» (նույն տեղում, էջ 446)։ «Պետական մոնոպոլիստական կապիտալիզմը մոնոպոլիաների ուժը և պետության ուժը միավորում է միասնական մեխանիզմի մեջ՝ մոնոպոլիաները հարստացնելու, բանվորական շարժումը և ազգային-ազատագրական պայքարը ճնշելու, կապիտալիստական հասարակարգը փրկելու, ագրեսիվ պատերազմներ սանձազերծելու նպատակով (նույն տեղում, էջ 447)։ Հետևաբար, մոնոպոլիաների և բուրժուական պետության միջև ի՞նչ հակասությունների սրման մասին կարող է խոսք լինել։

Հոդվածում տեղ են գտել նաև անհաջող ձևակերպումներ և լեզվական սխալներ, որպիսիք են. «Գիտական և տեսական հիմքերի ուսմունքը», «Մարքսն ու էնգելսը... կազմակերպեցին Լոնդոնի կոմունիստների ընդհատակյա միությունը, շարադրեցին իրենց ծրագիրը և ֆաղաֆական հայացքները՝ «Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգը...» (49), «Առանց քաղաքական պայքարի չի կարող լուծվել ոչ մի թեորիական կամ տնտեսական պրոբլեմ», «Մարքսիստական ուսմունքը կապիտալիզմի կործանումը և կոմունիստական հասարակության կառուցումը իմաստավորեց ֆաղաֆականության միջոցով» (50), «Սոցիալիստական սիստեմի իշխանություն», «Կապիտալիզմի և ֆեոդալիզմի իշխանությունները» (50), «...բանվոր դասակարգը... աշխատավոր գյուղացիության հետ դարձավ արտադրող ու կառավարող դասակարգ» (55), «Սոցիալիստական երկրների ֆաղաֆական իշխանությունների անհրաժեշտությունը պայմանավորված է նաև պետության ղեկավար դերի ապահովումով» (57), «Սովետական քաղաքականությունը... ստեղծել է արտադրա-տնտեսական պայմաններ» (58), «տեխնիկա-տնտեսապես մեծ հնարավորություններ» (61), «որոշ չափով երկաթուղիներ», «պետությունը մասնակցում է 5000 արդյունաբերական ձեռնարկություններին» (63), «վերլուծությունը... իրենց զարգացումն ու խտացումը գտան... քաղաքականության մեջ» (65), «կառավարումը ստեղծում է... նյութատեխնիկական բազան», «համակենտրոնացված արտահայտություն... տենդենցի համար», «օրենքներն արտահայտվում են գիտակցված կերպով» (66)։

Լեզվական կոպիտ սխալներից կարելի է նշել՝ «ինվեստացիա», «սուբսիդներ», «ռեյնոր», փոխանակ գրելու՝ «սուբսիդիա», «ինվեստիցիա», «ռենտ» և այլն, և այլն։

Լռելյայն չի կարելի անցնել նաև Պ. Ոսկերչյանի երկրորդ՝ «Քիմիական արդյունաբերության զարգացումը Սովետական Հայաստանում» հոդվածի կողքով։ Նախ պետք է նշել, որ հոդվածի վերնագիրը չի համապատասխանում բովանդակությանը, քանի որ այն շոշափում է Սովետական Հայաստանի քիմիական արդյունաբերության զարգացման լոկ մինչպատերազմյան ժամանակաշրջանը։ Ինչ վերաբերում է բուն նյութին, ապա այն իրենից ներկայացնում է մեկը մյուսի վրա բարդված թվերի և անկապ փաստերի մի կատարյալ քաոս, որից դժվար է գլուխ հանել, թե հեղինակն ի՞նչ է ուզում ասել, ի՞նչ նպատակ են հետապնդում առանց ընտրության ու խմբավորման, առանց տնտեսագիտական վերլուծության բերված այդ թվերն ու փաստերը։

Այսպես, օրինակ, միայն «նկատի ունենալով, որ 1930-ական թվականներին Հայաստանի քիմիական խոշորագույն ձեռնարկություններից մեկը հանդիսանում էր Երևանի կարբիդի գործարանը...», հեղինակը կարևոր է համարում «կանգ առնել նրա տնտեսական ցուցանիշներից մեկի՝ ինքնարժեքի վրա» և այդ նկատառումով, գրեթե երեք էջերում (էջ 96—98), ընթերցողներին է մատուցում 60-ից ավելի խայտաբղետ թվական տվյալներ, դրան էլ ավելացրած՝ 1939 թվականին կարբիդի ինքնարժեքի թվառատ աղյուսակը։ Հարց է ծագում, ո՞ւմ են պետք այդ թվերն՝ առանց վերլուծության ու ընդհանրացումների, ինչո՞վ են դրանք օգնում առաջադրված թեմայի լուսաբանմանը։ Մի՞թե այդքան կենսական նշանակություն ունի այն հարցը, թե քառորդ դար առաջ, ինչ արժեր կարբիտի ասենք կիլոգրամը։ Ինչո՞ւ տնտեսագիտության թեկնածու ընկ. Պ. Ոսկերչյանը նեղություն չի կրել վերլուծելու կարբիտի անցյալ տարվա արտադրական հաշվեկշիռը և օգնելու տնտեսավարներին գտնելու ինքնարժեքի իջեցման մեթոդները[1]։

Պ. Ոսկերչյանի այս հոդվածն այնքա՜ն անմշակ է, պարունակում է մասնագիտական, լեզվական և ոճական այնպիսի՜ աղավաղումներ, որ այն հնարավոր չէ կարդալ առանց տհաճության զգացումի։ Բազմաթիվ և բազմապիսի օրինակներից բերենք մի քանիսը. «Տեղական արդյունաբերության մինիստրության սիստեմում գործում են ռետինատեխնիկական առարկաների, կաշու փոխանյութ, տեքստովինետի և զանազան այլ քիմիական նյութերի արտադրություն, Երևանի լաքի գործարան, որն արտադրում էր բոլոր տեսակի էմալի ներկեր» (էջ 91), «Մեկ բանվորի արտադրության միջոցների զինվածության աստիճանը դրամով արտահայտված կազմում էր», «...բանվորների արտադրամիջոցների արժեքային զինվածությունը...» (92), «Քարածխային կուպր կարող է կիրառվել նույն կարբիդի արտադրության մեջ էլեկտրոդների պատրաստման ալյումինի արտադրության մեջ» (93), «...կրճատվեց կաշվի դաբաղելու արտադրական ժամանակը...» (95), «Բարաբանի արտադրական

---

[1] Խմբագրության խնդրանքով կարդալով Պ. Ոսկերչյանի սույն հոդվածը, ռեսպուբլիկայի ԺՏԽ-ի նախագահի տեղակալ, քիմիկոս-ինժեներ ընկ. Ս. Խ. Թևոսյանը, անհանգուրժելի համարելով դրա հրապարակումը, մի շարք լուրջ դիտողություններ արեց. այդ առթիվ արված դիտողություններից հրապարակում ենք մի քանիսը։

| Հոդվածում կարդում ենք | Առարկություններ և դիտողություններ |
|---|---|
| 1. ...բացակայում էր սինթետիկ քիմիայի հումքի պաշարների հայտնաբերումը... (87)։ | Անհեթեթ դարձվածք է. «սինթետիկ քիմիայի հումքի պաշարներ» հասկացություն գոյություն չունի։ |
| 2. 1920—1930 թվականների ժամանակաշրջանում խնդիր դրվեց Հայաստանում ստեղծել քիմիական արդյունաբերության այնպիսի ձեռնարկություններ, որոնք հիմնված լինեն սինթետիկ նյութերի... վերամշակման վրա (87)։ | Այդպիսի խնդիր դրված չի եղել։ Այդ ժամանակաշրջանում սինթետիկ նյութերի և մոլեկուլային բարձր միացությունների արդյունաբերություն դեռ չկար, այն ողջ աշխարհում գտնվում էր սաղմնային վիճակում։ |
| 3. Հայաստանի քիմիական արդյունաբերությունը 1920—30-ական թվականներին ուներ գյուղատնտեսության արտադրությանն օգնող ուղղություն, որն արտադրում էր քիմիական պարարտանյութեր, վնասատուների դեմ պայքարելու համար (88)։ | 1920—30-ական թվականներին Հայաստանում ոչ մի նման բան չի եղել. դա կատարյալ թյուրիմացություն է։ |
| 4. Ծծմբաթթվի արտադրությունը Հայաստանում սկսվել էր դեռ մինչև առաջին համաշխարհային պատերազմը, ֆրանսիական կոմպանիայի միջոցով... Սովետական իշխանության առաջին տարիներին, Հայաստանի գյուղատնտեսությանն օգնելու համար, սկսվեց ազոտային նյութերի արտադրության գործարանի շինարարությունը (88)։ | Հեղինակը հիմք չունի ֆրանսիացիներին այդ բանը վերագրելու։ Իսկ ազոտային պարարտանյութերի արտադրությունը Հայաստանում սկսվել է 1946—1947 թվականներին։ |
| 5. Հայաստանում ծծմբաթթվի, ազոտաթթվի և գլիցերինի էժան արտադրության բազայի վրա հիմք դրվեց նաև արհեստական մետաքսի արտադրությանը (88)։ | Մետաքսաթելի արտադրությունը ոչ մի կապ չունի հիշյալ նյութերի հետ։ Այդ նյութերի արտադրությունը Հայաստանում չի եղել։ Մետաքսաթելի գործարանը շահագործման է հանձնվել 1962 թվականին, ազոտական թթվինը՝ 1950—51 թվականներին։ Գլիցերինն առհասարակ ոչ մի կերպ չի առնչվում նշված խնդրի հետ։ |

րագրական կոլեգիան լավ չի ըմբռնել իր անելիքները և անհասկանալի անպատասխանատվություն է հանդես բերել ժողովածուում զետեղված մի քանի հոդվածների խմբագրման գործում։

Հիրավի, գիտական ժողովածուները կոչված են՝ մասսաներին պարբերաբար մատուցելու տվյալ գիտական հաստատության նորագույն հասումները, օգնելու տնտեսության և այլ բնագավառի աշխատողներին առօրյա կյանքում կիրառելու գիտության նորագույն խոսքը։ Գիտական ժողովածուներն իրականում հանդիսանում են տվյալ հաստատության ստեղծագործական որոնումների վճիռ հայելին, որի մեջ ընթերցողները տեսնում են գիտական կոլեկտիվի բարձր արժանիքները։ Հենց այս ըմբռնումը պարտավորեցնում է ինստիտուտի ղեկավարությանը, գիտական խորհրդին և խմբագրական կոլեգիային, առավել հոգացողություն և պատասխանատվություն հանդես բերել ինստիտուտի գրիֆով հրապարակվող յուրաքանչյուր հոդվածի, բրոշյուրի, գրքի և ժողովածուի նկատմամբ։

Այս առումով, գյուղատնտեսական ինստիտուտում գործերն այնքան էլ բարեհաջող չեն։ Ինչպես տեսնում է ընթերցողը, մեր գրախոսականում խոսքը վերաբերում է ոչ միայն գիտական այս կամ այն հարցի լուսաբանման կամ մեկնաբանման անընդունելի տեսակետներին, այլև հաճախ՝ հեղինակի տարրական գիտելիքներին և առհասարակ գրագիտությանը։ Դժվար չէ եզրակացնել, որ եթե ժողովածուի խմբագրական կոլեգիան հանդես բերեր պատշաճ խստապահանջություն հեղինակների նկատմամբ, ինարկե, սխալներով լի հոդվածները չէին հրապարակվի։ Մանավանդ խմբագրական կոլեգիան իրավունք չուներ մոռանալու այն հանգամանքը, որ իրենք հրապարակում են մանկավարժ-գիտնականների հոդվածները, որոնց անմիջապես ունկնդրում են հազարավոր երիտասարդներ։ Չէ՛ որ մանկավարժի հեղինակությունը անփոխարինելի գանձ է։

Վաղուց է եկել ժամանակը, որպեսզի գիտական աշխատողների հետազոտությունների հրապարակումը կատարվի առանց որևէ զեղչի։ Այլ նկատառումներ նման գործում վնասակար են։

Մ. ԳԱԼՈՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24*

ՎՖ 05227 Պատվեր 1400 Տիրաժ 9500 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 7/ VI 1965 թ.։

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

ՊՈԿՐՈՎՍԿԱՅԱ Վ., ՍՎԻՆՑՈՎ Վ.—Ֆ. Էնգելսի «Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը» աշխատության մասին — *Մ. 1965 թ., 80 էջ։*

*Գիտական կոմունիզմի հիմնադիրներից մեկի՝ Էնգելսի այս աշխատությունը ամենաարժեքավորը և միակն է, որ նվիրված է մարքսիստական փիլիսոփայության ծագմանը։ Այս բրոշյուրի նպատակն է լրացնել ընթերցողի գիտելիքները, որոնք անհրաժեշտ են Ֆ. Էնգելսի այս գրքի հիմնական գաղափարների յուրացման համար։ Բրոշյուրում, միաժամանակ կան խորհուրդներ, որոնք օգտակար են քաղլուսցանցի պրոպագանդիստների և ուսումնական հաստատությունների փիլիսոփայության դասախոսների համար։*

ԱՅԴՊԻՍԻՆ ԷՐ ԼԵՆԻՆԸ *(ժամանակակիցների հիշողությունները)—Մ., 1965 թ., 608 էջ։*

*Այստեղ զետեղված են Իլյիչի հարազատների, ընկերների, ռևոլյուցիոն պայքարի զինակիցների, հին բոլշևիկների, միջազգային բանվորական շարժման վետերանների, գրողների հիշողությունները։ Շատ հուզիչ են Լենինի ժամանակակիցների՝ լենինյան պարտիայի ականավոր գործիչներ Ն. Կ. Կրուպսկայայի, Գ. Մ. Կրժիժանովսկու, Ե. Դ. Ստասովայի, Վ. Ա. Կարպինսկու, Մաքսիմ Գորկու, Ջոն Ռիդի և շատ ուրիշների հուշերը։*

*Լենինի կյանքի ու վարքի նորմերը լավագույն օրինակ են կոմունիզմի համար մարտնչողների, նոր կյանքը կերտողների համար։*

ԿՐՈՆԻ ԵՎ ԵԿԵՂԵՑՈՒ ՄԱՍԻՆ *(փաստաթղթերի ժողովածու)— Մ. 1965 թ., 128 էջ։*

*Այստեղ ամփոփված են պարտիայի և սոցիալիստական պետության՝ կրոնի և եկեղեցու նկատմամբ վարած քաղաքականությունն արտացոլող հիմնական փաստաթղթերը՝ կոմունիստական պարտիայի համագումարների, Կենտրոնական կոմիտեի որոշումները, սովետական կառավարության դեկրետներն ու շրջաբերականները։ Զետեղված են նաև մարքսիզմ-լենինիզմի կլասիկների՝ կրոնի ծագմանն ու էությանը նվիրված, պրոլետարական պարտիայի՝ կրոնի հանդեպ ցուցաբերած վերաբերմունքը հիմնավորող աշխատություններ կամ այդպիսիներից քաղվածքներ։*

*Գիրքը շատ կօգնի դասախոսներին, հակակրոնական պրոպագանդիստներին, պարտիական, կոմերիտական և սովետական ակտիվին։*

ԲՈՐՇՉԱԳՈՎՍԿԻ Ա. — «Խիզախների խենթությունը...» *գրողի գրառումներ — Մ., 1965 թ., 208 էջ։*

*«Մարդու համար ամենաթանկագինը կյանքն է» — ասում են ոմանք, բայց հասկանում են այդ եսասիրաբար, իրենց սեփական կյանքը բարձր դասելով մնացած ամեն ինչից, հասարակական կյանքից ու պատմական ճակատագրից։*

*«Մարդու համար ամենաթանկագինը կյանքն է»—ասում են ուրիշները և համարձակ սխրանքներ գործում, երբեմն էլ դեպի մահն են գնում հանուն ուրիշների կյանքի, հանուն վեհ գաղափարի, հանուն հայրենիքի։*

*Ի՞նչն է մարդուն մղում սխրանքի։ Հասարակական ինչպիսի՞ պայմաններն են նպաստում քաջարի, անվեհեր մարդու դաստիարակմանը։*

*Այս թեմային վերաբերող խոհերին է նվիրված Ալեքսանդր Բորշչագովսկու՝ «Ռուսական դրոշ» հանրածանոթ վեպի, «Կորել են անհետ», «Տագնապալի ամպերը», «Բոլոր հույսերի կղզին», «Ապակյա գինդերը» պատմվածքների հեղինակի այս գիրքը։ Տրված են նաև քաղաքական պարտքի գիտակցությամբ տոգորված մարդկանց և քաղքենիների, եսասերների, իրենց նեղ, անձնական շահերից բարձրանալ չկարողացողների տարբեր կարծիքները մարդկային հերոսության մասին։*

ԳԻՆԸ 25 Կ. 77783